# ԱՇԽԱՏԱԼԻ

# ԳԻՇԵՐ

ԿԱՄ

ԸՆՏԱՆԵԿԱՆ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

ՀԱՐԱՒԱՅԻՆ ՈՎԿԻԱՆՈՍԻ ԿՂԶԻՆԵՐԸ

ԱՌՋԻ ԽՐԿՈՒԱԾ

ՔԱՐՈԶԻՉՆԵՐՈՒՆ

ԱՇԽԱՏՈՒԹԵԱՆՑԸ

---

Smyrna

ԶՄԻՒՌՆԻԱ

Ի ՏՊԱՐԱՆԻ ԿՈՒԼԻԷԼՄՈՍ ԿՐԻՖՖԻԹԻ

1852

Վարդապետ՝ բոլոր գիշերս աշխատեցանք, ու բան մը չբռնեցինք. բայց քու խօսքիդ համար ձգենք գործիքներս ։

Ղուկ. Ե. 5 ։

# ՑԱՆԿ

# ԱՇԽԱՏԱԼԻ ԳԻՇԵՐ

## ԳԼՈՒԽ Ա

### Գրաւաֆ անուն նաւու մը Անգղիայէն Ելլելը ու Թահիթի հասնիլը :

Երկրիս անդին կողմը ջուրերու անհուն ընդարձակութիւն մը կայ, որ կը կոչուի Խաղաղական Ովկիանոս, որուն վրայ սփռուած կ'երեւնան անհամար կղզեներ, նմաններով գարնան եղանակին խոտերուն մէջտեղուանքը ցցուած ծաղիկներուն, կամ մութ գիշերները երկնից հաստատութեանը զարդարող աստղերուն։

Հիմա աս կղզիներէն մէկուն՝ այսինքն Թահիթիին ստորագրութիւնը պիտի ընեմ. և քիչ մըն ալ անոր քովերը եղող կղզիներուն վրայ պիտի խօսիմ :

Նախ և առաջ Ուալլիս անուն Անգղիացի նաւապետ մը գտաւ Թահիթի

կղզին, 1767ին ։ Ասիկայ խիստ գեղեցիկ տեղ մըն է. որուն մէջտեղը անանկ բարձր լեռներ կան, որոնց գագաթը մինչեւ ամպերը կը հասնին, նաեւ թաւուտ անտառներ բուսած են, որ գրեթէ ծովեզերքին կը մօտենան. և լեռներուն քովերէն ականակիտ ջուրերու վտակներ ծովը կը թափին ։

Հոն գրեթէ միշտ ամառ է, և ծովային քաղցրաշունչ հովերը ախորժելի եղանակ մը կը պատճառեն ։

Գուցէ պիտի ցանկայիք գիտնալ՝ թէ ինչ տեսակ ժողովուրդ մը կը բնակէր աս գեղեցիկ կղզւոյս մէջ, երբոր Սուալլիս նաւապետը գտաւ զանիկայ ։

Աս կղզւոյս բնակիչները բարձրահասակ և ուժով մարդիկ էին, թխագոյն մորթով, սև աչքերով, և փայլուն սև մազերով ։ Անոնք խնդումերես և հանդարտաբարոյ մարդիկ կ'երեւնային, և ընդհանրապէս ծաղրասէր և խաղարկու էին ։

Սուալլիս նաւապետը Անգղիա վերադառնալուն՝ երբոր Խաղաղական Ովկիանոսին կղզիներուն ստորագրութիւնը ըրաւ, շատ մարդիկ կը փափաքէին զանոնք

տեսնելու ։ Ետքը ուրիշ նաւեր ալ գացին , ու անոր վրայով աւելի ընդարձակ տեղեկութիւններ տուին . այսինքն՝ Հոն գտնուած պտղաբեր ծառերուն , և բընակչացը հաճոյական կեանք մը վարելուն վրայով ։ Ոմանք աս ստորագրութիւնը կարդալով մեծապէս կը վշտանային ։ Գուցէ աս տեղս պիտի զարմանայ կարդացողը , որ մարդիկ սանկ զուարճալի տեղի մը ստորագրութիւնը տրտմութեամբ մտիկ ընեն . բայց քիչ մը առաջ երթալով՝ պիտի չզարմանայ . տակաւին չստորագրեցի Թահիթիի մէջ բնակող ժողովուրդին բնաւորութիւնը . անոնք աւազակ , ստախօս ու մարդասպան էին — աս վարքով կարելի՞ էր որ անոնք երջանիկ ըլլային ։

Խել մը աստուածասէր մարդիկ Անգղիոյ մէջ՝ Թահիթիին խեղճուկ բնակիչներուն վիճակին վրայ մտածելով կը վշտանային , ու կ՚ըսէին . «Ո՛Հ , թէ և ձեր հովանաւոր ծառերուն տակը կը նստիք , ու հացածառին պատուական պտուղը կ՚ուտէք , կամ Գոգաօյի ընկուզին քաղցրահամ կաթը կը խմէք . բայց ի՞նչպէս կրնաք երջանիկ ըլլալ , քանի որ վերի

արքայութեան վրայով տէրութիւն մը ջունիք , ոչ ալ ան Փրկչին վրայով՝ որ կարող է ձեր անձերու մեղքերը իր արեամբը ջնջելու . քանզի մահը շուտով ձեզ պիտի յափշտակէ ձեր պայծառ կղզիէն ; և ձեզ ահաւոր ատեանին առջին պիտի ներկայացընէ" ։

Արդեօք Անգղիոյ մէջ աս մարդիկը՝ Թահիթիի խեղճ բնակիչներուն վիճակին վրայ միայն ցաւիլը բաւական սեպեցի՞ն . ոչ — այլ յիշեցին ով էր ան՝ որ ըսաւ աս խօսքը թէ՝ "Գնացէք բոլոր աշխարհ և Աւետարանը քարոզեցէք ամէն ստեղծուածներուն". (Մարկ . ժզ . 15 .) Աւետարանը Թահիթի կղզին խրկելու եղանակ մը հնարեցին ։

Խել մը ազնիւ անձինք մէկտեղ գալով խորհուրդ ըրին , և դրամ ժողվեցին , ու հարցուփորձ ըրին թէ արդեօք կը գտնուի՞ն հոգևոր անանկ մարդիկ՝ որ քարոզչութեան պաշտօնով Խաղաղական Ովկիանոսին կղզիները երթան ։

Վերջապէս երեսուն հոգի գտնուեցան ; որոնք հաճեցան հոն երթալու ։ Ասոնցմէ միայն չորսը երէց էին , իսկ մնացածները օգտակար արուեստներ գիտէին ։ Ասոնց

վերջը կենիկ ունէին, որոնք ալ անոնց հետ երթալու էին՝ ինչպէս նաև իրենց իրեք զաւակներն ալ ։ Աս մարդիկը խրկելու միաբանող անձինքը կը կոչուէին "Հոգաբարձուք Լոնտրայի քարոզչաց ընկերութեան", քանզի Լոնտրայի մէջ կը ժողվուէին ու խորհուրդ կ'ընէին ։ Ասոնք նաւ մը ծախու առին, որուն անունը Դուֆ կը կոչուէր, և անոր կառավարութիւնը Ուիլսըն անուն խիստ բարեպաշտ նաւապետի մը յանձնեցին ։

Օգոստոս 10, 1796. առտուանց ժամը 6ին վերը յիշուած 30 մարդիկը Լոնտրայէն նաւը մտան, որ Թէմզ գետին վրայ կը կենար ։ Առագաստները բացած ատեննին՝ գեղեցիկ ծիրանեգոյն դրօշակ մը հովէն կ'երերար, որուն վրայ իրեք աղաւնի նկարագրուած էր՝ բերաններն ձիթենիի ճիւղ բռնած ։ Ասիկայ պատերազմական նաւ չէր, այլ խաղաղութեան նաւ մը, որուն մէջ աս սուրբ մարդիկը մտեր էին ։ Երբոր գետին վրայէն կը նաւէին՝ մէկ երգ մը կ'երգէին որ այսպէս կըսկսի ։

"Ո՛վ Յիսուս, քու հրամանովդ
ծովուն մէջ կը նաւարկենք" ։ Եւ

Նաւուն մէջի նաւաստիները զարմացմամբ ականջ կը դնէին աս քաղցր եղանակին : Ան մարդոցը բարեկամներէն շատերը գետեզերքը կայնած՝ ձեռքերնին կը շարժէին , ու չյուսալով զանոնք նորէն տեսնելու մինչև ան օրը՝ որ վերը Աստուծոյ աթոռին առջևը ներկայանան :

Մարտի 5 , 1797ին՝ եօթը ամիս ճամբորդութիւն ընելէն ետև՝ խիստ հեռուէն Թահիթիի բարձր լեռները տեսան : Հետևեալ օրը առտուանց ժամը եօթնին , նաւը ծովեզերքէն շատ մօտեցեր էր . սակայն Կիրակի ըլլալուն պատճառովը նաւապետը անմիջապէս ցամաքը ելլել չուզեց :

Թահիթիի բնակիչներէն ոմանք նաւը տեսնելնուն պէս՝ իրենց ծառակուրները * մտնելով՝ շուտ մը անոր մօտեցան : Եօթանասունևչորսի չափ ծառակուրներ՝ որոնց մէկ քանիներուն մէջ քսանական հոգի կային , կանուխկեկ նաւուն բոլորտիքը շարուեցան :

Նաւապետը՝ չուզելով որ իր նաւուն մէջը բազմութիւնը լցուի ու շփոթու-

* Աս նաւակները ծառին մէջը փորելով կը շինեն :

թիւն մը ըլլայ , կը ջանար արգիլել զանոնք նաւը ելլելէն . բայց անոնք նաւուն քովերէն ճանկռթելով դիւրութեամբ վեր ելան . քանզի խիստ թեթեւաշարժ մարդիկ էին , և ըղունգներով վեր ելլելու՝ ու լողալու կողմէ յաջողակ էին ։

Նաւը ելլելնուն պէս՝ ցաթկըտելով , ծիծաղելով ու ծափ զարնելով սկսան յայտնել իրենց ուրախութիւնը՝ նաւուն հոն հասնելուն վրայ ։ Անոնք կը յուսային թէ շատ դանակներ , կացիններ ու օգտակար բաներ պիտի ստանան , բայց չէին գիտեր թէ ինչ հոգևոր օրհնութիւններ պիտի մատուցուէին իրենց ։

Քարոզիչները մեծ ուշադրութեամբ կը նայէին այն բարբարոս մարդոց վրայ՝ մըտածելով թէ ինչ տեսակ ժողովուրդի մը մէջ կեանք պիտի վարեն . և թէպէտ անոնց հանդարտ բնաւորութեանը կը հաւնէին , բայց անոնց վայրենի տեսքէն կը գարշէին ։

Աս կղզւոյս բնակիչները խել մը խոզեր ու պտուղներ բերեր էին հետերնին , ու կ'ուզէին նաւուն մէջ եղողներուն ծախել՝ դանակներու և ուրիշ բաներու հետ փոխոց ընելով . բայց Կիրակի ըլլալուն՝

մէկը չուզեց բան մը ծախու առնել ։ Քարոզիչները ջանացին անոնց իմացընելու թէ՝ իրենց Աստուծոյն օրն է, և թէ իրենց արգիլուած է այն օրը առուտուր ընելը ։ Քիչ մը ատենէն ետքը Թահիթեցիներէն շատերը իրենց ծառակութիւնները դարձան ։ Միայն քառասուն հոգւոյ չափ նաւը մնացին ։ Քարոզիչները որոշեցին որ հոն աստուածային պաշտամունքը կատարեն ։ Աղօթքին ատենը, վայրենիները լռութեամբ կը դիտէին անոնց շարժմունքը ։ Անկէ ետև զմայլեցուցիչ եղանակով սկսան երգ մը երգել . վայրենիները աս ձայնը լսելուն վրայ անանկ ապշած մնացին, որ դժուարաւ կրնային իրենց ուրախութիւնը զսպել ։ Ան երգած երգերնին աս խօսքերով կը սկսէր ։

„Աս բլուրներուն խաւար թանձրամած
‘Նայէ՝ ով անձն իմ, լուռ հիացած .
Խոր խոստմունքը ա՜հա կը բերեն
Մեզի շընորհաց փառաւոր օրերն .
Ո՛վ այն Յոբելեան օրհնեալ մեծ օրը
Սքանչելի՝ լոյսդ ծագէ աս տեղը” ։

Անկէ ետև Պատուելի Քովլը քարոզեց աս խօսքիս վրայ՝ թէ «Աստուած սէր է”։

Աստուածային պաշտօնը երգով մը վերջացաւ, որ կը սկսի այսպէս ։

«Գովաբանեցէք զԱստուած՝
որ աղբիւրն է բոլոր բարեաց» ։

Ասկէ քիչ մը ետքը մէկ ծառակլորով մը երկու մարդ եկան, ասոնք աշխատակամարթ էին Շուէտի երկրէն եկած, մէկը նաւաբեկութեան պատճառաւ հոն կը գտնուէր, ու միւսը առջինէն քանի մը տարի առաջ նաւի մը մէջէ Թահիթի ձգուեր էր ։ Ասոնց հագուստը վայրենիներուն պէս էր, և անոնց անունները Պետրոս և Անդրէաս էին ։ Քարոզիչները աս մարդիկը տեսնելնուն՝ ուրախացան. քանզի չէ թէ միայն Թահիթեցւոց լեզուն՝ այլ Անգղիարէն ալ գիտէին, և այնպէս կարող էին վայրենիներուն ըսածները մեկնել, և կղզիներուն վրայով շատ բաներ հասկըցընել քարոզիչներուն ։ Բայց ասոնք խիստ չար մարդիկ ելան. և մինչև անգամ հեթանոսներէն աւելի գէշ էին, թէ և Քրիստոնէից երկրի մէջ ծնած ալ էին ։

Պետրոս և Անդրէաս, նաև վայրենիներէն ալ երեսուն հոգւոյ չափ՝ ուզեցին որ ան գիշերը նաւուն մէջը քնանան ։

Վարողիչները ան բոլոր գիշերը փոփո-
խակի արթուն կեցան, վախնալով որ
չըլլայ թէ իրենց այցելուները մէկ չա-
րութիւն մը ընեն ։ Սակայն անոնք հան-
դարտ կեցան ։

Թահիթեցւոց մէջ մէկ ծեր մարդ մը
կար, որ ուրիշներէն երեւելի մարդ մը կը
սեպուէր ։ Անիկայ կուոց քրմապետ մըն
էր, ու կը կոչուէր Մանէմանէ ։ Աս
մարդը շատ կը փափաքէր նաւապետը ի-
րեն բարեկամ ստանալու. քանզի Թահ-
իթիի մէջ սովորութիւն կար՝ որ մէկ
մարդ մը իրենց բարեկամ կ'ընտրէին,
ու անոր ընծաներ կու տային, ան յու-
սով որ՝ եթէ կարողութիւն ունենայ ան
բարերարութեան փոխարէնը հատուցանէ ։
Մանէմանէ աս պատճառով կ'ուզէր նա-
ւապետը իրեն բարեկամ ընել, վասն զի
կը խորհէր անկէ շատ բաներ ստանալ ։
Առջի անգամ Ուալըրն նաւապետը աս
պատիւը մերժեց. իսկ Մանէմանէ այն-
չափ կը փափագէր անոր սիրտը ընելու,
որ լուսցածին պէս արթնցուց զանիկայ
որ նորէն թախանձէ ։ Վերջապէս նաւա-
պետը խորհելով որ քիչ ատենէն ան
տեղաց պիտի երթայ, և չուզելով քըր-

մապետին դէմ դնելու , համոզութեան տուաւ : Մանէմանէ խիստ ուրախացաւ , ու մէկզմէկու անուն առին , և իր վրայէ լաթերն մէկ կտորը նաւապետին վրայ փաթութեց , ու խնդրեց որ մէկ հրացան մը տայ : Նաւապետը բսաւ թէ՝ աւելորդ մէկ հատ մը չունի անոր տալու , բայց քիչ մը ետքը ուրիշ ընծաներ պիտի տայ :

Նա որովհետև ան օրը երկուշաբթի էր , նաւապետը նաւը ծովեզերքին մօտեցուց : Նաւուն մէջը եղող վայրենիներէն շատերը ծովը նետուեցան , և ձուկի պէս լողալով ցամաքը ելան . ուրիշները ծովեզերքէն նաւը եկան և խօզեր ու պըտուղներ բերին ծախելու համար . որոնցմէ նաւուն մարդիկը ծախու առին :

Այս օրէն ետքը ժամը մէկին նաւուն խարիսխը ձգեցին . և այնչափ սաստիկ անձրև կու գար , որ մինչև ժամը չորսը՝ մէկը չկրցաւ դուրս ելլել . ետքը նաւապետը , քարոզիչներէն մէկ քանին , Մանէմանէն , և երկու Շուէտցինները նաւակով մը ցամաքը ելան : Ծովեզերքը եղող ժողովուրդը ուրախութեամբ ընդունեցին քարոզիչները , իրենց սրտին բերկրութիւնը ցուցընելով՝ ինչպէս որ

ըրեր էին առաջ ալ նաւուն մէջ ։

Վայրենիներէն գլխաւոր մէկը պարապ տուն մը ցուցուց քարոզիչներուն, և ըսաւ թէ՝ անիկայ իրենց պիտի տրուի ։ Աս տունը խիստ մեծ էր, երկայնութիւնը 100 ոտնաչափի կը հասնէր, բայց սենեակներու բաժնուած չէր, ու կահ կարասիք չունէր ։

Հիմա քարոզիչները տեսան թէ ինչ երկրի մը մէջ պիտի բնակէին. իրենց երեւակայածէն աւելի գեղեցիկ ու աւելի պտղաբեր տեղ մըն էր. սակայն անապատի մը պէս կ'երեւնար իրենց. քանզի հեթանոսաց երկիր մըն էր՝ ու անոր մէջը արդարութեան ախորժելի պտուղներ բնաւ չէր բուսեր, հապա միայն մեղքի թունաւոր խոտեր. այսու ամենայնիւ յոյս ունէին որ իրենց քարոզութեամբը, և Աստուծոյ Հոգւոյն միջոցովը Տէրոջը պարտէզին՝ Եդեմին պիտի նմանէր ։

## ԳԼՈՒԽ Բ

### Թէ ի՛նչ ըրին տարագիրները իրենց Թահիթի հասնելուն առջի շաբաթը :

Հետևեալ առաւօտուն կէս օրէն ժամ մը առաջ՝ նաւապետը և մէկ քանի քարոզիչներ Մանէմանէին ու Պետրոսին հետ իրենց նաւակները մտնելով՝ ցամաքը ելան : Կղզւոյն բնակիչները՝ որ ծովեզերքը խուռն բազմութեամբ ժողվուած էին 'ի զննին աս նոր եկած մարդիկներուն , երբոր տեսան անոնց մօտենալը՝ դիմեցին դէպ 'ի ծովը զանոնք դիմաւորելու . նաւակները ծովեզերքը քաշեցին , և նաւապետն ու քարոզիչները շալկելով՝ ցամաքը հանեցին . ահա՛ այսչափ մեծ ուրախութիւն ունէին անոնց գալուն համար :

Թահիթեցւոց թագաւորն ու թագուհին ծովեզերքէն մօտ եկեր կը սպասէին . անոնք երկուքնին ալ մարդու շալակ հեծեր էին . քանզի ան տեղին սովորութիւնն էր՝ որ թագաւորն ու թագուհին դուրս ելած ատեննին ոտուընին բնաւ գետինը պիտի չդպցընէին , բայց միայն բուն իրենց

տանը մէջ։ Ու ան կղզին խոզէն մեծ ա-նասուն չգտնուելուն համար՝ միայն մար-դոց շալակը կը հեծնէին. և աս բանս մեծ պատիւ կը սեպուէր, ու կղզւոյն բնակիչներէն մէկը իրաւունք չունէր աս պատիւը ընդունելու, բայց միայն Թա-գաւորն ու Թագուհին։ Երբոր Թագա-ւորն ու Թագուհին ճամբորդութիւն մը ընելու ըլլային, խել մը մարդիկ անոնց հետը կ՚երթային, որ երբոր զանոնք շալ-կողները յոգնին՝ իրենք շալկեն. և մէ-կուն կռնակէն մէկ ուրիշինը փոխադրուե-լու ատեններնին՝ Թագաւորն ու Թագուհին բնաւ իրենց ոտքը գետինը չէին դպցը-ներ, հապա մէկուն գլխուն վրայէն ու-րիշի մը կռնակը կը ցատկէին. և դուրս ելած ատեններնին իրենց ոտքը գետինը չը-դպցընելնուն պատճառը աս էր որ, ա-նոնք ինչ երկրի վրայ որ ոտք կոխէին, իրենցը պիտի ըլլար, և ժողովուրդը պի-տի դժուարէր՝ իրենց կալուածքներէն ու տուներէն զրկուելնուն համար։

Թագաւորը Օթու կը կոչուէր. և հազիւ թէ քսան տարեկան կար, անոր տեսքը դանդաղ ու ծանրագլուխ էր, և ըստ մեծի մասին Թահիթեցւոց ցուցա-

ցածին պէս քաղցր բնութիւն մը չէր ցուցըներ • իսկ Թագուհին միայն տասնուհինգ տարեկան էր • և իր էրկանը պէս ծանրաբարոյ չէր ։

Նաւապետը սկսաւ Թագաւորին հետ խօսիլ , (և Պետրոս կը թարգմանէր անոր ըսածները ,) թէ քարոզիչները եկեր են իր ժողովուրդին օգտակար բաներ սորվեցընելու , և թէ միայն աս նպատակիս համար էր իրենց Անգղիայէն ելլելը • ասկէ ետքը խնդրեց Թագաւորէն՝ որ իրենց ընդարձակ տեղ մը տայ պտղաբեր ծառերով լեցուն , որ իրենք հոն բնակին ու տուներ շինեն ։ Աս ալ անոր ըսաւ որ՝ քարոզիչները բնաւ պատերազմ պիտի չընեն՝ թէ անոր համար և թէ անոր դէմ , հապա միշտ անոր հետ սիրով պիտի վարուին • և միայն աս կ'ուզեն՝ որ ինքը խօսք տայ անոնց վնաս մը չընելու ։

Թագաւորը խոստացաւ որ նաւապետին ուզածին պէս ընէ • և ըսաւ որ ան իրենց տրուած մեծ տունը իրն էր , և ան ալ ու մէկ ընդարձակ երկիր մ'ալ պիտի տայ իրենց ։ Օթու առանց վար իջնելու՝ նաւապետին ձեռքէն բռնեց , ու ան տունը տարաւ զանիկայ , և անկէ

ծովեզերքը բերաւ , և այսպէս մէկ տեղէ մէկալ տեղ երթալնուն պատճառաւը նաւապետը յոգնելով՝ ըսաւ թէ ինքը նաւը պիտի դառնայ ։ Դեռ իրարմէ չըզզատուած՝ Ոթու խնդրեց նաւապետէն որ հետը բերած հրացանները պարպել տայ ։ Ան ալ հրաման ըրաւ որ բոլոր հրացանները՝ որոնք չորս հատ էին , ամէն մէկը երկերկու անգամ պարպեն . ու ետքը քարոզիչներուն հետ նաւը դարձաւ ։

‘Այն իրիկունը Թագաւորն ու Թագուհին նաւին քովը եկան , ամէն մէկերնին մէյմէկ պզտիկ նաւակի մէջ նստած հետերնին մէյմէկ ծառայ ունենալով ։ Անոնք նաւը ելլել չուզեցին , ըսելով թէ՝ երբոր նաւուն դպչին , անիկայ իրենցը պիտի ըլլայ , և անկէ ետև՝ ալ իրենց ծառաներէն 'ի զատ մէկ մը պիտի չկրնայ հոն հաց ուտել ու բնակիլ ։ Ուստի նաւապետը իր նաւը ձեռքէ հանել չուզելուն համար , ալ զանոնք չըստիպեց որ գան ։

Այս անոնց զուարճութիւն տալու համար՝ նաւուն թնդանօթները առաջարկեց որ պարպեն . բայց Թագաւորը ըսաւ որ ան մեծաձայն շառաչիւնէն ինքը կը վախ-

նայ , և թէ իր ականջներուն ալեաց մըռա-
ունն : Այսօրը թագաւորն ու թագուհին
ըսին նաւապետին թէ՝ իրենք լսեր են որ
նաւուն մէջը սպիտակամորթ կնիկներ ու
տղաքներ կան եղեր , և թէ իրենք շատ
կը փափաքին զանոնք տեսնելու , բնաւ
անանկ մէկ մը տեսած չըլլալնուն համար :
Ան կ'երեւնայ թէ աս էր նաւուն քովը
գալերնուն պատճառը : Կնիկներն ու
պզտիկ տղաքը նաւուն քովի կողմը ե-
կան , ուսկից որ կրնային թագաւորին ու
թագուհւոյն երեւնալ : Պզտիկ Սամուէլ
Հաուէլը մօրը գիրկն էր : Աս ճերմակ-
ներեն կնիկներն ու տղաքները տեսնելով՝
թագաւորն ու թագուհին զարմանքի և
ուրախութեան ձայնով աղաղակեցին :

Աս այցելուները ալ աւելի չէին կրնար
կենալ , քանզի երկիրը կը մթնար , և
մի միայն յարմար ժամանակն էր ցամաքը
ելլելու՝ դեռ որոտման ու փայլակներու
փոթորիկը վրանին չհասած :

Չորեքշաբթի առաւօտուն սաստիկ
անձրեւելուն պատճառաւը քարոզիչները
մինչև ժամը ինը չկրցան նաւէն դուրս
ելլել . շատ կը փափաքէին կանուխկեկ
ցամաքը ելլելու , քանզի կ'ուզէին իրենց

տանը պատրաստութիւնները տեսնել ։ Վերջապէս իրենց անկողիններն ու քանի մը սնտուկներ հետերնին առած՝ մեծ մակոյկ մը մտան որ ցամաքը ելլեն, բայց իրենց կնիկներն ու տղաքները նաւուն մէջ թողուցին ։ Նաւապետը մէկ քանի նաւաստիներով անոնց հետ էր մակոյկին մէջ ։ Կղզւոյն բնակիչներէն մեծ բազմութիւն մը ծովեզերքը կայներ կը սպասէին անոնց ցամաքը ելլելուն ։ Թագաւորն ու թագուհին ալ հոն էին՝ առջի անգամին պէս մարդու շալակ հեծած ։

Կղզեցիք սնտուկներն ու անկողինները տունը տանելու օգնեցին, ու պատրաստ էին քարոզիչներուն ուզածին չափ ձեռնտուութիւն ընելու ։

Աս միջոցիս՝ մեծ բանը տունը սենեակներու բաժնելն էր ։ Կղզեցիք անտառներէն գացին պամպու կոչուած տունկերէն եղէգներ կտրելու, որ զանոնք իրարու քով դնելով, սենեակներուն պատերը կը շինէին ։ Ամէն մէկ քարոզչին համար մէյմէկ անկողինի սենեակ շինուեցաւ. նաև ուրիշ մէկ սենեակ մը գրքերու համար, մէյմըն ալ պաշար պահելու համար, և մէկ ուրիշ մը դեղերու

համար ։ Տանը մէկ ծայրը մեծկակ սենեակ մը շինուեցաւ իբրև մատուռ . և ասիկայ սրահի տեղ ալ կը գործածուէր , քանզի ժողովուրդը անկէ կ'անցնէին միւս սենեակները երթալու համար ։

Այս օրը մտնելուն՝ Մանէմանէ իրիք հատ եփած խոզ բերաւ ճաշի համար պատրաստուած ։ Գետնին վրայ մէկ մեծ լաթ մը տարածեց և նաւապետն ու քարոզիչները անոր բոլորտիքը նստան , և Աստուծմէ օրհնութիւն խնդրելով գոհութեամբ կերան , առանց դանակի , պատառաքաղի , դրգալի , սեղանի կամ աթոռի ։ Կղզւոյն բնակիչները այնչափ առատօրէն պաշարներ ընծայ բերեր էին , որ կը թուէր թէ՝ քարոզիչները ժամանակ մը ուտելիքի պակասութիւն պիտի չքաշէին . ասկէ զատ ծառերու կեղևներէ շինած հանդերձներ բերին՝ իրենց այցելուներուն հագցուցին , անոնց գալուստը ողջունելու համար ։

Քարոզիչները աս ընծաներն ընդունելնուն՝ բոլոր մխիթարութեանց բարերար Պարգևիչն օրհնեցին ։

Թագաւորն ու թագուհին մեծ մարդասիրութիւն ցուցուցին , և կարգա

անոնց ամենուն ձեռքը բռնելով թօթվեցին ՚ի նշան օրրոյ բարեկամութեան : Տղաքը անոնց հանդերձներուն նայելով՝ զանոնք ուշադրութեամբ զննեցին : Խիստ շատ հաւնեցան Պետ . Լուխոյին հովանոցին՝ երբոր անիկայ բացաւ . բայց պատուիրեցին որ իրենց գլխուն վրայ չբռնեն , քանզի այնուհետև իրենց յատուկ գործածութեանը նուիրուած պիտի ըլլար :

Ան բոլոր օրը խումբ մը պար բռնողներ անոնց քովը գալով կը խաղային , և բարձր ձայներով կ'աղաղակէին : Աս պար բռնողները խիստ չար մարդիկներ էին : Անոնք Արէօիս կը կոչուէին , և իրենց բոլոր ժամանակը մէկ տեղէ ուրիշ տեղ պտըտելով՝ ամէն տեսակ անհեթեթ շարժմունքներ կ'ընէին , թէ իրենց զուարճութեանը համար և թէ ուրիշներու : Անոնք պար բռնելու ատեննին՝ մարմիննին ածուխով կը սեւցընէին , ու երեսնին ծամի մը հիւթով կարմիր կը ներկէին : Պէտք էր ասանիկ մարդիկը պատժել իրենց ծուլութեանը համար , բայց պատիժի տեղ՝ թագաւորն ու իր ժողովուրդն ալ քաջալերութիւն կու տային : Ուր որ երթային , խնձոյք կը պատրաստուէր իրենց ,

ու սիրով կ՚ընդունուէին. և թէպէտ այն-
չափ անզգամ մարդիկ էին, բայց պա-
տուով կը մեծարուէին: Մինչև անգամ
կը յուսային թէ՝ իրենց մեռած ատենը
մէկ խիստ գեղեցիկ տեղ մը՝ լեռան գը-
լուխ մը երթալով յաւիտենական ուրախու-
թիւն պիտի վայելէին: Սոսկալի բան է
անոնց ամէն տեսակ ըրած մարդասպանու-
թիւնները յիշելը: Իրենց պզտիկ տղաքը
կրթելու համար նեղութիւն չէին կրեր,
այլ միշտ անոնք ծնողներուն պէս կը մեռ-
ցընէին: Թահիթիի բնակիչներէն մեծ-
մասը անոնց գարշելի օրինակին կը հե-
տևէին, ինչպէս որ քիչ մը ետքը պիտի
տեսնէք: Այս օրին սա դատապարտելեաց
մարդիկը քարոզիչներուն տանը դրանը
մօտ եկան, և սկսան իրարու հետ բանա-
մարտութիւն ընել, ու գօտեմարտիլ, և
գլխովնին իրարու երեսին զարնել զբօսա-
նաց համար: Աւա՜ղ, խեղճ ու յիմար
մարդիկ. անոնք կորսուելու անասուննե-
րու պէս կ՚ապրէին: Ի՜նչ ցաւալի բան
է մտածել՝ որ քրիստոնէից երկիրներուն
մէջ սա չար հեթանոսաց պէս գործքեր
ընող մարդիկ կը գտնուին: Քարոզիչ-
ները սա պար բռնողներուն ըրածներն ու

անոնց յիմարութիւնները տեսնելով կը վշտանային ։

Կղզւոյն բնակիչներն ամէն օր խուռն բազմութեամբ տունը կը ժողվուէին , բայց դեռ բան մը գողցած չէին , գուցէ քարոզիչներուն իրենց վրայ գաղտուկ հսկելը դիտեցնելին էր պատճառը ․ քանզի ինչպէս որ առաջ ըսինք , ամէնքն ալ գողութիւն ընելու հակամիտեալ էին , ու աս բանս մեղք մը չէին սեպեր ։

Երբոր իրիկունը վրայ հասաւ , քարոզիչներն աղաչեցին տեղացւոց որ լռեն , (քանզի շարունակ կը խնդային ու կը խօսակցէին ,) ու եաքը երգ մը երգեցին , և իրենցմէ մէկը աղօթք ըրաւ ։ Կ'ուզէին որ աս վայրենի մարդոց առջևը Աստուծոյ փառաբանութիւն մատուցանեն , որպէս զի աս խեղճ հեթանոսներն Անոր վրայով հարցուփորձ ընեն ։

Քարոզիչներն աղաչեցին կղզիցիներուն որ ելլեն երթան , ու չդառնան մինչև առտու ։ Երբոր անոնք գացին , քրիստոնէից փոքրիկ խումբը առանձին և հանդարտ մտօք իրենց կանոնաւոր ընտանեկան աղօթքն ըրին ․ ու կէս օրուան ճաշէն աւելցած կերակուրներով ընթրիք

ըրին , ու առջի անգամ հեթանոսաց երկրին մէջ քնացան : Անոնց սրտերէն Աստուծոյ շնորհակալութիւններ կը բըղխէր , որ զիրենք Ովկիանոսէն անվտանգ ճանապարհորդութեամբ մինչև ան հեռաւոր տեղը բերաւ , և որ ան օտար մարդոցը սիրտը դրդեց՝ զիրենք այսպէս մարդասիրութեամբ ընդունելու : Անոնց ամենուն փափագն աս էր՝ որ իրենց քաղաքութիւնն ընդունուի , և որ աս խեղճ կռապաշտները Տէրը պատուեն :

Հետևեալ օրը հինգշաբթի էր : Կըզզւոյն բնակիչներն առտուանց կանուխ տունը եկան , և քարոզիչներուն նախաճաշիկի համար ջուր տաքցուցին , ու Պռագայի և հացածառի պտուղ պատրաստեցին :

Քարոզիչները դեռ տանը շինութիւնը չլմնցուցած ըլլալով՝ բոլոր ուժովնին անդադար կ'աշխատէին : Սակայն ճաշելու համար նաւը գացին , և Թահիթեցիներէն ոմանք ալ անոնց հետը գացին : Օթու իր ծառակուրը մտաւ , բայց իր սրբազան սեպուելուն պատճառաւը չըկրնալով նաւը մտնել՝ անոր մօտ կեցաւ իր ծառակրին մէջը , և խնդրեց որ

քիչ մը ուտելիք տան իրեն : Նաւապետն ամանի մը մէջ դրաւ խորոված խոզի մը կէսը՝ ու խրկեց անոր , և մէկ քանի պաքսիմատ : Օթու այս իրեն մատուցուած ընծան հետն առնելով մեծ ուրախութեամբ՝ թի քաշելով ծովեզերքը եկաւ :

Քարոզիչները ճաշէն ետև իրենց գործին դարձան , բայց տեսան որ կղզեցիք առջինին պէս ժրութեամբ չէին աշխատիր : Անոնք ձանձրացեր էին պամպուշի փայտեր բերելէն . բայց երբոր անոնց վարձք մը խոստացուեցաւ , մինչև իրիկուն շատ մը բերին :

Այնչափ շատ ուտելիքներ ընծայ եկաւ , որ քարոզիչները կը վախնային՝ որ իրենք պիտի չկրնան զանոնք բերողներուն ուզածին չափ ընծաներուն փոխարէնը հատուցանելու . քանզի գիտէին որ անոնք շահասէր և ագահ մարդիկ էին :

Ուրբաթ օրը Նաւապետը կանուխկէկ նաւէն եկաւ , իր մակոյկին մէջ ունենալով մէկ սնտուկ մը՝ որ կը պարունակէր Թագաւորին ու Թագուհւոյն ընծայուելու հանդերձները : Օթու իր սովորութեանը պէս ծովեզերքը կեցեր էր .

քանզի ան տեղուանը մէկ պզտիկ խրճիթ մը շինեց էր , որ միշտ մօտ ըլլայ ։ Պետրոս ան սնտուկը ցուցուց Օթոյին , ու անոր մէջը ինչ ըլլալը անոր իմացընելով՝ խնդրեց որ անոնց հետ իր տանը մօտ տեղ մը երթայ , որպէս զի կարենայ վար իջնել ։

Բոլոր բազմութիւնը Թագաւորին խըրճիթին մօտ եղող ծառի մը տակ կայնեցան ։ Նաւապետը պատուիրեց ամենուն ալ որ պար առնալ կայնին . ետքը սնտուկն անոնց մէջտեղը դնելով՝ Թագաւորին ըսաւ որ մարդուն շալակէն վար իջնէ , որ կարենայ իր նոր հանդերձները հագնիլ ։ Բայց Թագաւորը միայն աս պատասխանը տուաւ , թէ՝ "Ի՛նչ մը ետքը կ'իջնէ", և շարունակ աչքը տնկեր գոց սնտուկին վրայ կը նայէր ։ Նաւապետն ալ սպասելէն ձանձրանալով , սնտուկը բացաւ , ու Թագուհւոյն հանդերձները հանեց ։ Թագուհին զանոնք տեսածին պէս՝ մարդուն շալակէն վար ցատկեց , նոյնպէս ըրաւ Թագաւորն ալ ։ Թագուհին գլխարկը գլուխը դնելով կ'ուրախանար ։ Հանդերձները շատ պըզտիկ էին անոր ալ և Օթոյին ալ , որ

երկայնահասակ ու անձնեայ մարդ մըն էր . և պէտք էր քիչ մը կարերը քակել ։ Համդերձները փառաւոր էին , ու երբոր Թագաւորն ու Թագուհին զանոնք հագան , բոլորտիքն եղող բազմութիւնը մեծ զարմանքով կը նայէին անոնց վրայ ։ Բայց Օթու ասոնք բանի մը տեղ չդնելով , ըսաւ թէ՝ մէկ հրացան մը , դանակ մը , կամ մէկ մկրատ մը ասոնցմէ աւելի օգտակար պիտի ըլլար ։ Ասիկա՝ ընծայ մը ընդունելուն քաղաքավարական ճամբան չէր , բայց բանաւոր ընտրութիւն մըն էր . յիրաւի թէ և Օթու անմիտ մէկ մը կ'երևնար , այսու ամենայնիւ աղէկ իմացականութեան մը տէր էր , ինչպէս որ ասկէ ետքը պիտի տեսնէք ։

Ես երկու արքայազունները հագուելնուն պէս՝ Մանէլմանէ երկցաւ ձեռքը քանի մը Թահիթիի լաթ բռնած՝ . իր բարեկամը նաւապետն իրեն կանչեց . ան ալ վրան փաթուեց անոր լաթը ։ Ետքը երկուքնին մէկտեղ քարոզիչներուն տունը գացին , և տեսան որ գործը աղէկ առաջ կ'երթար ։ Եւ կէս օրը անցած ըլլալով ծերունի քուրմը նաւապետին հետ ընկերացած՝ նաւը գնաց ճաշ ընելու ։

Շաբաթ օրը տունը պատրաստ էր կնիկներուն ու տղաքներուն համար, թէպէտ և լմնցած չէր. ուստի կէս օրուան ճաշէն ետև մեծ մայրիկը մնալով ցամաքն ելան: Ծովեզերքին վրայ խիստ մեծ բազմութիւն ժողվուեր էին, որոնք կը փափաքէին տեսնել սպիտակամորթ կընիկներն ու տղաքները, որոնց պէս առաջուց բնաւ տեսած չէին: Երբոր դանոնք տեսան, ամէնը մէկտեղ մեծապէս ուրախացան: Ու մինչև կ'երևնար թէ՝ Թագաւորն ու Թագուհին կը վախնային մօտ գալու, կամ կնիկներուն հետ խօսելու. բայց հրաւիրուած ըլլալնուն համար, ժողովուրդին հետ ընկերացած նոր տունը գացին: Կնիկներն ու տղաքները նոցա մտնելէն ետև՝ դեռ բազմութիւնը դուրսը կը կենային, և ստէպ ստէպ անոնց ձայն կու տային որ դուռն ելլեն երևնան. և անոնց խնդիրքը կատարուեցաւ:

Ահա այսպէս քարոզիչներուն բոլոր ընտանիքն իրենց նոր բնակարանին մէջ Շաբաթ օրը տեղաւորուեցան, ճիշդ իրենց Թահիթի կղզին հասնելէն շաբաթ մը ետքը:

Ասկէ ետեւ տարակուսական երկիւղի մէջ էին, չգիտնալով թէ ինչպէս պիտի վարուէին վայրենիներուն իրենց հետ. սակայն զԱստուած օրհնեցին, որ իրենց շնորհք գտնել տուաւ ան հեթանոսներուն առջին :

Քարոզիչները կղզեցւոց ըսին թէ՝ հետեւեալ օրը ճշմարիտ Աստուծոյն օրը ըլլալով, բնաւ գործ մը պիտի չգործեն, ու ընծայ մը պիտի չընդունին. իսկ կղզեցիք մինչեւ երկուշաբթի օրն անոնց բաւական ըլլալիքէն աւելի ուտելիք բերին, և ըսին քարոզիչներուն. "Այդ ամէն օրուանէն աւելի՞ աղօթք պիտի ընէք" : Անոնք ալ ըսին թէ այնպէս պիտի ընենք :

Կղզւոյն բնակիչները՝ առանց մէկու մը ըսելուն բոլորովին մութը չկոխած տունէն ելան գացին, ինչպէս որ միշտ այնպէս կ՚ընէին :

## ԳԼՈՒԽ Գ

*Քարոզչներն առջի անգամ յետոյ կը դար- ձնեն կղզւոյն Բնակիչացը Բարեխ ընելու :*

Հիմա պիտի լսէք թէ՝ քարոզիչները ինչպէս անցուցին իրենց առջի Կիրակին Հեթանոսաց երկրի մը մէջ :

Անոնք առտուանց աստուածային պաշտամունքը կատարեցին իրենց բնակարանին մատուռին մէջ. կղզեցւոց շատերը մօտէն կ'ընէին, ու հանդարտ կը կենային, թէ և ըսուած բաները չէին հասկընար : Թագաւորն ալ ներկայ էր :

Այս օրէն ետև նորէն եկան, և ատոնց Պատ. Ճէֆֆրըսըն սկսաւ խօսիլ անոնց հետ, և Շուէտցի Անդրէասը կը թարգմանէր անոր ըսած ամէն խօսքերը : Ասիկայ քարոզութեան անյարմար եղանակ մըն էր, մանաւանդ որ Շուէտցին չարաճիտ մէկն ըլլալով՝ բարեպաշտ մարդու մը պէս ժողովուրդին հետ բարեկամաբար չպիտի խօսէր : Սակայն քարոզիչներն այնչափ փափաք ունէին Փրկչի մը բարի աւետիսը ան խեղճ Հեթանոսներուն տա-

լու , որ դժուարաւ կրնային սպասել մինչև որ անոնց լեզուն սորվին :

Կըզգեցիք տեսնելով որ Պատ. Ճ՚էֆֆըրսըն իրենց քարոզ կու տայ , սկսան ուշադրութեամբ նայիլ և պատասխանի տեղ հարցմունքներ ընել : Անոնք հարցուցին թէ՝ ''Աս պատգամը ծառաներո՞ւն ալ խրկուած է , թէ թագաւորին ու թագուհւոյն'' :

Քարոզիչն ըսաւ անոնց թէ ամենուն խրկուած է : Նաև ըսաւ . ''Միայն մէկ ճշմարիտ Աստուած մը կայ , և ամէն մարդիկ իրենց չարութեամբը զանիկայ բարկացուցած են . սակայն անիկայ այնպէս ողորմած է , որ ամենուն ներելու պատրաստ է : Թէ որ մէկը անոր խօսքին հաւատայ , զանիկայ կ'օրհնէ աս կեանքիս մէջ , և ետքը յաւիտենական երջանկութեան կը տանի զանիկայ'' :

Թագաւորը քարոզին ժամանակը խիստ յամառ և անկրթելի կ'երևնար . և հաւանական կը թուէր թէ միւսներէն աւելի դժուար պիտի հաւատայ :

Քարոզիչները նորէն ան գիշերը հանգըստանալու գացին , յուսալով որ Աստուած պիտի խոնարհեցընէ անոնց սրտերը

իր խօսքին հաւատալու :

Երկուշաբթի օրը Նաւապետն առջի անգամ Թագաւորքին հայրն ու մեծ հայրը տեսաւ :

Զարմանալի բան չէ՞ աս՝ որ անոնց կենդանութեանն ատենը Օթու Թագաւոր եղած էր . քանզի ամէն երկրի սովորութիւնն է որ հայրը չմեռած՝ որդին չը կրնար Թագաւորել . բայց Թահիթիի մէջ աս սովորութիւնը չկար : Թագաւորին տղայ մը ծնանելուն պէս , երախան Թագաւոր կ՚ըլլար , թէ որ անոր ծնած ատենը հայրը չսպաննէր զանիկայ . և ան ատենէն ետքը հայրը մարդու շալակ չէր հեծնէր , այլ իր որդին Թագաւորի մը պէս կը պատուէր . և թէպէտ հայրը դեռ Թագաւորի իշխանութիւն կ՚ունենար , բայց չէ՛ թէ Թագաւորի մը յատկացեալ ամէն պատիւը :

Օթուին հայրը Ռօմարէ կը կոչուէր . անիկայ թէ և հեթանոս էր , բայց շատ խելացի մարդ մըն էր : Առաջուց անիկայ լոկ իշխան մըն էր , բայց Թահիթիի մէջ գտնուած բոլոր ուրիշ իշխաններուն յաղթելով՝ ան բոլոր կղզւոյն վրայ Թագաւոր եղեր էր , ինչպէս նաև անոր մօտն

եղող կղզիի մը՝ որ Չիմէօ կը կոչուէր ։ Ռոսիկայ կղզւոյն բնակչացը մէջ ամենէն մեծ ու երկայնահասակ մարդն էր , և ուրախ ու զուարթ դէմք մը ունէր . և դեռ այնչափ պատիւ ունէր , որ ապօրինաւոր բան կը սեպէին անոր ինք իր ձեռօքը հաց ուտելը ։ ‘Նաւուն մէջ թէյ խմելու ատենը՝ իր ծառաները թէյը պընակին մէջ կը թափէին , ու բերանը մօտեցընելով կը խմցընէին ։

Իր կնիկն Իտիան ալ իր հետը նաւն էր եկեր . և անիկայ ալ բարձրահասակ ու առողջ մէկ մըն էր , որ շատ անգամ պատերազմներու մէջ արիւն թափած էր ։

Օթույին մեծ հայրը որ Օթէու կը կոչուէր , 70 տարին անցուցած , ալեխառն մազերով , ու երկան ճերմակ մօրուքով ծերունի մըն էր ։ Իր տարիքին պատճառաւը՝ իր որդին Բօմարէն ու իր թոռը Օթուն շատ խստութեամբ կը վարուէին անոր հետ ։ Պրանզի Թահիթիի չար սովորութիւններէն մէկն էր՝ ծեր մարդոց հետ խստութեամբ վարուիլը ։ Բօմարէ՝ նաւը այցելութեան գացած ատենը դժուարաւ թող տուաւ որ ծեր մարդը նաւապետին սենեակը մտնէ , և կ'ուզէր

որ անիկայ ինք իր ծառայելին մէջը մեռայ : Հեթանոսներն ալ պատուէրը չէին գիտեր՝ թէ «Մազը ճերմկածին առջևն ոտք ելիր , և ծերը պատուէ» : (Ղևտ . ԺԹ . 32 :)

Բոմարէ զանազան մեծ պակասութիւններ ունէր : Ուտելու և խմելու կողմէ խիստ մոլի էր : Անգամ մը երբոր նաւապետին հետ ճաշ կ'ընէր , լման մէկ հաւ մը կերաւ՝ 250 տրամէն աւելի խոզու մսէն 'ի զատ . և խիստ շատ գինի խմեց : Ուրիշ օր մը գրեթէ շիշ մը լեցուն գինի խմեց , և նոյն ատենը ահաճութիւն կը ցուցընէր Մանէմանեսին՝ միայն գաւաթ մը խմելուն համար , որ անալ իրենն պէս շատակեր մէկն էր : Իրենին՝ անտարակոյս իր ծառաները բերանը լցած են :

Բոմարէ խիստ ագահ ալ էր , ու պէտք եղած ատենը առանց խղճահարութեան սուտ կը խօսէր : Յիրաւի ազնուր ընծաներ տուաւ , բայց աս յուսով կ'ընծայէր , որ անոնց փոխարէն աւելի բաներ առնէ : Առջի անգամ նաւն եկած օրը , ծառի կեղևէ շինուած չորս մեծ կտոր լաթ բերաւ , ու նաւապետին վրայ փաթթեց ,

զեցինները․ Հոն մէկ երկայն նստարան մը դրին, և աղաչեցին որ անոր վրայ նստի Թոմարէն միւսներուն հետ, և ժողովուրդէն ոմանք կանգնած և ոմանք անոնց բոլորտիքը նստած էին։

Թոմարէ անկէ առաջ՝ Կիրակի օրուան պաշտօնին բնաւ ներկայ գտնուած չէր․ և շատ կը փափաքէր որ գայ․ և ըսաւ թէ՝ Ընգղիոյ Աստուծմէն խրկուելու գրքին վրայով երազ տեսեր էր։

Պատ․ Քովը քարոզ մը տուաւ Յովհաննու Գ․ գլխուն 16երորդ համարին վրայով թէ, "Աստուած անանկ սիրեց աշխարհը, մինչև որ իր միածին Որդին տուաւ․ որ ամէն ով որ անոր հաւատայ՝ չկորսուի, հապա յաւիտենական կեանքը ընդունի"։ Պետրոս Շուէտցին, սովորականին պէս, կը թարգմանէր ամէն մէկ պարբերութիւնը։ Կիղեցիք՝ թէ և աս խօսքին ստոյգ նշանակութիւնը չէին հասկընար, բայց պարկեշտութեամբ մտիկ կ'ընէին։

Թոմարէ՝ պաշտօնը լմննալուն, Պատ․ Քովրին ձեռքէն բռնեց ու ըսաւ․ "Մայթայ, մայթայ", շատ աղէկ, շատ աղէկ։

Ետքը իրեն հարցուցին թէ, ան ը-

սնուած բաները հասկըցա՞ծ էր ։

Ան ալ պատասխանեց թէ՝ «Առաջուց Թահիթիի մէջ սաանկ բաներ չկային․ անոր համար կարելի չէ մէկէն 'ի մէկ սորվիլ․ և պիտի սպասեմ ան Աստուծոյն գալուն»: Աս պատասխանէն յայտնի կ'երևնար թէ՝ բանն իսկապէս իմացած չէր: Անկէ ետքը ըսաւ «Կարելի՞ է որ նորէն գամ»: Ու անատենը անոր ըսուեցաւ թէ՝ այո՛, կրնայ գալ: Վերջապէս ինքն ու իր կնիկը Իտիան՝ քարոզիչներուն հետ ճաշ ըրին ու գացին ։

Ժամանակէ մը ետքը երկաթագործի խանութը շինուեցաւ, և Անգղիայէն եկած Հօտճըս ու Հասսէլ սկսան անոր մէջը գործել: Կղզեցիք անոնց բոլորտիքը դիզուեցան, բայց երբոր երկաթէն ցաթկող կայծերը տեսան, ու անոր ջուրին մէջ խօթուած ատենը ձայնը լսեցին, վախնալով ետ փախան․ իսկ իրենց վախը անցնելուն պէս նորէն դարձան ։ Պօմարէ այնչափ զուարճութիւն կըզգար փքոցին ու դարբնոցին համար, որ մօտեցաւ գրկեց երկաթագործը՝ առանց նայելու անոր աղտոտութեանը, և իր քիթն անոր քիթին քսեց․ որ աս բանս սիրոյ

նշան մըն էր Թահիթիի մէջ ։

Քարոզիչները ժամացոյց մը ունէին , որուն վրայ փայտաշէն կկու թռչուն մը կար . կղզեցիք երբոր առջի անգամ ա-նոր զարնելը լսեցին , շատ վախցան ։ Նոյն մարդուն մէկը քիչ մը հացածառի պը-տուղ բերաւ՝ փայտեղէն թռչունը կե-րակրելու համար ։

Քարոզիչներն աս բանիս վրայ ժպտե-ցան . բայց ան ժողովուրդին կուռքե-րուն համար ունեցած յիմարութեանը վրայ՝ ալ աւելի լալ կ'ուզէին քան թէ խնդալ ։ Անոնց սիրելի չաստուածը Օրօ՝ ուրիշ բան չէր , բայց միայն ծառի կոճղ մը մարդու հասակի չափով ։ Աս կոճղը ծառերու մէջ պզտիկ ծածքի մը տակ դրուած էր , ու անոր բոլորտիքը քարէ պատ քաշուած էր ։ Ան տեղը բագիններ կային բարձր սեղաններու պէս , և անոնց վրայ խել մը խոզերու գիակներ դրուած էր , որոնք ամիսներով հոն կը կենային , և զզուելի հոտով օդը կը լեցընէին ։ Աս տեղը Մարայէ կը կոչուէր . և սոս-կալի անգթութիւններ կը կատարուէր հոն ։ Մարդիկներ կը զոհէին , ու զանոնք մեծ կողովներու մէջ դնելով՝ շրջակայ ծա-

տուածները ստեղծեր են աշխարհքը , և թէ անոնցմէ մէկն աստղերը երկնից վրայ հաստատեր է , և թէ մէկ ուրիշ խիստ զօրաւոր աստուած մը ջուամններով բըռնած է արեգակը , և իր ուզածէն աւելի չթողուր զանիկայ՝ որ արագ քալէ :

Աս մարդիկն իրենց տուներուն մէջն ալ աստուածներ կը պահէին : Պարագիչները մէկ տան մը մէջ խիստ շատ պատկերներ տեսան , որոնց ամէն մէկը իր ձեռքը սուր մը կամ ուռ մը բռնած էր . և քուրմերը կ'ըսեն եղեր թէ՝ ան աստուածները զերենք բարկացընողը կը մեռցընեն , թէ որ անիկայ իր յանցանացը համար զոհ մը չմատուցանէ :

Ժողովուրդը կը կարծէր թէ՝ իրենց աստուածներն իրենց պէս բնաւորութիւններու տէր են : Միրօ կոչուած չաստուած մը կար , որ իրենց կարծիքին նայելով՝ գողերուն պաշտպանն էր : Գողութիւն ընելու գացած ատենին՝ շատ անգամ կը խոստանային որ ձեռքերնին անցած բանէն բաժին մը տան : Թէ որ մէկը գիշերով խոզ մը գողնար , հետեւեալ առտուն անոր պոչին կտորը Միրօյին պիտի բերէր , ու ըսէր . «Ահա երէկ գիշերուան

գողցած խոզիս մէկ մասը , բայց մարդա-քան մի՛ ըներ" : Կղզւոյն մէջ մեծ քար մը կայ , որուն համար կը պատմեն թէ՝ անգամ մը Հիրօ գողութիւն ընելու վրայ զանուելով , ամէնայնուն զացեր անոր ե-տին պահուեր է :

Քարոզիչներն անձամբ փորձառութիւն ընելով հասկըցան որ՝ կղզեցիք ալ որչափ կը նմանէին իրենց Հիրօ չաստուծոյն : Օր մը մարդուն մէկը նաւակ մը գողցաւ՝ վրայի զամուած տախտակներուն բեւեռնե-րը առնելու համար . քարոզիչներն ալ մար-դը բռնեցին , ու 3 ժամ՝ բանտարկեցին , և սպառնալիք ըրին՝ որ եթէ ուրիշ անգամ մըն ալ ընելու ըլլայ , սաստիկ պիտի պատժուի : Աս լսելով Յօմարէ , խոզ մը բերաւ որ քարոզիչներուն բարկու-թեանը առաջն առնէ . սակայն անոնք չընդունեցին : Անտարակոյս Յօմարէ կար-ծեր էր՝ որ քարոզիչներն իրենց աստուած-ներուն պէս ագահ են :

Քարոզիչները երեք մարդ վարձքով բռնեցին իբրև ծառայ , որ իրենց խո-զերը պահպանեն , քանզի արդէն ա-նոնց թիւը 70ի կը հասնէր , նաև կերա-կուր եփելու օգնութիւն ընեն : Աս ծա-

ունենըր շուա մը սկսան գողութիւն ը-
նելու ։ Ընտնցմէ մէկը՝ որուն Հիւանդու-
թեանն ատենը քարոզիչները աղէկ խնամք
տարեր էին , շատ քաներ գողնալէն ետքը՝
անոնց քովէն ձգեր ելեր էր ։ Ետքը ա-
նոր ըրածներն իմացուելով , ժողով խըր-
կեցին անոր ետեւէն , ու զանիկայ բերել
տուին ։ Անոր յիշեցուցին իրենց ըրած
բարերարութիւնը , և անոր փոխարէն եր
չար վարմունքը ։ Իր խղճմտանքն իրեն
կ'իմացընէր ապերախտութեանն մեծ. յան-
ցանքը մը ըլլալը · քանզի աչքերէն ար-
ցունքը կը թափէին , ու ինքը կ'ըսէր ·
«Ես խիստ չար մարդ մըն եմ»։

Մէկ ուրիշ օր մը՝ երբոր Պ. Ճիլ-
համ թժիշկը ծովը մտեր կը լուացուէր ,
կղզւոյն բնակիչներէն մէկն անոր լաթերը
գողցաւ · միւս քարոզիչներն անոր ետեւէն
ինկան , և թմբուկի մը ձայն առնելով ,
կարծեցին որ անիկայ անշուշտ ջուր ըրը-
նելու վրայ պիտի ըլլայ , և իրաւ ալ ա-
սանկ ելաւ ։ Հարիւրաւոր մարդիկ կային
անոր քովը · սակայն քարոզիչները անօ-
նելնուն պէս փախան ։ Գողը բռնուե-
ցաւ , ու զանիկայ իրենց տունը տարին ,
և շղթայով սիւնի մը կապեցին , ու

կու տային. քարոզիչներուն ուզածին պէս ընելու, բայց իրենց խոստմունքը չէին պահեր։

Կիրակի օր մը Պատ. Լուիս քարոզ մը տուաւ սա խօսքը բնաբան ընելով՝ «Մի՛ սպաններ»։ Քարոզը լմննալէն ետև՝ ժողովուրդը կ'ըսէր. «Շիտակ է սա խօսքը որ տղաքը չմեռցընենք, ու մարդիկ չզոհենք»։ Նոյն միջոցին Մանէմանէ բան մը փսփսաց ժողովուրդէն մէկուն։ Քարոզիչները հարցուցին անոր՝ թէ ի՞նչ էր ան բանը. ան ալ պատասխանեց թէ՝ «Ժողովուրդին կ'ըսէի որ իրենց չար ճամբաներէն ետ կենան»։ Սակայն ինքն իր չար ճամբաներէն ետ չկեցաւ։ Անիկայ կը նմանէր ան մարդուն՝ որուն Պօղոս առաքեալը կը խօսի Հռովմայեցւոց Բ. գլուխ 1 համարին մէջ։

Նաւուն մեկնելէն առաջ՝ օր մը տեսան. որ Մանէմանէ իր առօրականէն աւելի գինի խմեր էր. և պատճառը սա էր, որ անիկայ մարդ մը պիտի մեռցըներ, և կ'ուզէր որ գինիին միջոցովը իր զօրութիւնը պահէ. ասկէ կ'երևի թէ անիկայ կը զգար իր ընելու գործին ինչ սոսկալի բան ըլլալը։

Այս միջոցիս Բոմարէին կնիկը Իտիան իր նորածին երախան մեռցուց ։ Քարոզիչները շատ անգամ ըսեր էին անոր՝ թէ որչափ գէշ բան է աս ըրածնին . և խոստացած ալ էին՝ որ իրենց կնիկները հոգ պիտի տանին ամէն պզտիկ տղաքներուն , որոնք որ երկրացիք չէին ուզեր սնուցանել ։ Այս պատճառաւ շատ սրդողեր էին Իտիային ։ Շատ չանցաւ՝ անիկայ քանի մը խոզ հետը առած քարոզիչներուն եկաւ , որ ան երևելի ընծան անոնց մատուցանէ . բայց անոնք չընդունեցին , ու ըսին Անդրէասին՝ որ չընդունելնուն պատճառն անոր իմացընէ ։ Իտիա սաստիկ բարկացած ալ ըլլալով ըսաւ թէ՝ «Անոնց տհաճութիւնն իմ հոգս չէ , ես աս տեղին սովորութիւնները պիտի պահեմ» , բայց բերած ընծան ետ չտարաւ ։ Անիկայ առաջուց քանի մը տախտակ տուած էր քարոզիչներուն , որ անով մէկ սնտուկ մը շինեն իրեն ։ Սնտուկը շինուած լմնցած ըլլալով՝ յարմար սեպեցին որ հիմա անոր տան . ան ալ ուրախութեամբ առաւ տարաւ ։

Քարոզիչները ուզեցին որ Սանէմանէն՝ Իտիային բերած խոզերը կղզեցւոց

բաժնէ · բայց անմիջապէս ամէնն ալ իր տունը տարաւ :

Ահա ասանկ ժողովուրդի մը մէջ կը բնակէին քարոզիչները · շարունակ աղօթք կ'ընէին անոնց համար , և կ'ողբային անոնց կորուսեալ վիճակին վրայ · սակայն իրենց ուզածին չափ չէին կրնար անոնց քարոզութիւն ընել :

## ԳԼՈՒԽ Դ

### Թահիթեան ժողովուրդին փորձերը և հին սովորութիւնները :

Հիմա քիչ մը կանգ առնելով քննենք թէ՝ ինչ սովորութիւններ ունէր այն ժողովուրդը , որոնց հոգիներուն համար աս քարոզիչները կ'աշխատէին : Նախ պիտի խօսիմ անոնց կերակուրին և անոնց ուտելու կերպին վրայով :

### ԿԵՐԱԿՈՒՐՆԻՆ

Թահիթիի մէջ ոչ ցորեն կը բուսնէր ,

ո՛չ ալ խաղող կ'ըլլար․ ասոր համար տեղացիք ո՛չ հաց կերակուրին ուտել և ոչ գինի խմել․ բայց ան տեղի ծառերը շատ պտղաբեր ըլլալով՝ ժողովուրդը անոնցմով կ'ապրէին ։ Իշխանաւորները շատ անգամ խոզի միս և երինջի ալ շատ միս կ'ուտէին․ քանզի աս երկու տեսակ կենդանիները յաւէտ պտուղներով կը կերակրուէին ։

Էս կղզւոյս նոր գտնուած ատենը՝ խազերէն ու շուներէն զատ՝ միայն մուկեր կային․ ասոնք խիստ նեղութիւն կուտային ան մարդոցը, իրենց անկողիններուն ու կերակուրներուն վրայ կը պտըտէին․ բայց տեղացիք զանոնք չէին ուտեր ։ Քուք նաւապետը քանի մը կատու թողուցեր էր Թահիթիի մէջ, որոնք խիստ օգտակար եղան ։

Թահիթեցիք կերակուրի համար որոշ ժամանակներ չունեին, բայց հասարակօրէն օրը երեք անգամ հաց կ'ուտէին ։ Ասոնք երկաթէ սաներ չունէին, անոր համար գետինը փորելով փոս մը կը շինէին, ու իրենց կերակուրը հոն կ'եփէին, կամ մախիրատ կրակի վրայ կը խորովէին ։ Ասոնց խիստ սովորական ճաշը ձուկ ու-

հացածառի պտուղ էր ։ Պնակի տեղ ծառի տերևներու վրայ կը դնէին կերակուրը և կ'ուտէին ։ Սեղան նստողներուն ամէն մէկուն քովը գագաօյի ընկուզի կճեպ մը մէջը լեցուն աղի ջուր կը դնէին , ու կերակուրին ամէն մէկ պատառը անոր մէջ կը թաթխէին , ու այնպէս կ'ուտէին ։ Քաղաքակիրթ ազգերը աս տեսակ համեմունքէ խիստ շատ կը զզուին , բայց Թահիթեցիք կը կարծէին թէ կերակուրին համ մը կու տայ ։ Զանազան պըտուղներ մէկտեղ եփած կը խառնէին , ու կարկանդակներ կը շինէին ։ Նաև աս կերպով միայն կրնային տաքցընել . գագաօյի կաթին մէջ տաքցուցած քարեր կը դնէին , որուն մէջ պտուղներուն խառնուրդը կար ։

Բայց որչափ որ համեղ ըլլար կերակուրնին , մէկ բան մը կար , որուն համար անոնց կերակուրը քրիստոնէական երկիրներուն մէջ կերուածին չափ հաճելի չէր գար մարդուս . քանզի հայրն ու մայրը , եղբայրներն ու քոյրերը՝ բնաւ մէկտեղ կերակուր չէին ուտեր ։ Ընդհանրապէս էրիկ մարդիկ և տղաքները տանը մէջ մէկտեղ կ'ուտէին . իսկ կը-

ձիկներն ու աղջիկները յատուկ իրենց համար շինուած խրճիթի մը մէջ զատ կ'ուտէին ։ Չե՞ս զարմանար թէ ինչ կրնար ըլլալ աս տարօրինակ սովորութեանը պատճառը ։ Պատճառը աս էր որ՝ Թահիթեցւոց էրիկ մարդիկը՝ կնիկները ռամիկ կ'անուանէին , և անոնց հետ կերակուր ուտելու անարժան ․ քանզի զիրենք սուրբ կը սեպէին ․ ասոր համար էր՝ որ կանանց արգիլուած էր աստուածոց նուիրուելու բաներէ շինուած կերակուր մը ուտելը ․ ուստի խոզու միս , հաւ , գագաօյի ընկոյզ , պանանա , և ծովու կրիայ ու շատ տեսակ ձուկեր չէին կրնար ուտել ։ Աս ամէն բաները սուրբ կը կոչուէին , և կանանց կերակուր ըլլալու անպատեհ էին ։ Էրիկ մարդիկը և կնիկները իրենց ուտելիքը զատ կողմներու մէջ կը պահէին , և ուրիշ կրակներու վրայ կ'եփէին ։ Մինչև անգամ էրիկ մարդ մը կնկան մը խմած գաւաթէն ջուր չէր խմեր ։

### ՏՈՒՆԵՐՆԻՆ

Տուները ընդհանրապէս ծովեզերքին

մօտ շինուած էին՝ հացածառերու հովա-
նիի տակ : Անոնց ձևը երկայն ու նեղ
էր . պատերը ցիցերով շինուած էր , ո-
րոնք իրարմէ երկու իրեք մատնաչափ հե-
ռաւորութեամբ գետինը գամուած էին .
անանկ որ քովէն անցնողները տանը մէջը
կը տեսնէին թռչունի վանդակի նման :
Անոնց մէջ պատուհաններ չկար , քանզի
պէտք չէր . միայն դուռ մը կար շուա-
նով մէկ քովի ցիցին կապուած :

Տուներուն յարկը եղէգներէ շինուած
ու մեծ տերևներով ծածկուած էր : Աս
յարկը շուտ մը կը հիննար , անոր հա-
մար ատէպ ատէպ նորոգութիւն կ'ընէին :
Անկողիններնին տեսակ մը փսիաթ էր , որ
գագաօջի տերևներովը կը հիւսէին : և
բարձերնին ծառի կոճղեր էին : Աս փսի-
աթները տանը մէջ քովէ քով գետնի
վրայ կը փռէին , ու երբեմն մէկ տան մէջ
50 կամ 60 հատ կը գտնուէր , քանզի
թահիթեցիք գիշեր ցորեկ ընկերութիւնը
կը սիրէին : Տուներուն յատակը չոր խո-
տերով ծածկուած էր , որոնք քիչ ժա-
մանակի մէջ մարդուս զզուելի կ'ըլլային՝
կերակուրնին անոնց վրայ թափուելուն
համար : Տուներուն բոլորտիքը պարտէզ-

ներ չկար , բայց երբեմն պզտիկ գաւիթ մը կ'ըլլար՝ բոլորտիքը ցած փանդակա-սիւններով . և մէջտեղէն սև ու ճերմակ քուստերով յատակած ճեմելիք մը՝ ուս-կից տունը կ'ելլէին :

Այս տուներուն մէջ հանգստութիւն կամ խաղաղութիւն չկար , հապա շա-րունակ աղմուկ , խնդալ ու խօսիլ մինչև անգամ գիշերներն ալ :

Երբոր աս մարդիկը ճամբորդութիւն կ'ընէին , ինչպէս որ շատ անգամ ընելու սովորութիւն ունէին , ծովեզերքները շի-նուած պզտիկ հիւղերու տակ կը նստէին , իրենց ծառաներն ալ հետերնին մէկ-տեղ ներս առնելով , քանզի անոնք ընդ-հանրապէս ծովով ճամբորդութիւն կ'ը-նէին , և իրենց ուզած տեղը կ'ելլէին :

ՀԱԳՈՒՍՏՆԻՆ

Էրիկ մարդ ու կնիկ մարդ գրեթէ մի-օրինակ կը հագուէին . անոնց հագուստը ծառի կեղևէ շինուած քանի մը կանգ-նաչափ լաթ մըն է , որն որ իրենց մար-միններուն վրայ կը փաթթէին , և իրենց ուսերուն վրայ ցփսէի նման բան մը՝ և

կամ Թիպէթ-Բօ կ՚առնէին ։

Հիմա ընթերցողը պիտի ուզէ իմանալ թէ Թիպէթ-Բօ ինչ տեսակ բան էր ։

Անիկայ մեծկակ լաթ մըն էր մէջտեղէն ծակ, ուսկից գլուխնին կ՚անցընէին, նոյն ատենը անոր ծայրերը առջեւէն ու ետեւէն վար կը կախուէր. և անոր վրայէն գօտի մը կը կապէին. և որովհետև աս լաթը անձրեւէն կ՚աւրուէր, խոնաւ եղանակներուն՝ տեսակ մը խոտերէ հիւսուած ցրփափի նման բան մը կ՚առնէին վրանին ։

Ազգեցիք մէկ տարօրինակ սովորութիւն մը ունէին, որն որ Թա-Բի-Բո ընել կը կոչէին ։ Անոնք իրենց մարմիններուն վրայ կենդանիներու, թռչուններու, ծաղիկներու ու ծառերու նմանութիւններ կը գծէին ։ Աս պատկերները վրձինով գծուած չէին, հապա փայտի մը ծայրը կապուած ձուկի սուր ոսկորով մը ։ Գիծերը քաշելէն ետեւ, բոյսի մը հիւթէ շինուած սեւ նիւթ մը կը քսէին ան գիծերուն վրայ ։ Աս գործողութիւնը խիստ անտանելի բան էր ։ 12 կամ 14 տարեկան տղոցը կ՚ընէին ասիկայ ։ Աս գծագրութիւնները յաւէտ սրունքներու և բազուկներու վրայ կ՚ընէին, և քիչ ան-

գամ երեսներու վրայ . իշխանաւոր մարդոց վրայի գծուածները հասարակ ժողովուրդինէն աւելի գեղեցիկ էին , քանզի անոնք աղէկ գծագրող մարդիկներ վարձքով կը բռնէին զիրենք զարդարելու համար :

Էրիկ մարդիկ ընդհանրապէս երկան մազեր կ՚ունենային՝ իրենց գլխուն ետևի կողմը տանտրով մը բռնուած . իսկ կնիկները կարճ մազեր կ՚ունենային , ու մեծ հոգ կը տանէին զանոնք կարգի դնելու , և շատ անգամ ծաղիկներէ պսակ շինելով գլուխնին կը զարդարէին : Աղջիկները շատ անգամ գագաօյի դեղին տերևներէն շինած հովանի մը կը դնէին իրենց աչքերուն վրայ՝ զանոնք արեգակին ջերմութենէն ազատ պահելու համար , բայց ընաւ գլխարկ չէին գործածեր :

Առ հասարակ էրիկ մարդ ու կնիկ մարդ մեծ հոգ ունէին իրենց դէմքին վրայ , և զիրենք գեղեցկացընելու համար շատ ժամանակ կը վատնէին : Աս պատճառաւ էր՝ որ հայելիները շատ կը սիրէին , ու երբոր հայելի չունենային , կ՚երթային յստակաջուր առուի մը եզերքը կը նստէին՝ իրենց մազերը շիտկե-

լու համար ։

Օրն երեք անգամ կը լուացուէին , և ասանկով շատ մաքուր կը պահէին իրենց անձը՝ որ իրենց առողջութեանը կողմանէ ալ օգուտ կ՚ըլլար ։ Անոնք շարունակ ծովը կը մտնէին . մանր տղոցմէ շատերը դեռ ոտք չելած՝ կը լողային , այնպէս որ անոնց ընկղմելուն վտանգ մը չկար , քանի որ ցամաքէն շատ հեռու չէին ըլլար ։ Երբոր ծովէն կ՚ելլէին , առուի մը մէջ մտնելով կը լուացուէին , քանզի անուշ ջուրը աղի ջուրէն աւելի կը սիրէին ։

## ԿՈՒՌՔԵՐՆԻՆ

Արդէն գիտէք որ Թահիթեցիք կուռք կը պաշտէին ։ Աս կուռքերէն ոմանք քարեղէն էին ; բայց շատերը փայտեղէն , կամ գագաօյի ընկուզին վրայի թելերովը շինուած չուանէ , որն որ Չինէրը կ՚անուանէին ։ Քանի մը տեսակ ձուկեր ու թռչուններ ալ կը պաշտէին , ու զանոնք չէին մեռցըներ ։ Ամէնը մէկէն 100էն աւելի կուռք կար , որոնց երկրպագութիւն կ՚ընէին Թահիթիի մէջ ։ Ժողովուրդը կը կարծէր թէ աստուածոց հո-

դին կուռքերուն մէջ կը բնակի. և զա-
նոնք իրենց պէս անգութ ու ագահ սե-
պելնուն համար՝ անոնց ընծաներ տա-
լով կը ջանային անոնց հաճոյանալ:

Հիմա մէկ օրինակով մը ցուցընեմ ձեզի՝ թէ Թահիթեցիք ինչ կերպով կը վարուէին իրենց կուռքերուն հետ: Անոնք ողջ խոզեր ու հաւեր կը պահէին Մարաէ կոչուած տեղուանքը, և ան կենդանիները սուրբ կ'անուանէին: Անգամ մը ճանապարհորդին մէկը ուզեց որ սուրբ հաւերէն քանի մը հատ ծախու առնէ, քանզի ուրիշ չէր գտեր: Ուղղի քերան Մարաէին քուրմը ծախել չուզեց, բայց ետքը տեսնելով որ անոնց փոխարէն աղուոր հայելիներ ու դանակներ պիտի առնէ, կուռքին քովը գնաց, ու ըսաւ. «Ո՛վ իմ Աստուածս, հոս տեղ քանի մը աղուոր բաներ կան՝ այսինքն դանակներ, մկրատներ, հայելիներ, գուցէ մեր երկուքին ունեցած հաւերէն մէկ քանին տալով զանոնք առնեմ, քանզի անոնք մեզի օգտակար բաներ պիտի ըլլան": Անտանենք քիչ մը սպասեց, ձևացընելով թէ կուռքէն պատասխան պիտի առնէր, ու ետքը ըսաւ որ կուռքը հաճութիւն

տուաւ , և քանի մը տղաքներ ու շաւ-
ներ հաւերուն ետևէն ինկան ու բռնեցին
զանոնք ճանապարհորդին համար ։

Բնաւ չէին կարծեր՝ որ իրենց աստուած-
ները մեղքի համար բարկանան , այլ կը
խորհէին թէ միշտ կրնան զանոնք շողո-
քորթել և իրենց տուած ընծաներովը
անոնց հաճելի երևնալ ։ Աղօթք ըրած
ատեննին սովորութիւն ունէին մէկ ծնկան
վրայ կենալ , ու իրենց աղօթքը ըսել
երգելու մը պէս ։ Անոնց աղօթքը ասանկ
խօսքերով էր . "Տայէ քեզի խոզեր ու
պտուղներ բերի . ուրեմն ինծի բարերա-
րութիւն ըրէ , և զիս մի թողուր որ
ջրասոյզ ըլլամ , և իմ թշնամիներուս
վրայ յաղթութիւն տուր ինծի" ։

Որչափ տարբեր է մեր Աստուածը ա-
նոնց աստուածներէն , որ մեղքը կ'ատէ ,
և մեր տուած ընծաները քանի տեղ չը-
դներ ։ Մեր աղօթքը բնաւ անոր առջևը
լսելի պիտի չըլլար , թէ որ մեր մեղքերուն
անէծքը՝ Յիսուս կրած չըլլար . ու հիմա
ալ մեր խնդրուածքը պիտի չընդունի ,
թէ որ անոր առջևը Յիսուսին անունովը
չներկայանանք , ու անոր սիրոյն համար
չնորհք չխնդրենք ։ Ասոր համար Դաւիթ

քսաւ . «Ընծեղութիւնով ձեռքերս պիտի լուամ ; ու քու սեղանիդ չորս կողմը պիտի պտըտիմ՝ ով Տէր»: (Սաղմ . իզ : 6 :) Նաև Յովհաննէս կ'ըսէ . «Թէ որ մէկը մեղք գործելու ըլլայ , Հօրը քով բարեխօս ունինք Յիսուս Քրիստոս ար-դարը . և անիկայ մեր մեղքերուն քա-ւութիւնն է» , կամ զոհը ; (Ա Յովհ . Բ . 2 :)

Բայց աս մեհեաններուն մէջ եղած գործքերուն ամենէն սոսկալին՝ մարդազոհ մատուցանելն էր : Ժողովուրդը կը խոր-հէր թէ Օր․ պատերազմի չաստուածը՝ ուրիշ ամէն զոհերէ աւելի ասիկայ կը սիրէր . ուստի երբոր մեծ բանի մը ձեռք զարնելու ըլլային , սովորութիւն ունէին մարդիկ զոհելու : Գուցէ պիտի հարցընէ ընթերցողը՝ թէ ինչ մարդ էր զոհածնին : Երբոր քուրմը մարդազոհ մը ուզէր , սովորաբար Թագաւորին լուր կը խրկէր . ետքը Թագաւորն ալ իր իշխաններէն մէ-կուն պզտիկ քար մը կը խրկէր իբրև մէկ նշան մը՝ թէ անանկ զոհ մը պէտք է որ պատրաստէ : Թէ որ իշխանը ան քարը քովը պահէր , անատենը Թագաւորը կը գիտնար թէ անիկայ իր ուզածը պիտի ընէ :

Այլ հիմա ան իշխանը զո՞վ պիտի որոշեր գահի համար : Երբեմն անոր սեղանը նստած հիւրը՝ որ իր տանը մէջ հաց կ'ուտէր : Խեղճին գլխուն զարնելով՝ նոյն րոպէին կը սպաննէին , և գագաթի ծառին տերևներէն շինուած կողովի մը մէջ դնելով մեհեանը կը տանէին : Անիկայ դեռ կուռքին չմատուցուած՝ քահանան անոր աչքին մէկը կը հանէր , ու տերևի մը վրայ դնելով թագաւորին կը մատուցանէր . ան ալ բերանը կը բանար , զանիկայ ուտելու պէս կը ձևացընէր , ու ետքը քուրմին կը դարձընէր :

Ասկէ ետքը մարմինը մեհեանին մօտ տեղուանքը ծառէ մը կը կախէին . երբոր անիկայ բոլորովին սպառէր , ոսկորները կը թաղէին սուրբ գաւիթին մէջ , որ Գողգոթային պէս անիկայ ալ Սուրբ Աստուծոյն աչքերուն խիստ ատելի տեղ մըն էր :

Թէ որ ընտանիքի մը մէջէ մէկ անձ մը զոհ մատուցուէր , ան ընտանիքին միւս մարդիկները անոր մահուանը բաժանորդ ըլլալու կողմէ մեծ վտանգի մէջ կ'ըլլային . քանզի հասարակօրէն նոյն ընտանիքին մարդիկը զոհ ըլլալու կ'ընտ-

բուէին, մինչև անոնց բոլորովին հատնիլը ։

Կէս գիշերուն երբոր սրբազան Թմբուկը կը զարնէին, որ էր նշան մարդազոհ մը ուզուելուն, խեղճ մը ողորմելի հոգիներ լեռները կը փախչէին, ու երկրին խոռոչներուն և քարայրներուն մէջ կը պահուըտէին ։

Զարմանալի բան չէ որ՝ ոմանք իրենց անգութ ընկերներուն հետ կենցաղավարելէն բոլորովին հրաժարուելով, առանձնութեամբ լեռներուն մէջ թափառական կը պտըտէին, և գրեթէ անտառի անասուններու պէս վայրենի ու անզգայ եղեր էին ։

Մահը խիստ ահարկու բան մըն էր Թահիթեցւոց, քանզի գերեզմանէն անդին քաջայատ յոյս մը չունէին ։ Անոնք կը կարծէին թէ իրենց մեռած ատենը՝ հոգինին իրենց անգութ աստուածոց քովը կ՚երթայ, որոնք իրարու ետև երեք անգամ կ՚ուտեն. ու ետքը ան հոգիները անասուններու կամ թռչուններու, և կամ մարդոց ներսիդին մտնելով՝ նորէն կ՚ապրին երկրիս վրայ ։

Երբեմն աս խեղճ մարդիկը մեռնելու ատեննին՝ իրենց վրան պառկած փախաթ-

նուն ծայրը նայելով կը կանչէին . «Ո՛Հ ,
Հոգւոյս համար սպասող ոգիները կայ-
ներ են — ո՛Հ , պաշտպանեցէք իմ հո-
գիս , երբոր մարմինէս ելլէ — ո՛Հ , ա-
զատեցէք զանիկայ ատոնցմէ» :

Աս ձայները մրչափ տարբեր էին մեռ-
նելու վրայ եղող քրիստոնէից զաւակնե-
րուն ձայներէն , որոնք քաղցրաժպիտ ե-
րեսով կը կանչէին . «Ահա՛ հրեշտակներ
կը տեսնեմ , որ կու գան զիս առնելու .
Տէր Յիսուս , կու գամ , կու գամ» :

Երբոր մարդ մը մեռնէր , անոր բա-
րեկամները սովորութիւն ունէին տեսակ
մը ձուկի ակռաներով իրենց մարմինները
ճեղքռտել , մինչև որ բոլորովին արուն-
լուայ կ'ըլլային . և երբեմն ալ բիրերով
ու քարերով կը ծեծկուէին երկու երեք
օր , մինչև որ անոնցմէ ոմանք կը մեռ-
նէին : Մարդ կը սոսկար ասանկ մէկ
կռուի մը 'ի գնոյն կենալու , և աս կը-
ռուողներուն մոլեգնաբար ոռնալը լսելու :

Երբոր քրիստոնեայ մը իր բարեպաշտ
ազգականներէն կը զրկուի , կրնայ աս
երգը ըսել .

«Մահուան գալը ինչո՞ւ ցաւինք ,
Կամ ձայնէն սարսափինք .

Փրկչէն եկած մէկ ձայն մըն է ,
Որ մեզ իր քովը առնէ" :

## ԹԱՀԻԹԵՑԻՈՑ ԲՆԱՒՈՐՈՒԹԻՒՆԸ

Արդէն բաւականապէս տեղեկացած էք աս ժողովուրդին ստախօս , ագահ , գող և մարդասպան ըլլալուն վրայով :

Արդարև անոնք զուարթաբարոյ և հանդարտ էին , երբոր իրենց հաճոյիցը դէմ բան մը չպատահէր . բայց զանազան կողմանէ անասուններու կը նմանէին , և ուրիշ կողմէ ալ դևերու :

Անոնք անասուններու նման էին՝ ուտել խմել և դատարկակեցութիւն սիրելնուն կողմանէ . իսկ սրտի կարծրութեան կողմանէ՝ դևերու կը նմանէին : Իրենց ծերացած ծնողացը և հիւանդ բարեկամացը հետ բարբարոսական անգթութեամբ կը վարուէին : Հիւանդի մը ազգականները երբոր անոր խնամք ընելէն ձանձրանային , հասարակօրէն պզտիկ հիւղ մը կը շինէին անոր համար , և առջի բերան զանիկայ կը կերակրէին , բայց շատ անգամ կը պատահէր՝ որ ետքէն զանիկայ երեսի վրայ կը ձգէին որ անօթութենէ մեռնի : Եր-

քեռին ալ հիւանդին ազգականները ժող֊վուելով իրենց տեղերը անոր վրայ կը նստէին, որ տեսնեն թէ ով առաջ ա֊նոր պիտի խոթէ անցընէ :

Հիմա հիւանդի մը սպաննուելուն դի֊պուածը ստորագրեմ : Աս հիւանդը իր մէկ բարեկամին քովը կը կենար . բայց ան ազգականը հիւանդը նայելէն ձանձրա֊նալով, օր մը գնաց՝ ու ծովեզերքին մօտ փոս մը փորեց, ետքը դարձաւ, և ա֊ռաջարկեց որ զանիկայ ջուրը մտնելու տանի : Հիւանդը հաճութիւն տուաւ աս բանիս . ուստի զանիկայ տախտակի մը վրայ դնելով՝ երկու մարդիկ առին ծովեզերքը տարին զանիկայ . բայց երբոր փոսին կը մօտենային, հիւանդը կասկածի երթալով՝ տախտակին վրայէն վար ցատ֊կեց, ու փախչելու արտորաց . բայց ա֊նոր ընկերը քար մը զարկաւ անոր, ու կայնեցուց զանիկայ, ու ետքը փոսին մէջը հրելով ողջ ողջ թաղեց : Ուրիշ մը հեռուն ծառակրի մը մէջ մէկ քանի կը֊նիկներ ասոր աղաղակները լսեցին, բայց մէկը չեկաւ զանիկայ ազատելու, ո՛չ ալ աս պատմութիւնը լսած ատեննին վշտա֊ցան :

Թէ որ Թուահիթեցիք իրենց բարեկամ-ներուն հետ այս կերպով կը վարուէին, հապա իրենց թշնամիներուն ինչ անգթութիւն չէին ըներ: Մարգուս երեակայածէն աւելի սոսկալի էր անոնց ըրած անգթութիւնը: Պատերազմի մէջ բռնած գերիներնին ոտքերնուն տակը առնելով կը կոխկռտէին, ու այսպէս կը կանչէին. «Թէ որ դուք յաղթէիք՝ այս կերպով պիտի վարուէիք մեզի հետ», ու ետքը անոնց մարմինները առանց թաղելու կը թողուէին, շուներուն ու թռչուններուն կերակուր ըլլալու: Երբեմն թշնամիին մարմնոյն մէջտեղէն ծակ մը կը բանային, և զանիկայ մեռցընողը գլուխը ան ծակէն անցընելով՝ քիչ մը ատեն Թիբութայի (ցփսիի) պէս կը հագնէր: Պատերազմը լմննալէն ետև յաղթողները իրենց թըշնամեացը բոլոր կնիկներն ու տղաքները ընաջինջ կ'ընէին, և իրենց մանր տղոցն ալ կը պատուիրէին որ սպաննեն ան պըզտիկ մանկտիքը, որոնց հետ խաղալու պիտի յօժարէին: Երբեմն յաղթողը իր թշնամիներուն տղոցը պարանոցը չուան կապելով՝ զանոնք կը խեղդէր, կամ համբիչի հատերու պէս իր նիզակին վրայ կը

շարէր զանոնք ։ Աստուած իր խօսքին մէջ ըսած է թէ՝ մարդոց ոտքը արիւն թափելու պատրաստ է ։ Ուրեմն աս խօսքը ճշմարիտ չէ՞ ։

Քարոզիչները ան տեղը գացին աս ժողովուրդին քարացեալ սրտերը կակղացընելու՝ Աստուծոյ Որդւոյն սիրոյն վրայ խօսելով ։ Աս առիւծներն ու վագրերը Աստուծոյ Հոգւովը կրնար գառներու և աղաւնիներու դառնալ ։ Ուստի քարոզիչները անդադար անոնց համար աղօթք կ'ընէին , և անոնց՝ աղէկ ու շիտակ ճամբան կը սորվեցընէին , յուսալով որ Աստուած վերջապէս անոնց կատարեալ զըղջում պիտի տայ իրենց մեղացը համար ։

## ԳԼՈՒԽ Ե

### Գայլերու մէջ ոչխարներ ։

Հիմա պիտի շարունակենք քարոզիչներուն պատմութիւնը , որոնք նաւուն Թահիթիէն մեկնած օրը ապշած կընայէին անոր վրայ արտասուալից աչօք ,

մինչև որ ալ իրենց տէրութենէն աներեւութացաւ :

Ըն տանինը իմացան որ խիստ վտանգաւոր վիճակի մէջ են, ան չար մարդոցը մէջ ըլլալովնին, որոնց աչքը իրենց ամէն ունեցածնին վրայ էր, և որոնց ձեռքը ամէն անգամ՝ արիւնով աղտոտուած. այսու ամենայնիւ իրենք կարող էին Աստուծմէ օգնութիւն խնդրելու : Ուստի օր մը որոշեցին՝ ծոմապահութեան և աղօթքի համար. և ան օրը իրեք անգամ ժողվուեցան մէկտեղ աղօթք ընելու, ու երկու անգամ ալ եղբայրներէն երկուքին տուած քարոզները լսելու : Նաև միաբանութեամբ հաճութիւն տուին՝ որ ամիսը անգամ մը հեթանոսաց դարձի գալուն համար աղօթքի ժողով մը հաստատեն, ճիշդ ան նոյն ատենը՝ որ իրենց բարեկամները Անգղիոյ մէջ զանազան տեղուանքը աղօթք մատուցանելու համար կը ժողվուէին :

Նաև թէպէտ ասոնք Աստուծոյ վստահացած էին, սակայն վայելուչ դատեցին որ ձեռքերնէն եկածին չափ զիրենք պաշտպանելու հոգ տանին : Եղբայրներէն երկուքը բոլոր գիշերը կը հսկէին տանը

դուրսը , և շատ անգամ մէկը որոշուած էր ցորեկը պաշտպանութիւն ընելու ։

Նաւուն մեկնելէն օր մը առջը՝ տանը պաշտպանութիւն ընող եղբօրը ականջին ա-նանկ դպաւ , որ Իտալացին եղբայրներուն ու-նեցած կապ կարատեկին շատութեանը վը-րայով կը խօսէր կողքին բնակող ժողովուր-դին հետ . և ուրիշ խօսքերու մէջ աս ալ լսեր էր որ՝ ըսած էր թէ Կիրակի օրը ա-ղէկ պատեհութիւն մը պիտի ըլլար զա-նոնք վերցընելու . որովհետև ան օրը եղբայրները մէկտեղ աղօթք ընելու ե-տևէ պիտի ըլլային ։ Իտալացին մտքէն չանցաւ թէ պաշտպանը իր խօսակցու-թիւնը կը հասկընար ։ Ան ալ անմիջա-պէս աս լուրը իր բարեկամներուն տուաւ , որոնք շուտով տունէն դուրս ելան ու-զեցին տեղացիները ։ Իտալացին աս բանիս վրայ խռովեցաւ , և պատճառը հար-ցուց ։ Եղբօր իր ըսածը իրեն յիշեցու-ցին , անիկայ ուրացաւ , և Շուէտցի Պետրոսը խրկեց որ հասկըցընէ անոնց թէ սխալ հասկցած են , պատճառելով թէ՝ ինքը Թէահիթիի քանի մը չար մար-դոցը ունեցած գաղափարին վրայով կը խօսէր ։ Աս չքմեղութիւնը հաւանակա-

նոքար սուտ էր , այսու ամէնայնիւ քա- ղաքիչները յարմար դատեցին որ իրաւք տեղ կլլեն , և Խաչայրին հետ սովորական յարգութեամբ վարուին ։ Ի՛նչ և իցէ՝ առ- ջինէն աւելի արթնութիւն ըրին հետեւեալ օրը՝ որ Կիրակի էր , և Տէրոջը ընթրիքին մատակարարութիւնը չկատարեցին , թէ և միտք ունէին ան օրը հաղորդուելու ։

Երեք շաբաթի չափ ժամանակ անցնե- լէն ետև՝ մէկ խիստ տարօրինակ կերպով մը կողոպտուեցան ։ Մէկ առտու մը ե- լան նայեցան որ երկաթագործին խանու- թէն խիստ շատ բաներ կորսուեր էր , նաև խանութին յատակէն ծակ մը բա- ցուած էր ։ Շուտով իմացան որ գողը անկէ մտեր էր . ա՛ս ծակը նապաստակաց որջին կը նմանէր՝ ու գուբբէն ալ ելնելու տեղ մը ունէր ։ Եւ աղէկ մը նայեցան՝ որ ան ծակը մէկ գիշերուան մէջ կարելի չէր փորել ձեռքերով , որ բրիչի տեղ կը գործածէին երկրացիք , և զարմացան՝ թէ ի՛նչպէս եղեր է որ իրենց պահապանը չէ տեսեր գողին ցորեկով փորելը ։ Ըն- տանը պահապանին միտքը եկաւ՝ թէ անգամ մը աչքին զարկեր էր ան ծակը , և հին բան մը տեսեր էր . բայց կարծեր

էր թէ խոզ մը կծկտեր պառկեր է . և հիմա՝ ալ կասկած չմնաց որ ան կարծուած խոզը գողն էր ։ Պողին աս չար հնարքին վրայ ամէնքն ալ մեծապէս զարմացան ։ Աս դիպուածիս վրայով կղզւոյն ան կողմի իշխանին մէկուն խօսելով՝ գողցուած բաները ետ բերուեցան ։

Զուր տեղը կը ջանային քարոզիչները քաղցրութեամբ համոզել աս վայրենի ժողովուրդը . քանզի գողերը ձեռք անցուցած ատեններին բնաւ չպատժելնուն համար , երկչոտ մարդիկ սեպուած էին . թէպէտ և իրենց ներողամտութեանը պատճառը աս էր՝ որ իրենք կը յիշէին թէ Աւետարանի պաշտօնեաններ են , և իրենց պաշտօնն էր փրկել և ոչ թէ դատել ։

Կղզեցւոց շատերը սոսկալի հիւանդութիւններով կը նեղուէին . ուստի քարոզիչները իրենց տանը մօտ տեղ մը պատրաստեցին իբրև հիւանդանոց , և խոստացան թէ՝ ով որ հոն գայ , անոր խընամք պիտի տանին . սակայն ան նոյն պատճառները՝ որոնք կ՚արգիլեն մարդիկը Յիսուսին՝ ան մեծ բժշկին դիմելէն , հիւանդ կղզեցւոց մեծ մասին արգելք եղան աս մարդասիրական առաջարկութիւնը

ընդունելէն ։ Անոնցմէ մէկ քանիները վախցան գալու. ուրիշներն ալ դեղ առնել չէին ուզեր, անոնց լեղիութեանը համար, կամ իրեք չորս օրէն աւելի հոն մնալ հարկաւորելուն համար, թէպէտ և այնչափ ժամանակը բաւական չէր բժշկութիւն ստանալու համար ։

Ի վերայ այսր ամենայնի հիւանդանոց մը խիստ հարկաւոր կ'երևնար. քանզի ցաւալի բան էր տեսնել՝ թէ կղզեցիք ինչ յիմարութեամբ կը վարուէին հիւանդ մարդոց հետ, ինչպէս ալ հետագայ կարճառօտ պատմութենէն պիտի իմացուի ։

Քարոզիչները կղզեցւոց տղաքները սպասաւորներու տեղ կը գործածէին ։ Անոնցմէ մէկը երբոր հացածառի պտուղ կը ժողվէր, ծառէն վար իյնալով՝ թևը կոտրեցաւ ։ Պ. Քիլօտ կոտրած ոսկորը տեղը դրաւ. բայց հինգ օրէն ետև տղուն անզգուշութեամբը նորէն թևը կոտրեցաւ. Պ. Քիլօտ ուզեց որ դարձեալ տեղը դնէ, բայց չկրցաւ տղուն սաստիկ տագնապին առջին առնել ։ Տղուն հայրը կամակորութեամբ տղան տունը տարաւ՝ ըսելով. «Ես ալ տեղացի բժիշկ մը պիտի կանչեմ, ու մեր աստուծոյն.

աղաչեմ , ու տղան շուտով պիտի ա-ռողջանայ" :

Հետեւեալ օրը Պ. Ներքէյ և Պ. Սմիթ տղուն այցելութեան գացին , բայց իրենց ըսուեցաւ որ առջի գիշերը մեռեր է . և իմացան թէ տղուն հայրը գանձ-կայ գետափին վազուկ պաղ ջրին մէջ խո-թեր է՝ տաքութիւնը վրան եկած ատենը , և թէ տղան ալ անմիջապէս մեռեր է : Հայրը արտասուալից կ'ողբար տղուն տունը բերելուն համար : Տղուն քովը դրուած էր մեծկակ լաթ մը՝ հօրը արիւ-նովը ներկուած , որ ձուկի ակռաներով հեղեղի պէս վազցուցած էր . և աս մի-ջոցիս ան լաթը փռուած էր՝ իբրև նշան հօրը տրտմութեանը :

Քարոզիչները ապշած կը նայէին մե-ռած տղուն վրայ , որ ծաղիկներով զար-դարուած պառկեր էր . աս միջոցիս յի-մար կղզեցիք քարոզիչներուն բոլորտիքը դիզուեցան , ու անոնց հանդերձներուն վրայ ապշած կը նայէին : Քարոզիչները ասիկայ պատեհութիւն մը սեպելով՝ յի-շեցուցին անոնց թէ մահը օր մըն ալ ի-րենց վրայ պիտի հասնի , և աս ալ ի-մացուցին՝ որ անատենը իրենց հոգիները

ան մի միայն ճշմարիտ Աստուծոյն առջևն պիտի ներկայանան , որ արդարներուն համար երջանկութեան տեղ մը պատրաստած է , և չարերուն համար թշուառութեան տեղ մը :

Երբոր աս բաները կը խօսէին , կղզեցիք ծիծաղելէն դադարեցան , և ան նոյն կէտին աս ըսուած բանին համար շուարած կ'երևնային :

Պ. Ըրքէյ՝ տղուն համար նստուկ մը շինեց , ու հետևեալ օրը զանիկայ անոր մէջը դրաւ : Նստուկին չորս ծայրէն չորս պզտիկ տղաք բռնած՝ գերեզմանը տարին , քարոզիչներէն ալ մէկ քանիները անոր ետևէն գացին : Կղզւոյն բնակիչներէն խուռն բազմութիւն ուշադրութեամբ կը նայէին՝ մեծապէս զարմանալով նստուկին վրայ , առաջուց ասանկ բան մը տեսած չըլլալնուն համար , և կ'ըսէին թէ՝ "Հաա գեղեցիկ նստուկ մըն է հանդերձ դնելու համար" :

Հայրը ըստ սովորութեան երկար ատենաբանութիւն մը ըրաւ տղուն գերեզմանին վրայ , ցուցընելով թէ որչափ օգտակար պիտի ըլլար՝ թէ որ ապրէր ; թէպէտ և շատ ճշմարիտ ըսած պիտի

ըլլար , թէ որ ըսէր՝ որչափ լոյս մէկը պիտի ըլլար :

Մեռելին ազգականները ձուկի ակռաներով նորէն գլուխնին պիտի ճեղքռտէին , բայց քարոզիչները չթողուցին :

Վերջապէս քարոզիչները որոշեցին որ՝ զիրենք կղզեցւոց ձեռքէն պաշտպանելու ետևէ չըլլան . քանզի թէ և քիչուոր ըլլալնուն համար դիւրին էր իրենց յաղթուիլը . սակայն կը զգային որ Աստուած կարող էր զիրենք ամէն վտանգներէ ազատ պահելու : Նաև որովհետև մտքերնին դրին՝ որ ուտելիքով ու հագուստով շատանան , երկաթագործին խանութն ու համբարանոցը բոլոր մէջի եղածներովը Ռոմարէին տուին , մինչև անգամ իրենց սեպհական կարասիներուն համար ալ ըսին՝ որ առնէ . բայց անիկայ առատասրտութեամբ չուզեց ընդունիլ : Ալ հիմա Ռոմարէին կ'իյնար՝ որ արգիլէ կղզեցիները տունը կողոպտելէն , և իր ծառաները դրուեցան գիշերները տանը պահպանութիւն ընելու . բայց ինչ կերպով պահպանելնին հիմա պիտի իմացընենք : Քարոզիչները կը յուսային որ՝ ալ իրենց բոլոր աշխարհային բաներէն ձեռք քաշելնին

կարող պիտի ըլլան աւելի ջերմեռանդութեամբ Տէրոջը ծառայելու , և աւելի փութով հոգ պիտի տանէին խեղճ հեթանոսաց հոգիներուն բարելաւութեանը :

Բոմարէ և Իտոխա երկուքնին ալ շատ կ'ուրախանային աս արտօնութիւնը իրենց շնորհուելուն համար՝ որ ամէն ուզածնին եղբայրներէն առնեն : Գիշեր ցորեկ սենեակէ սենեակ կը պտըտէին , և ամէն տեսածներնուն վրայ ագահ աչօք նայելով՝ շատ բաներ կ'առնէին կը տանէին :

Աս կողմէն բնակող մարդիկը յափշտակիչ Թռչուններու պէս՝ տանը բոլորտիքը կը սպասէին , և բան գողնալու համար խորամանկութեան հնարքներ կը հնարէին : Անոնց հնարքներէն մէկն էր՝ խիստ երկար գաւազանով մը դուրս առնել գողցուած բաները , և աս գաւազանը ցեցերուն մէջտեղէն ներս կը խոթէին , որոնցմով շինուած էր տանը պատերը . անանկ որ քարոզիչները ի՛նչ բանի համար որ կը վախնային՝ թէ պիտի գողցուի , զանիկայ իշխանի մը կու տային որ պահէ :

Գիշեր մը Գ. Հարրիս գողերուն ձայնէն արթնցաւ , որոնք իր սենեակին մէջէն սնտուկ մը գողնալու վրայ էին՝ ա-

նոր արթննալը տեսնելնուն պէս շուտ մը դուրս փախան, հետերնին շատ գրքեր ու հանդերձներ առնելով :

Ուրիշ գիշեր մըն ալ Պ. Էյր արթընցաւ, և որովհետև միշտ իր սենեակին մէջ ճրագը վառած կը պահէր, անոր լուսովը տեսաւ որ՝ իր դրանը առջևի միջնորմին մէջ տեղացիներէն երկու մարդ կ'անցնէին, որոնք Սոմարէին կողմէն պահապան դրուածներն էին. և անոնց հարցուց թէ ի՞նչ կ'ուզեն, անոնցմէ մէկը խորամանկութեամբ պատասխանեց ու ըսաւ թէ՝ «Ներսուէն գողերու ձայն եկաւ ականջիս, անոր համար ելեր կը փնտռեմ»:

Օր մը Պ. Պրումհօլին 2 սնտուկը գողցուեցաւ իր սենեակէն, որոնց մէկուն մէջը վիրաբուժութեան հարկաւոր եղած սրուակները կային, ու միւսին մէջը անդամահատութեան ամէն տեսակ գործիքները : Պ. Պրումհօլ խիստ զարմացաւ, տեսնելով որ հետևեալ առտուն Խոջա ետ բերաւ սնտուկները, 2 հատ պզտիկ ասեղներէ ի զատ բան մը պակաս չըլլալով. և քիչ ժամանակէ ետև անոնք ալ ետ բերաւ : Քարոզիչները կը զարմանային՝ թէ ան բաները ի՞նչպէս եղեր

է որ Իտալիային ձեռքն է անցեր , և նոյն ատենը կը կարծէին՝ թէ իր արդարասէր բնաւորութենէն է որ զանոնք ետ դարձուց : Քանի մը ամիսէն ետև գաղտուկ լուր առին՝ որ Իտալիան իր ծառաներուն կը պատուիրէ եղեր որ բան գողնան իրեն բերեն . քանզի տեսան որ երկու ամիս առաջ իրենց տունէն կորսուած կացին մը Իտալիային քովն էր :

Աս կնիկը ստէպ տեսութեան կու գար քարոզիչներուն , և Պ . Էյրին կնիկը իրեն մասնաւոր բարեկամ ընտրեր էր . ուստի շատ անգամ անոր հետ թէյ կը խմէր , և զանիկայ շատ կը յարգէր , և կը խոստանար որ մէկը պիտի չգտնուէ անոր : Սակայն ինքը ոչ միայն շարունակ գողութեան ետևէ էր , այլ նաև նոյն ամառը իր նորածին մանուկը մեռցուց : Անիկայ կ՚ամչնար , երբոր ետքը քարոզիչներուն այցելութիւն ընելու եկաւ . քանզի գիտէր որ անոնք իր վարմունքէն կը զզուէին : Ի՛նչ և իցէ , շուտ մը իր մտերմութիւնը նորոգելով՝ գնաց 2 խոզ ու խել մը պտուղներ ընծայ բերաւ Պ . Էյրին և անոր տիկնոջը : Անոնք ալ սիրով ընդունեցին զինքն ու իր բերած ըն-

ծառ . քանզի բոլոր եղբայրները միաբերան որոշեցին՝ թէ պարապ բան է հեթանոսաց դէմ սրդողիլը իրենց մեղքերուն համար : Պօղոս առաքեալ կ'ըսէ թէ՝ "Ի՞նչ պէտք է ինծի դուրսինները դատել", այսինքն՝ Հեթանոսները . դուրսինները Աստուած կը դատէ" : (Ա Կորնթ . Ե . 12 , 13 :)

Ասոր մէջոցին Օթում իրենց հանապազօրեայ այցելուն էր , ինչպէս նաև Թէթուա մանկամարդ թագուհին : Անոնք սովոր էին ստէպ ստէպ եղբայրներուն տեսութեանը գալ , ու միշտ մարդու շալակ կը հեծնէին : Քարոզիչները կը զարմանային անոնց վրայ՝ թէ ինչպէս համեստ և ջնորհքով մարդոց շալակը կը հեծնէին , և զանոնք շալկողներուն վրայ ալ կը զարմանային՝ թէ ինչպէս երագընթաց քալուածքով սովորաբար կռնակնին կը կրէին թագաւորական ընտանիքները : Օթում միշտ մուրացկանութիւն ընելու վրայ էր առջի սովորութեանը պէս , և աս պատճառաւ քարոզիչները խիստ ձանձրացեր էին , քանզի հիմա անոնց հարկաւոր չեղած բան շատ քիչ մնացած էր , որ կրնային տալ :

Տեղացիք շարունակ ձանձրութիւն կու-տային եղբայրներուն, մանաւանդ կէս օրը ամէնքնին մէկտեղ ճաշ ըրած ատեննին: Բազմութիւնը կը խռնէր 'ի զննելն անոնց կերակուր ուտելուն, և դրեթէ կերակուրը անոնց բերնէն յափշտակել կ'ուզէին: Քարոզիչներուն բոլոր սպասաւորներն ալ իրենց տէրերուն հետ ճաշի կը նստէին, ու անոնցմէ շատ կերակուր կ'ուտէին: Գուցէ մէկը հարցընէ՝ թէ եղբայրները ինչու համար այսչափ սպասաւորներ կը պահէին. անիկայ թող գիտնայ որ աս սպասաւորները առանց հրամանի ինքնիրեննին կու գային: Կը թախանձէին եղբայրներուն օգնութիւն ընելու՝ անոնց կերակուր եփելուն, և անկէ ետքը կը մնային ճաշելու՝ առանց հրաւիրուելու. և սովորաբար աս միջոցիս մասնաւոր պատեհութիւններ կը գտնէին գողութիւն ընելու: Քարոզիչները վերջապէս որոշեցին որ ալ այնուհետև մէկտեղ ճաշ չընեն, հապա զատ զատ երկու իրեք հոգի մէկտեղ իրենց սենեակներուն մէջ հացերնին ուտեն, և իրենց կերակուրնին գաղտուկ եփեն, ու ամէն մէկ սեղաննին մէյ մէկ տղու ծառայութիւնով

բաւականնան , թէ որ կարելի ըլլար միւս մարգիկները դուրս հանել :

Աս տարուան մէջ վէճ մը ծագեցաւ Ռոմարէին և Օթուին մէջտեղը . և Սանէմանէ ապստամբութիւն մը հանելուն համար՝ Ռոմարէ հրաման ըրաւ որ զանիկայ մեռցընեն : Իտխա՝ աս սպանութիւնը գլուխ տանելու համար հարկաւոր եղած հնարքը պատրաստեց : Սահմանուած օրը առտուանց Իտխա իր մէկ ծառային հետ Պ. Էյրին ու անոր տիկնոջը հետ նախաճաշիկ ըրաւ , և անոնք երկուքնին սովորականին պէս ուրախ կ'երեւնային : Նախաճաշիկէն ետև տունէն ելան գացին : Անատենը դաւաճանութիւնը ՚ի գործ դրուեցաւ : Իտխային ծառան ծերունի Սանէմանէին ետևէն ինկաւ բլուրն ՚ի վար , երբոր անիկայ իր ճամբան կ'երթար դէպ ՚ի Ռարէ , ու անոր քովը հասնելով՝ քիչ մը ատեն խօսակցութիւն ընելէն ետև , գլխուն քար մը զարկաւ , ու զանիկայ սպաննեց : Այսպէս մեռաւ չարագործ ծեր քուրմը , որ երկար ժամանակ ժողովուրդը խաբեր էր թէ ինքը կարող է անիծել ու օրհնել՝ ով որ ուզէ , սակայն իր աշխատան

գլուխը չկրցաւ պաշտպանել կենդանի Աստուծոյն անէծքէն ։

## ԳԼՈՒԽ Ջ.

### Աղջկայ անհաւատարմութիւնը կը յայտնուի ։

Քարոզիչները որչափ անգամ որ կը տեսնէին Օթուն , այնչափ ալ նորէնոր չարութիւն կը գտնէին անոր վրայ ։ Ընի-կայ իրեն ցուցուած բոլոր բարիքներուն համար երախտագիտութիւն մը չէր զգար ։ Հիմա մէկ քանի օրինակներով ցուցընեմ ձեզի անոր ապերախտութիւնը՝ զանազան թեթև պարագաներու մէջ ։

Վերջի պատերազմին ժամանակը Օ-թու իր ծառաները խրկեց՝ որ երթան Պ. Պիքնէլին մէկ մատակ խոզը 5 ձագերովը մէկտեղ բռնեն իրեն բերեն . Պ. Պիքնէլ աս պահանջմանս դէմ չեկեցաւ ։ Քարո-զիչները Օթուին աս վարմունքին համար գանգատ ըրին Իտիային . և հետևեալ օրը տեսնելով որ խոզին ձագերը իրենց

տանը բոլորտիքը կը պտըտէին՝ ուրախացան , թէ և Իտիա անոնց բան մը չէր խօսեր ասոր վրայով :

Օր մը Թագաւորը Պ. Պրումհօլին սենեակը եկաւ , և ուզեց տեսնել ան պատկերազարդ Աստուածաշունչը՝ որուն վրայով իրեն խօսեր էին : Երբոր զանիկայ բացեր կը նայէր , Պ. Պրումհօլին ըսաւ որ՝ մէկ ուրիշ գիրք մըն ալ ցուցընէ . և քանի որ անիկայ բերելու վրայ էր , Թագաւորը գաղտուկ մը Աստուածաշունչէն Ադամ Եւային դրախտին մէջ ըլլալուն պատկերը կտրեց առաւ , ու ետքը Աստուածաշունչը ետ տուաւ , առանց բան մը ըսելու իր ըրածին վրայով :

Աս վարժունքիս վրայ քարոզիչները դեռ առատաբարտութեամբ կը վարուէին Օթուէին հետ :

Ուրբաթ օր մը՝ որ ամսագլուխ ալ էր , մէկ նաւ մը հասաւ Թահիթի կղզին . և քանի որ նաւը հոն խարսխած կը կենար , օր մը Օթու եկաւ Պ. Պրումհօլին , ու անոր ձեռքը իրեք մարգարիտ տալով՝ խնդրեց որ անոնք պահէ ու նաւէն մէկ ատրճանակ մը առնէ իրեն համար : Եղբայրները աս բանը լսելնուն

պէս՝ նաւապետին գիր մը գրեցին, խընդ-րելով որ շնորհք ընէ իրենց մէկ հրացան մը ծախէ Օթուին ընծայելու համար. քանզի կը վախնային որ չըլլայ թէ իրենց հետ աւրուի, թէ որ մէկ հատ մը չըս-տանայ: ՝Նոյն ատենը խորհուրդ ըրին մէջերնին, որ եթէ կարենան հրացանը ձեռք բերել, ան մարդարիտները Օ-թուին եւ տան՝ անոր խնացընելու հա-մար թէ իրենք շահի համար ծախած չեն:

՝Նաւապետը յօժար սրտիւ հրացանը եղբայրներուն ընծայեց, անոնք ալ Օ-թուին տուին զանիկայ ու մարդարիտնե-րը: Եղբայրները խիստ ուրախացան՝ երբոր տեսան որ Օթու իր ձօրը Խափային ընծայեց հրացանը, եւ անոր հետ սովո-րականէն աւելի քաղցրութեամբ խօսե-ցաւ. բայց ետքը իր ընդհանուր մար-մնուկքին մէջ տարբերութիւն մը չտե-սան:

Ըհակի քան էր տեսնել թէ Օթու թէ եւ թագաւոր մըն էր, բայց բոլորովին իր կրիցը բռնութեանը գերի եղած էր:

Օր մը երբոր Օթու խիստ շատ խմեր էր Ըվա կոչուած գինովցընող ըմպելիքը, որն որ տեղացիք սովորաբար կը խմէին,

ու իր տանը մէջ կը քնանար , դուրսէն մարդու մը աղաղակը լսելով՝ անմիջապէս հրաման ըրաւ իր ծառաներուն որ զանիկայ մեռցընեն : Մարդիկ երբոր իրենց կիրքերը չեն կրնար զսպել , ի՛նչ աստիճանի չարութեան ձեռք կը զարնեն : Որչափ մարդիկ Օթուին պէս բարկութեան կ՚ելլեն , բայց չեն համարձակիր նոյն բարբարոսական հրամանը տալու : Աղաղակ հանող երիտասարդը վազեց Պ. Պրումհօլին քովը պաշտպանութիւն գըտնելու . Օթու ալ ան մարդուն որու քով ապաստանիլը իմանալով , խորհեցաւ որ աս բանս յարմար գիպողութիւն մըն է Պ. Պրումհօլէն քէն մը բան փրցընելու . ուստի մարդ խրկելով խընդրեց որ՝ 3 կանգուն ներկուած կտաւ տայ , փոխանակ 2 կանգուն ճերմակ կտաւին՝ որ առջի օրը իրեն խոստացեր էր : Քանի որ Պ. Պրումհօլ անոր ուզածը կը փնտռէր , Օթու ինքն ալ անձամբ ներկայացաւ դրանը առջին , ու ընծան պահանջեց : Պ. Պրումհօլ կտաւը անոր տալով խնդրեց որ խնայէ երիտասարդին կենացը : Օթու հաւանութիւն տուաւ , բայց խիստ խոժոռ դէմքով :

Աս դժնեայ բռնաւորը միշտ իր բոլորտիքը դիզուած խել մը շողոքորթներ ունէր, որոնք խորամանկութեամբ կը գովէին զանիկայ իրենց մէջը, բայց անանկ ձայնով մը որ խօսածնին ինքը լսէ: Թագաւորին և անոր վերաբերեալ բաներուն տրուած տիտղոսները խիստ անճոռնի էին: Անոր տունը՝ Երկինքի ամպեր կ'անուանէին, անոր մեծ ծառակուրը՝ ծիածան, մարդու շալակ հեծնելը՝ Թռչիլ, անոր առջևէն քաշուած ջահը՝ փայլակ, և մէկ թմբուկ մը՝ որ շատ անգամ իր զուարճութեանը համար կը զարնէին, որոտում: Այսպէս անիկայ որ իր վարմունքովը անասունի ու գէշի մը կը նմանէր, զինքը Աստուծոյ տեղը դրած էր:

Քարոզիչները խիստ տրտում էին, ժողովուրդին անհաւատութեան մէջ շարունակելուն համար: Երբոր Յիսուսին երկինքէն իջնելուն վրայով կը խօսէին տեղացւոց, անոնք երբեմն ասանկ կը պատասխանէին. „Թէ որ անիկայ ճշմարիտ ըլլար, Քուք նաւապետը և ուրիշներն ալ՝ որոնք Տուֆ կոչուած նաւէն առաջ հոս եկան, պիտի չխօսէի՞ն մեզի աս բանին վրայով": Քարոզիչները կը ջա-

տի ըլլայ իրենց մտիկ ընելու․ սակայն անոնց լեզուն սորվիլը խիստ դժուար կուգար իրենց․ քանզի գիրք չունէին որ իրենց օգնութիւն մը ըլլար, և ժողովուրդը անանկ շուտով կ'արտասանէին իրենց խօսքերը, որ դժուարաւ կրնար մէկը անոնց բերնէն խօսք մը քաղել ։ Այսու ամենայնիւ շարունակ ետևէն իյնալով՝ Աստուածաշունչին զանազան տեղերէն մէյմէկ քիչ բան թարգմանելու ձեռք զարկին, և այս թարգմանութիւնները իրարու ցուցուցին, իրենց շաբաթական ժողովը ըրած ատեննին ։

1800ին Փետրվար ամսուն մէջ՝ եղբայրները նախ որոշեցին որ մատուռ մը շինեն, ու տեղացիները հոն ժողվուելու հրաւիրեն՝ որ իրենց քարոզը մտիկ ընեն, և կը յուսային որ այս բանը շուտով գըլուխ պիտի տանին ։ Մինչև անատենը իրենց տանը մէկ սենեակը ժողովարան ըրած էին ։

Մարտի 5ին սկսեցին մատուռին փայտեղէն ցիցերը կամ սիւները կանգնել՝ պատերը շինելու համար ։ Այս շինութիւնը նշանաւոր ժամանակի մը մէջ սկսուեցաւ․ քանզի քարոզիչներուն թշա-

Հիթի կղզին հասնիլը լման երեք տարիէն օր մը պակաս էր եղեր ։ Եղբայրները՝ աս գործին մէջ վարձքով բանող կղզեցւոց Քրիստոսի վրայով ըրած ծաղրաբանութիւնները լսելով, և ամէն մէկ սիւնին վրայ անոր անունովը մէկ տեսակ մը ծաղրական նշաններ ընելնին տեսնելով՝ մեծապէս կը վշտանային ։ Այսու ամենայնիւ ջերմեռանդութեամբ կը յուսային՝ որ անկէ ետև ան սիւները վկայութիւն պիտի ըլլային աս խեղճուկ հեթանոսաց դարձի գալուն ։

Քիչ ժամանակէ ետև Ռօմարէն իր անխելքութիւնը ցուցուց՝ չեփած ձուկ մը խրկելով, որուն համար խնդիրք ըրեր էր որ մատուռին մէջը կախուի՝ իբրև Յիսուս Քրիստոսին մատուցուած ընծայ մը ։ Եղբայրներէն մէկը ձուկը առաւ ետ տարաւ Ռօմարէին, որ անոր իմացընէ թէ՝ իրենց Աստուծոյն սովորութիւնը չէ մէկէ մը կերակուր ընծայ ընդունիլ ։ Հապա ինքը ամենուն կերակուր կու տայ, և թէ ամէն մարդ պարտական է շնորհակալ ըլլալ՝ անկէ ընդունած բարիքներուն համար ։ Աս պատասխանիս վրայ Ռօմարէ քիչ մը դժուարած կ'երևնար,

բայց երեսէն՝ Հոգը չեղածի պէս ձեւա_ցընելով ըսաւ, «Շատ աղէկ» :

## ԳԼՈՒԽ Է:

### Հաճոյական զարմանք մը :

Աղջիկն շարունակ անհանգստութեան վիճակի մէջ էր : Եւ թէպէտ պատե_րազմ բացուած չէր, բայց ամէն օր կը թուէր թէ յանկարծ պիտի սկսուի : Յօ_մարէ խիստ բարկացած էր Մթեհուրուի բնակչացը դէմ. որովհետեւ անոնք Յա_րէի մէջ եղած տաճարէն Օրօի կուռքը գողցեր էին, որ պատերազմի աստուած էր, ու երկրին իրենց բնակած մասին մէջ պահեր էին : Անոնք աս բանը ըրեր էին, յուսալով որ Օրօին զօրութեամբը պիտի յաղթեն պատերազմին սկսուած ատենը. քանզի անոնք հաստատ կը հաւատային թէ՝ Օրօ չաստուածը երբեմն ան ծառի կոճղին մէջը կը մտնէր : Յօմարէ անմի_ջապէս իր բարկութիւնը չյայտնեց, քանզի կը յուսար որ շատ չանցած ան

կուռքը իրեն եռ պիտի դարձընեն ։ Ասկէ 'ի զատ հարկաւոր սեպեց մեծապէս յարգել իրեն Թշնամի եղողները ։ Օրինակի աղագաւ , երբոր Քէօհու ապստամբ իշխանը՝ որ Աթէհուրացւոց կողմը բռնած էր , Ապրիլի մէջ Մաթավայի կղզին տեսնելու գնաց , մեծ պատուով ընդունուեցաւ Պոմարէէն ։ Քէօհու բազմաթիւ ծառայութիւններով իր ծառաներուն հետ ընկերացած հոն հասաւ , երկու մարդազոհ հետը բերելով Օթուէին մատուցանելու ։ Աս միջոցիս Թագաւորը հեռու տեղ մը գտնուելով , մարդուն մէկը փունջ մը կարմիր փետուրներով զարդարուած անոր տեղը ներկայացաւ , ու Թագաւորի մը վայելուչ պատուով մեծարուեցաւ , և ամէն մարդ անոր առջևը իր կռնակը կըքանար ։ Պոմարէ խրճիթ մը շինել տուաւ Քէօհուէին համար , որ հոն բնակի քանի որ Մաթավայիի մէջ կենայ . և անոր կտաւներ ընծայեց , մինչև անգամ հրացան մըն ալ տուաւ ։ Քէօհու ալ Պոմարէին ընծաներ տուաւ ։ Սակայն թէ և անոնց խօսքերը կոգիէն կակուղ էին , բայց անոնց սրտին մէջ պատերազմ կար ։ Իսկ Պոմարէ չուզեց

պատերազմ սկսիլ, մինչև ան ծառայիքին դառնալը՝ որն որ Ինքը մօտակայ կղզի–ները խրկեր էր, մարգարիտներ ու մար–գաղոհներ բերելու համար:

Յունիսի վերջերը պատերազմը սկսուե–լու վրայ էր, երբոր աստուածային նախա–խնամութեամբ դիպուած մը անոր առջին առաւ: Եւ այս դիպուածը նաւու մը հոն հասնիլն էր: Ասիկայ վաճառականու–թեան կամ բալենայի որսորդութեան նաւ մը չէր, ինչպէս որ Պուֆ կոչուած նա–ւէն ետքը ատեն ատեն եկեր էին. Հապա պատերազմական նաւ մըն էր՝ որ Անգղիոյ Թագաւորին Թշնամիներուն վրայ յարձա–կելու համար ծովերու վրայ կը պտըտէր:

Աս նաւը Ռոբերց (Ծովակալին խող) կը կոչուէր, ու հոն խրկուած էր որ Ռոբթ Ճաքսընի բնակչացը համար խոզեր գնէ՝ աղուխտ չեննելու համար:

Նաւապետը Ռոբթ Ճաքսընի կառա–վարչէն նամակներ բերաւ եղբայրներուն, և Ռոմարէին, նաև ընծաներ ալ, որոնց մէջը մէկ աղւոր ծիրանեգոյն հանդերձ մը կար Ռոմարէին համար: Թէպէտ Ռոմարէ ընծաներ ընդունելուն համար կ'ուրախանար, բայց վախնալով որ չըլլայ

թէ Օթու թշնամանայ՝ իրեն ալ ընծաներ չտրուելուն համար , աղաչեց նաւապետին՝ որ Օթուին տայ ան ծիրանեգոյն հանդերձը ։ Նաւապետը հաճութիւն տուաւ աս բանին . բայց իր մարդոցը պատուիրեց որ ուրիշ մըն ալ չինեն Ռօմարէին համար ։

Ռօբբըրզ նաւը խիստ բերկրալի լուր մը բերաւ եղբայրներուն , ըսելով թէ՝ քանի մը օրէն նաւ մը պիտի գայ , որուն մէջ քարոզիչներ պիտի ըլլան Թահիթի կղզին մնալու համար ։

Իսկ քանի որ դեռ Ռօբբըրզ նաւը խաբըսխած կը կենար , ան բերկրառիթ նաւը հասաւ ։ Անիկայ կը կոչուէր Ռօյալ Ատմիրալ (Արքունի ծովակալ) , ու անոր մէջը 8 քարոզիչ կար ։ Աս նաւուն նաւապետը Կուլիէլմոս Ուիլսըն կը կոչուէր , ու առջի նաւուն հրամանատար Ուիլսըն նաւապետին քեռորդին էր ։

Հետեւեալ օրը նոր եկող եղբայրներէն ոմանք ցամաքը ելլելով՝ հոն եղող եղբայրներուն հետ կէս օրին և իրիկուան ճաշ ըրին , և գիշերը նաւը դարձան ։ Գուցէ աս եղբայրները առաջուց բնաւ մէկզմէկ տեսած չէին . բայց որչափ ու-

րախալի եղաւ ատ իրենց առջի տեսութիւնը ։ Աս նորեկները մարդասէր բարեկամներ գտան՝ պատրաստ իրենց օգնելու, թէ տեղացւոց լեզուն սորվեցընելու կողմէ, և թէ կրելու փորձութիւններուն զիրենք պատրաստելու կողմէ ․ և նոյն ատենը՝ երկար ժամանակէ 'ի վեր Թահիթիի մէջ բնակողները անպատմելի մեծ ուրախութիւն կը զգային՝ իրենց գործակից ընկերներուն գալստեանը համար, և Անգղիոյ մէջ եղող սիրելի բարեկամներնուն վրայով լուրեր առնելնուն համար ։ Աս նոր քարոզիչներուն գալէն 3 օր ետքը հրապարակական ժողով մը ըրին բացօթեայ տեղ մը՝ եղբայրներուն տանը մօտ, բոլոր եղբայրները հոն էին, և նորէն ան կղզին քարոզիչներ գալուն պատճառը Բոմարէին, Իտիային և Օթուին կ'իմացընէին ․ ետքը դարձան Բոմարէին հարցուցին՝ թէ արդեօք անոնց Թահիթիի մէջ մնալուն համար պիտի դժուարի ։ Պատասխանեց Բոմարէն, "Ո՛չ, ուրախ եմ անոնց գալուն վրայ, և ուրիշ ո՛վ որ կ'ուզէ թող գայ, ու հոս մնայ մինչև իր ձանձրանալը" ։

Ասկէ ետև Բոմարէ հարցուց բոլոր

եղբայրներուն՝ թէ իր պատերազմներուն մէջ իրեն օգնութիւն պիտի ընե՞ն ։ Անոնք ալ պատասխանեցին թէ՝ իրենք խաղաղասէր մարդիկ են , ու պատերազմի հետ բան չունին ։

Ետքը Ուիլսըն նաւապետը Ռօմարէին յիշեցուց Մաթալայի կողմը եղբայրներուն տրուած ըլլալը , և հարցուց թէ տակաւին անոնց ստացուա՞ծքն է ։ Ան ալ ըսաւ թէ՝ այո , անոնցն է , ու հարցուց թէ արդեօք եղբայրները կ՚ուզե՞ն որ տեղացիք անկէ դուրս ելլեն ։ Անոնք ալ պատասխանեցին ու ըսին . «Ո՛չ , մենք երկիրը մեր ստացուածքը ընել չենք ուզեր , հապա որ միայն թոյլտուութիւն ըլլայ մեզի հոն բնակելու» ։

Կ՚ուզէի ձեզի իմացընել ան իրենց դիպուածները՝ որ 8 քարոզիչներուն գալէն անմիջապէս ետքը պատահեցան , բայց անոնց ստորագրութիւնը՝ որ եղբայրները գրեր էին , ծովուն մէջ կորսուած էին . սակայն աս գիտեմ որ մատուռին շինութիւնը շուտով լմնցած էր , և կարծեմ որ եղբայրներէն մէկ քանին սկսեր էին անոր մէջ տեղացւոց քարոզութիւն ընել ։

Այսպէս և դեռ պատերազմը սկսուած

չէր , բայց շատ հաւանական կ'երեւնար թէ շուտով՝ պիտի սկսուէր ։ Աս միջոցիս մեծ ժողով մը պիտի ըլլար Աթէհուրուլի մէջ , ու կը կարծուէր թէ անատենը կամ խաղաղութիւն պիտի հաստատուէր , և կամ պատերազմ պիտի հրատարակուէր ։ Օրօյի կուռքը՝ որ Աթէհուրուլի բնակիչները գողցեր էին , դեռ իրենց քովը էր . և Բօմարէ շատ կը վախնար անոնցմէ ։

Ահա այսպէս էր իրերուն վիճակը Փետրվարի վերջերը , որ ատեն եղբայրները միաբան հաճութիւն տուին որ՝ Պատ. Նօթ երթայ Թահիթիի շրջականները խաղաղութեան Աւետարանը քարոզէ բոլոր բնակիչներուն ։ Պատ. Էլտըր՝ որ նոր եկող քարոզիչներէն մէկն էր , որոշուեցաւ որ Պատ. Նօթին հետ ընկերանայ ։ Անշուշտ տեղացւոց լեզուն խիստ քիչ գիտէր , ու ան պատճառաւ չէր կրնար քարոզութիւն ընել ։

Ասանկ քարոզչութեան պտըտիլը անտանելի գործ մըն էր ։ Ուր որ եղբայրները քանի մը տուն կը տեսնէին , հոն կանգ կ'առնէին , և տուն տուն երթալով կը թախանձէին ժողովուրդը՝ որ մէկ որոշ ժամանակի մը մէջ մասնաւոր տեղ

մը գան ։ Շատ անգամ դժուարութեամբ կրնային համոզել զանոնք՝ որ քաղաքի գալու խօսք տան , և անկէ 'ի զատ ժողովուրդը շատ անգամ իրենց խոստմունքը չպահելով՝ չէին գար ։ Երբեմն Պատ․ Սօթ օրը իրեք չորս անգամ քաղաք կու տար , և շատ անգամ 100 հոգւոյ չափ իր քաղաքին եկող կ'ըլլար ։ Երբեմն անոնց ըրած ուշադրութենէն սիրտ կ'առնէր Պատ․ Սօթ․ քանզի իրենց զրուցուած նոր բաներուն համար ապշած կը մնային ։ Շատ անգամ քաղաքին մէջ ըրած հարցմունքներուն պատասխան կու տային ։ Երբեմն կ'ըսէր թէ՝ «Մեղքին ճշմարիտ քաւութիւնը ի՞նչ է» . անգամ մը մարդուն մէկը առանց պատասխանեց . «Խոզեր ու մարգարիտներ» ։ Ուրիշ անգամ մը երբոր կ'ըսէր թէ ժողովուրդը չուզեր ճշմարիտ Աստուածը ճանչնալ , մարդուն մէկը անոր խօսքը միջահատելով՝ ըսաւ . «Մ՛ի ըսեր թէ մենք չենք ուզեր . հապա գուցէ մեր սրտերուն չարութեանը պատճառաւ պիտի չկրնանք իմանալ Աստուծոյ վրայով ըսածներդ» ։ Իշխաններէն մէկն ալ ըսաւ թէ՝ ինքը կը ցանկայ ճշմարիտ Աստու-

ծոյն աղօթք ընել․ սակայն Հարցուց թէ երբոր աս բանը ընելու ըլլայ, իր առջի աստուածները զինքը պիտի չմոռցընե՞ն :

Կղզւոյն բոլորտիքը 100 մղոնի ճամբայ էր : Եղջերուները օրը մէկ քանի մղոն տեղ միայն կ'երթային, ու տեղացւոց տուներուն մէջ կը կենային, և տեղացիք զանոնք ձրիապէս կ'ընդունէին․ քանզի եղջերուները անոնց տալու բան մը չունէին : Գրեթէ բոլոր ժողովուրդը ծովեզերքը կը բնակէր․ բայց մէկ քանի նեղ ձորեր կային, որ լեռներուն մէջը կ'ելլէին, և Պատ․ Սօթ շատ անգամ ան գեղեցիկ ձորերուն վրայ կ'ելլէր քարոզ կու տար :

Ասինկայ իր ճամբորդութեանը մէջ՝ տեղացիներէն խել մը մարդիկ Հետը առաւ, որոնք իր Հինգ շաբաթուան պտոյտքին մէջ շատ անգամ իր քարոզութիւնը լսելու պատեհութիւն ունեցան : Իրենց ճամբորդութեանը վերջին օրը՝ Պատ․ Սօթ մեծապէս կ'ուրախանար, լսելով որ իր Հետը եղողները Աւետարանին վրայով յայտնի ծանօթութիւններ կու տային դիմացինին եղողներուն : Ուստի տուն Հասնելէն քիչ մը առաջ՝ զանոնք մէկտեղ

ժողվեց , ու անոնց գիտցածին վրայով քննութիւններ ըրաւ . և անոնց յիշեցուց թէ՝ որչափ մեծ օգուտ վայելած էին այնչափ շատ անգամ՝ ճշմարտութեան քաջողութիւնը լսելէն , որ նոյն ատենը ուրիշները միայն մէկ անգամ լսած էին . և զանոնք խրատեց որ ասանկ մեծ փըրկութեան մը վրայով անհոգութիւն չըընեն ։ Տղուն մէկը պատասխան տուաւ ու ըսաւ . «Թէ որ աս կղզին եկող նաւերուն ամենէն առաջ Պուֆ կոչուած նաւը եկած ըլլար , շատոնցմէ 'ի վեր փետրազարդ աստուածները պիտի կործանէինք" ։

Պատ . Նօթ իր ճամբորդութեանը վերջին օրերը Ըթէհուրուի սահմանէն անցաւ , ճիշդ ան մեծ ժողովին ատենը՝ ուսկից կամ պատերազմի հրատարակուելուն և կամ խաղաղութեան հաստատուելուն որոշումը պիտի ըլլար ։

Պոմարէ և Օթու կ'ուզէին՝ որ Օրօյի կուռքը իրենց ետ տրուի . բայց որովհետև Ըթէհուրացիք աս առաջարկութեանը հաւանութիւն չտուին , Օթու բարկութեամբ ոտք ելաւ , յափշտակեց Օրօյի կուռքը , ու անով մէկտեղ ծովը նետուե-

ցաւ , և զանիկայ ծառակրին մէջ դրաւ ։ Աս
եղաւ պատերազմին սկիզբը , որ 3 ամիս
տևեց ։ Վերջապէս Բօմարէ և Օթու-
յաղթող հանդիսացան , Թէպէտ և չկրցան
իրենց աստուածը ետ առնել ։ Աս պա-
տերազմին առենը քարոզիչներուն շինած
նոր մատուռը հիմնակործան ըրին , և
հացածառի ու գագաօյի ծառերուն գե-
ղեցիկ անտառները կտրեցին , անոնցմով
իրենց տուներուն բոլորտիքը պատնէշներ
շինելու համար ։ Եղբայրները աս աղե-
տալի պատերազմին վերջանալուն մեծ շը-
նորհակալութիւն մատուցին իրենց երկ-
նաւոր Հօրը ․ սակայն մէկ կողմէ ալ
խիստ կը վշտանային , տեսնելով որ իրենց
պարտէզները ոտնակոխ եղած են , ան-
տառները կտրուած , և իրենց մատուռը
կործանուած ։ Բայց հիմա մրրիկը անցեր
էր ․ և Թէպէտ ստացուածքի վնաս կրե-
ցին , բայց իրենց գլխուն մէկ մազին վնաս
մը չեղաւ ։

## ԳԼՈՒԽ Ը.

### Պատերազմ-ընկեան ժամանակն ուղղութեան ի՛նչպէս վարուեցան :

Սրբազան պատերազմը առ այժմ վերջացած կ'երևնար, քարոզիչները սկսան իրենց ցանկերը նորոգել, և իրենց պարտէզները փորել, ու սերմանել, և ուրիշ մատուռ մը շինել :

Աւետարանը տեղացւոց քարոզելու բոլոր միջոցները 'ի գործ դրին : Կիրակի օրերը եղբայրներէն մէկ քանիները սովորութիւն ըրեր էին՝ մօտակայ տեղուանքը երթալ, և ժողովուրդը քարոզի հրաւիրել : Բայց շատ մեծ դժուարութիւններ արգելք կ'ըլլային այս բանին մէջ : Քանզի զանոնք կամ լաթ լուալու, կամ կերակուր պատրաստելու, կամ կոչունքը ընելու, և կամ օղի խմելու զբաղած, կամ օղւոյն թմրեցուցիչ ներգործութենէն պառկած կը գտնէին : Նաև Սա-թավայրի մէջ բնակող ժողովուրդը՝ ուրիշ կողմերու բնակիչներէն աւելի անհոգ էին քարոզ մտիկ ընելու կողմէ . քանզի

նոյն բանը շատ անգամ լսելէն ձանձրա-
ցեր էին ։

Այսու ամենայնիւ քարոզիչները ան-
դադար կ'աշխատէին , գիտնալով որ՝ եր-
բոր Աստուած ուզելու ըլլայ , կարող է
իր Հոգին երկինքէն թափել ։

Անոնք շարունակ երկերկու Հոգի կըր-
դային ամէն կողմերը պտըտելու կ'ելլէին ,
և սովորաբար անոնց ճամբորդութիւնը
ամիսի մը չափ կը տևէր ։ Երբեմն ծովէն
ալ կ'անցնէին , և Արիմէօյի շրջակաները
կը պտըտէին ։

Այս ճամբորդութիւններուն մէջ շատ
նեղութիւններ կը կրէին ։ Պատերազմ
ըլլալէն 'ի վեր՝ տեղացւոց տուները առ-
ջինէն աւելի գէշ վիճակի մէջ էին .
քանզի հին տուները այրուած էին , և
անոնց տեղը արտորանօք չնչին խրճիթներ
շիներ էին ։ Այս խրճիթները ընդհանրա-
պէս խիստ աղտոտ վիճակի մէջ էին , և
միջատներով լեցուն էին . անանկ որ
խեղճ եղբայրները ցորեկները աշխատու-
թեամբ անցընելէն ետև , գիշերներն ալ
շատ անհանգստութեամբ կ'անցընէին ։

Հովանոցներ չունէին , որ գիշերնին անձ-
րևէն պաշտպանեն , և տուներուն մէջ

կրակ չէր գտնուեր , որ լաթերնին չոր-
ցընեն ։ Շատ անգամ առանց ոտնա-
մանի կը քալէին , ու երբեմն զիրենք տա-
քէն պաշտպանելու համար կը ստիպուէին
ամէն մէկ քայլ առած ատեննին՝ ոտքեր-
նուն տակը տերեւներ դնել ։ Երբեմն
կերակուրի պակասութենէն կը նեղուէին .
քանզի ժողովուրդը երբեմն իրենց տունը
չէին ընդունէր զանոնք ։ Ուսածի եղբայր-
ները հարկաւոր սեպեցին որ ձուկի կար-
թեր , եւ սանտրներ շինեն , եւ իրենց ճամ-
բորդութիւն ընելու ատենը հետերնին
առնեն , ու իրենց ուտելիքին գինը եւ
իրենց բնակած տանը վարձքը անոնցմով
վճարեն ։ Արդարեւ իրաւունք ունէին ա-
ռաքելոց պէս ըսել , թէ "Մինչեւ աս
օրուան ատենը՝ անօթեցանք ալ , ծար-
ւեցանք ալ , մերկ ալ պտըտեցանք ,
ծեծուեցանք ալ , անհանգիստ ալ ե-
ղանք , եւ մեր ձեռքովը աշխատեցանք" ։
(Ա Կորնթ . Դ . 11 , 12 ։)

Տեղացւոց խելքը քիչ մը տեղ ըրաւ՝
թէ եղբայրները ինչ մեծ նեղութիւններ
կը կրէին իրենց համար . սակայն յիմա-
րաբար կը մտածէին թէ քարոզիչները
Թահիթիի մէջ բնակելու եկած են դիւ-

մամբ , որ ան տեղի քաղցր կերակուրները ուտեն . քանզի իրենք լսեր էին որ իրենց կղզւոյն պտուղներուն պէս պտուղ տուող ծառեր չեն բուսնիր Անգղիոյ մէջ : Տեղացիք շատ անգամ եղբայրներուն քարոզ տուած ժամանակը՝ խիստ չար կերպով կը վարուէին , այսպէս պոռալով . "Արտութիւններ և անհեթեթ խօսքեր են ատոնք": Ուրիշ ժամանակներ ալ մէկզմէկ խնդացընել կը ջանային եղբայրներուն ըսած խօսքերը կրկնելով . կամ Քրիստոսի անուանը վրայով ծաղրաբանութիւններ ընելով , և կամ անհեթեթ շարժմունքներով երեսնին ծամածռելով : Տեղացւոցմէ ոմանք սովորութիւն ըրած էին քարոզը սկսուելուն պէս պառկիլ ու քնանալ , նոյն ատենը ուրիշներ ալ քարոզչաց հանդերձները և անոնց կերպարանքը աչքէ անցընելով ատեննին կ'անցընէին : Այսպէս Սատանան անոնց սիրտերը յիմարութեամբ լեցուց , որ չըլլայ թէ հաւատան ու փրկուին :

Երբեմն տեղացիք աս մեր հիմակուան ստորագրածէն աւելի չար կերպով կը վարուէին . քանզի անոնք՝ կղզւոյն մէջ պատահած շատ տեսակ հիւանդութիւն-

ներուն պատճառաւը սաստիկ բարկա-
ցած ըլլալով քարոզչաց դէմ , կը հաւա-
տային թէ անոնք ամէնն ալ Ընդդէոյ
Աստուծմէն խրկուած էին : Նաև կ'ը-
սէին թէ՝ անիկայ խիստ անգութ Աս-
տուած մը պիտի ըլլայ , և թէ Օրօ այն-
չափ բարի աստուած է՝ որ անանկ հի-
ւանդութիւններ չխրկեր : Աս միջոցիս
մէկ տեսակ հիւանդութիւն մը հասարակ
եղած էր կղզւոյն մէջ , որ կը կոչուէր
Ողնաբեկութիւն : Աս ախտը կռնակի ոս-
կորի տկարութիւն մըն էր , որով կամ
ներսի կողմը և կամ դուրսի կողմը կը
ծռէր ոսկորը . շատ անգամ կը պատա-
հէր որ դեռ ոսկորը չծռած՝ հիւանդը
կը մեռնէր : Դիտելու արժանի բանը աս
էր որ՝ երբոր ոսկորը շատ ծռէր , հի-
ւանդը կ'առողջանար , թէպէտ և իր բո-
լոր կենացը մէջ հաշմանդամ կը մնար :
Անգամ մը տեղացիք խել մը ասանկ չնչին
պատճառներ քարոզիչներուն առջևը դը-
րին՝ անոնց քարոզ տուած ժամանակը ,
որպէս զի անոնց ցուցընեն թէ՝ իրենց Աս-
տուածը ինչ վնասներ ըրած է : Երբեմն
քարոզիչները կ'երթային որ տեղացիները
քարոզ լսելու հրաւիրեն , իսկ անոնք

ծաղրական ձայնով իրարու կ'ըսէին . «Ե-կէք երթանք , որ այսօր մեր բոլոր հի-ւանդութիւններէն բժշկուինք» : Շատ անգամ ալ այսպէս կ'ըսէին . «Դուք մեզի փրկութեան վրայով կը խօսիք , և ահա մենք կը մեռնինք . մեզի ուրիշ փրկ-ութիւն մը պէտք չէ , հապա որ միայն մեր հիւանդութիւններէն բժշկուինք , և միշտ ողջ մնանք հոս , և ուտենք ու խօ-սինք» :

Երբոր քարոզիչները կ'ըսէին անոնց՝ թէ իրենց մարմինները մեռնելէն ետև յարութիւն պիտի առնեն . անոնք չէին հաւատար աս խօսքերուն , հապա կ'ը-սէին թէ՝ անկարելի բան է . քանզի մե-ռած մարմինները հող կը դառնան , և թէ բնաւ մեռել մը ողջացած չէ : «Ձեր տէրը եղբայրները կը ջանային հաւատցը-նել՝ թէ մէկը մեռելներէն յարութիւն առած է . վասնզի անոնք աս բոլոր պատ-մութիւնը ծաղր ընելով ու արհամարհե-լով կ'ըսէին . «Միթէ Բոմարէն և կամ իշխաններէն մէկը հաւատա՞ց» :

Իրաւ էր որ իշխանները Պրքառոսին ամենամեծ թշնամիներն էին , և առաջ-ցուց Աւետարան մտիկ ընելու աշխոյժը

կը շինչուցանէին։ Անգամ մը եղբայրներէն մէկը Քրիստոսին մեր մեղքերուն քաւութիւն ընելուն վրայով քարոզ տուած ատենը՝ մարդ մը աս քարոզին խօսքերը հաւնելով բարձրաձայն կանչեց, «Ինի-կայ կը լսէ՞ք», եւ . անմիջապէս իշխանին մէկը աս մարդուն վրայ բան մը նետեց։

Երբեմն պարզամտութեամբ բաներ կը հարցընէին քարոզի ժամանակ, և կը խոստովանէին թէ իրենք յիմար ու տգէտ մարդիկ են։ Բայց աս բարեգուշակ նըշանները երկար ժամանակ չէր տեւէր։ Անգամ մը մարդուն մէկը ըսաւ եղբայրներուն . «Դուք ձեր Աստուծոյն զոհ չէք մատուցաներ, հապա կ'ըսէք թէ՝ Յիսուս ինքը զոհ եղաւ . արդեօք Յիսուսին զոհ ըլլալո՞ւն համար է որ դուք բան մը չէք մատուցաներ»։ Քարոզիչները պատասխանեցին թէ ան է պատճառը։ Կ'երեւնար թէ մարդը աս բանիս կը հաւնէր, ու խիստ շատ յօժարութիւն ունէր փրկութեան ճամբուն վրայով խորհելու . բայց աւա՜ղ որ թէպէտ քիչ մը հասկըցողութիւն ունէր, սակայն չէր հաւատար։ Քարոզիչները կ'իմանային Աստուծոյ խօսքին ճշմարտութիւնը, թէ՝

"Երկիրը խաւար , ու ազգերը մառախուղ պիտի ծածկէ". (Եսայ. Կ. 2.) այսու ամենայնիւ սա խոստմունքով կը մխիթարուէին , թէ՝ "Իմ ոչխարներս իմ ձայնիս պիտի լսեն , և պիտի ըլլան մէկ հօտ ու մէկ հովիւ": (Յովհ. Ժ. 16:)

Մարդ կը զարմանար՝ թէ սա ժողովուրդը ինչպէս վստահութիւն ունէին իրենց համր կուռքերուն վրայ : Օր մը տեղացիներէն մէկ քանի հոգի 7 հատ խոշոր ձուկ որսալով՝ կարծեցին որ իրենց ծառակրին մէջը եղած քանի մը կարմիր փետուրներն էին սա առատ որսին պատճառը : Շատ անգամ անգութ կը կոչէին Անգղիացիները , ըսելով թէ՝ իրենց շատ մը կարմիր փետուրներ չեն խրկեր , որ անոնցմով իրենց աստուածներուն հաճոյանան : Դժուարաւ կրնային իմանալ հոգւոյն ինչ ըլլալը . քանզի կը կարծէին որ իրենց հոգիները մութ երկրի մը մէջ կը բնակին , և թէ երբեմն միայն գիշերով իրենց կու գան երազի մէջ : Ժողովուրդը սա ամէն յիմարական գաղափարները իրենց քուրմերէն կը սորվէին , նաև ուրիշ մարդոցմէ ալ , որոնք կը պարծենային թէ աստուածներէն ներշնչեալ են : Մինչև

է․ իսկ ուրիշները դեռ կը հաւատային, քանզի Սատանան զանոնք կուրացուցեր էր։

Այսպէս այս ժողովուրդը որ Աստուծոյ չէին հաւատար, ամենայնիմար խաբեբաներէն խաբուելու յօժարակամ էին։ Այս անգամ ստանձնած է մինչև անգամ քրիստոնեայից երկիրներուն մէջ՝ որ Աստուծոյ խօսքին հաւատալ չուզողները իրենց յոյսը կախարդներու, երազներու, և աղէկ ու գէշ բաղդի նշաններուն վրայ դրած են։ Այս տարբերութեանը պատճառը իմանալը դիւրին բան է — մեղքը սրտին է․ Աստուծոյ խօսքը ամէն անսակ գէշութիւնը կ՚արգիլէ, աս պատճառաւ կ՚անարգուի ու կը մերժուի։

Պարոգէչները ժողովուրդին չար ճամբաներուն առաջնորդած ըլլալով՝ վախով լցուցած անոնց այս գործին համար, որ հիմա ձեռքէ պիտի ստորագրեմ։

Պատ․ Ռ՚եֆֆիրուզին և Սաքօյի թահիթիի մէջ ճամբորդութիւն ընելով՝ իշխանի մը տուն եկան, որմէն շատ անգամ մարգարէ մը գանել պահանջուած էր․ և քիչ մը առաջ հրաման խրկեր էր Բաճարկին՝ սպառնալով որ եթէ անմիջապէս մարդ մը չպատանէ, պիտի աքսորէ

զանիկայ ։

Այս իշխանը իր տունը նստած էր , ու անոր բոլորտիքը կեցեր էին իր բարեկամներն ու սպասաւորները , և կը խորհէր իր սրտէն անոնցմէ մէկը սպաննելու , երբոր եղբայրները ներս մտան ։ Իշխանը գիտնալով որ անոնք ասանկ գործքերը կ'առնեն , չհամարձակեցաւ անոնց առջևը կատարել իր խորհուրդը ։ Բայց չանցաւ եղբայրները պառկեցան որ հանգստանան ․ անատենը իշխանը իր քովը եղողները հրաւիրեց՝ որ իրեն հետ ընկերանան ծովեզերքը երթալու ։ Սպաննուելու մարդը իշխանին ազգականն էր , և անոր այցելութեան էր եկեր ։ Ասիկայ մէկ քանի ուրիշներու հետ հաճեցաւ ծովեզերքը երթալու ։ Հոն հասնելուն պէս՝ իշխանն ու անոր սպասաւորները քարերով մեռցուցին զանիկայ , և դագաօյի ծառին տերևներէն շինուած երկայն կողովի մը մէջ դնելով՝ պատրաստեցին որ Բօմարէին խրկեն ։ Ասկէ ետև իշխանը տուն դարձաւ անանկ հանդարտ և անվրդով սրտով մը , որ իբր թէ միայն խաղ մը սպաննած ըլլար ։ Երկու եղբայրները՝ մինչև տունէն դուրս ելլելնին աս սոսկալի բանը չիմա-

ցան ։ Ո՞վ կրնայ անոնց անատեռը զգացած սոսկումը նկարագրել ։ Նման երկրի մը մէջ շատ յարմար կու գայ ըսել ան խօսքը՝ որ ժամանակով Իսրայէլի մէջ ըսուած էր . «Ամէն մարդ թող իր ընկերէն զգուշանայ , ու բնաւ մէկ եղբօր մը մի՛ ապաւինիք ։ Անոնց լեզուն մահաբեր նետ է , նենգութիւն կը խօսի . բերնովը իր ընկերին հետ խաղաղութիւն կը խօսի , բայց սրտովը անոր որոգայթ կը լարէ ։ Միթէ աս բաներուն համար անոնց այցելութիւն պիտի չընեմ , կ՚ըսէ Տէրը»։ (Երեմ . Թ . 4 , 8 , 9 ։)

## ԳԼՈՒԽ Թ.

### Թագաւորական ընտանիքէն երեք մարդոց մահը ։

Օթէու՝ Թագաւորին մեծ հօրը վըրայով արդէն յիշուած է ։ Աս ծեր մարդը 5 տարի առաջ Սուլըրն նաւապետին քովը տեսութեան գացեր էր , երբոր անիկայ առջի քարոզիչները բերեր էր Գուֆ կո-

ըրուած նաւով ։ Քարոզիչները ատեն ա-տեն շատ ջանք ըրեր էին՝ որ սա ծերունին իր հոգւոյն վրայով և ճշմարիտ Աստուածոյն վրայով խորհելու համոզեն · բայց զանիկայ միայն աշխարհային բաներու վրայով խօսելու հակամիտած գտեր էին ։ Շատ անգամ անոնց առաջարկութիւնը սա խօսքերով կը միջահատէր · «Ե՞րբ պիտի գայ մէկ ուրիշ նաւ մը» ։ «Ա՛լ խմելիք ունի՞ք» ։ Անոր դէմքը ամէն խմելէն այլագունեալ էր · անիկայ իր երկայն ճերմակ մօրուքովը և քաղցր ու փայլելուչ կերպարանքովը խիստ ազնիւ մէկը կ՚երեւնար · բայց անոր աչքերուն կարմրութիւնը , և անոր մորթին վրայի սպիտակ գոնջութիւնը՝ անոր արբեցող ըլլալը կը յայտնէին ։

Աթէհուրուլի պատերազմէն 4 ամիս չափ ետքը Օթէլօ մեռաւ ծերութեան հասակի մէջ ։ Ժողովուրդը կը կարծէր թէ անիկայ աստուածոց սիրելի մէկ մըն էր , որովհետև 80 տարի անցուցած էր , և իր մահովը մեռեր էր ։ Անիկայ եղբայրներուն եղած տեղէն մօտ տան մը մէջ մեռեր էր ։ Անոր աղջիկը Օվօ՝ աղաչեց եղբայրներուն որ մէկ մնացուկ մը

չմնան իր Հօրը համար ։ Մարմինը զմռսե-
լէն ետև տնտունկի մէջ գրին , և Նարէ
տանելով խղճիկ մը մէջ դրին՝ Թա-
ղաւորին տանը դիմացը ։

Հետևեալ տարին Օթուէն պզտիկ եղբայրը Թէարէն՝ տխուր մը պատճառաւ օրէ օր տկարանալու վրայ էր ․ ուստի կարծելով թէ իր աստուածը իրեն սրդողած է , մէկ մարգարէ մը խրկեց անոր տաճարը , որ անոր բարկութիւնը դադրեցընէ ․ բայց երթալով՝ ալ աւելի գէշ կ'ըլլար իր վիճակը ․ և անոր մայրը Իտիա գործողանօք կը դարմանէր զանիկայ ։

Նոյն Թէարէ Նարէի մէջ գտնուելով , Պատ ․ Նշտրը երբեմն երբեմն անոր տեսութեան կ'երթար , և անոր քիչ մը գինի և ուրիշ դեղեր ալ կու տար ։ Ըս քարօզիչը անոր մեռնելէն օր մը առաջ այցելութեան գնաց , ու տեսաւ որ սաստիկ տենդով կը տագնապէր , և անոր ծառաները անոր վրայ պաղ ջուր թափելով զանիկայ կը զովացընէին ․ սակայն անոր մարմինը շօշափուած ատենը ըստ բաւականին պաղ էր ։ Շատ չանցաւ արքայորդին մարեցաւ , և կարծելով թէ մեռնելու վրայ է , իր մօրը Իտիային

Հրաժարական ողջոյնը տուաւ • և բոլոր-տիքը կայնող ազատաւորները դառնապէս կուլային ։ Աս միջոցիս արտօրնոք Ռօ-մարէն կանչեցին ։ Երբոր եկաւ անիկայ , իր որդւոյն վիճակը տեսնելով բնաւ տրտմութեան նշան մը չցուցուց • քանզի կը խորհէր թէ՝ քանի որ ամէն մարդ մահ-կանացու է , պարապ բան էր մահուան համար տրտմիլը ։ Այսու ամենայնիւ Թէարէին պառկած սենեակին մէջ՝ իր աստուածներուն 2 խոզ , 1 պանանայի ծառ , և քանի մը կարմիր փետուրներ մատուց , յուսալով որ աս միջոցներով իր որդին աղէկի դառնայ ։ Պատ. Էշլ-տըր աս ողորմելի պատանւոյն սկսաւ խօ-սիլ Հոգւոյ Փրկչին վրայով • սակայն անոր աս բանը ընելուն վրայ Իտիայէն սիրտը նեղացած կ'երևնար • քանզի կը կարծէր թէ բոլոր կուռքերուն մատու-ցուած աղօթքները պարապ պիտի ըլլեն , թէ որ Քրիստոսի անունը յիշուելու ըլլայ ։ Թէարէ թէպէտ գիտէր թէ պիտի մեռ-նէր , բայց յաւիտենականութեան վրայով ամենևին հոգը չէր ըներ ։ Հետևեալ օրը Պատ. Էշլտըր քիչ մը գինի տարաւ նորահասակ արքայորդւոյն ։ Թէարէ մեծ

փափաքով ընդունեց գինին , թէ և ապուրի դդալի մը չափ միայն հազիւ թէ կրնար կուլ տալ : Ընկեր ըսաւ թէ իր կոկորդը աւրուեր է , և անոր համար չէր կրնար կուլ տալ · չատ չանցաւ շունչը կտրեցաւ : Այսպէս մեռաւ Թուսէն 18 տարեկան ընկալով , Ժուքսի ամրոցն մէջ , 1803ին :

Պարագլխները մեծապէս կը վշտանային , տեսնելով որ անդամնիք իրարու ետեւէ գերեզմանը կ'իջնեն՝ առանց հաւատալու իրենց քարոզուած Փրկչին :

Թեփարէին մարմինը զինուելով իր մեծ հօրը քովը խորշիթի մը մէջ դրին : Աւանդութիւն կար որ՝ թագաւորական ցեղէ մէկը ուր որ մեռնէր , ան սահմանին մէջ կրակ չէր վառուէր : Ուստի Նարէի բոլոր բնակիչները ստիպուած էին որ Թեփարէին մեռնելէն ետքը՝ շաբաթ մը հեռու անղունանք երթան , ու իրենց կերակուրնին եփեն :

Ռոմարէ՝ թէ և ականատես եղաւ իր որդւոյն անհոգ վիճակի մէջ մեռնելուն , սակայն չէր գիտեր թէ իր օրերուն թիւը քանակը որչափ մօտեցած էր :

Ռոմարէ աշնան ժամանակը իր որդւոյն մեռնելէն , առաջ սաստիկ հիւանդութեան

մը թռնուած էր • իսկ Պատ • Աշլօրը և Պ • Աշյր անոր այցելութեան երթալով՝ ըսեր էին թէ՝ ճշմարիտ Աստուածը անոր դէմ բարկացած է մարդ սպաննելով զոհ ընելուն համար ։ Աս յանդիմանութիւնը լսելը անոր ազդուութիւն մը չըրաւ • բայց երբոր անոր խոստացան թէ՝ իրենց տանը մէջ աղօթք ընելու ժողվուած ատեննին՝ իր առողջանալուն համար ալ աղօթք պիտի ընեն , կ՚երևէր թէ անոնց աս մարդասիրութիւնը Ռօմարէին սրտին դպեր էր • ասկէ ետքը շատ չանցած Ռօմարէն աս հիւանդութենէն առողջացաւ ։

Թ՚էարէին մեռնելէն ամիս մը ետքը դիպուած մը պատահեցաւ , որուն համար Ռօմարէ մեծապէս ուրախացաւ ։ Ապստամբ Աթէհուրացիք դաւաճանութեան խորհուրդ մը ըրին՝ որ Ռօմարէն և Իտիան մեռցընեն ։ Աս նպատակիս հասնելու համար մարդ մը մեռցուցին , իբրև զոհ ; և Ռօմարէն կանչելու համար մարդ խրկեցին՝ որ Աթէհուրու գայ , և ան զոհը աստուածոց մատուցանէ ։ Անոնք կը կարծէին որ քանի մը ծառաներ հետը առնելով պիտի ելլէ գայ , և մտքերնին դրած էին որ դարանամուտ ըլլան , և

թէ Բօմարէն և թէ Իտոխան մեռցընեն ։ Օթու առ դաւաճանութիւնը լսելուն պէս՝ իր հօրը իմացուց ․ ան ալ պէտք եղած պատրաստութիւնը տեսնելով՝ ծովով Աթէհուրու գնաց բազմաթիւ ծառակուրներով ։ Հոն հասնելուն պէս՝ տեսաւ որ Աթէհուրացիք առջինէն աւելի դիւրապատրաստ էին իր իշխանութեանը հնազանդելու , և մինչև անգամ անոր յանձնեցին Օրօ կուռքը , ան ծառի կոճղը՝ որուն պատճառաւը այնչափ արիւնհեղութիւն եղած էր ։

Այսպէս խաղաղութիւնը հաստատուեցաւ կղզւոյն մէջ՝ Օգոստոս 1 , 1803ին ։ Բայց Բօմարէին օրհասը վրայ գալով՝ չկրցաւ ժողովուրդին հնազանդութիւնը ու Օրօ կուռքին ձեռք անցընելը վայելել ․ քանզի ամիսէ մը ետքը՝ Ամենակարողէն խրկուած հարուածով մը կորսուեցաւ ։ Անոր մահը աս կերպով եղաւ ։

Տարթ անուն նաւ մը Թահիթիի մօտ խարսխած կը կենար ։ Մէկ առտու մը Բօմարէ ծառակուր մը մտաւ երկու մարդհետը առնելով ․ անիկայ ձեռքը թիակ մը բռներ էր , ու հազիւ թէ նաւուն մօ-

Տեղացիք Ռօմարէին յանկարծահաս մահուանը վրայ չվշտացան , ոչ ալ ողբացին . քանզի անոնց սիրտը այնչափ կարծրացեր էր հանապազօրեայ անգթութիւններով , որ քիչ անգամ կարեկցութեան կը շարժէին կամ կը վշտանային ուրիշներուն համար :

Այս միջոցին Օթոն՝ Ալթէհուրուլի մէջ գտնուելով՝ իր հօրը մեռնելը տեսնելու չեկաւ , հապա ուզեց որ իրեն տարուի : Իսկ Իտոխ եղբայրներէն երկուքին աղաչեց , որ երթան Թագաւորին սիրտը ընեն՝ որ Ռօմարէին մարմինը Ռարէի մէջ մնայ : Անոնք ալ աս բանիս համար Թագաւորին գացին , և իրենց խնդիրքը ընդունուեցաւ . բայց զանիկայ տեսան՝ որ իր հօրը մահուանը վրայով բոլորովին անհոգ կը կենար . սակայն գիշերը իր ծառաներէն մէկը քովը պառկեցուցեր էր , վախնալով որ՝ չըլլայ թէ իր հօրը ոգին իրեն երևնայ :

Հիմա Օթոն իր հօրը կենդանութեանը առնէն աւելի իշխանութիւն ունէր : Պարոնզէջները կը վախնային որ չըլլայ թէ ժողովուրդը անոր դէմ ապըստամբին , քանզի անիկայ իր հօրմէն ա-

ուելի հարստահարող էր , և շատերուն ատելի ։ Այսու ամենայնիւ ատուածային ողորմութեամբ ժողովուրդը Օթունին ընդդիմութիւն մը չըրաւ ։

Այս ժամանակէն Օթու իր հօրը անունը առաւ , և Սորին Մեհափառութիւն Յոմարէ տիտղոսը իրեն սեպհականեց ։ Յոմարէ բառը կը նշանակէ Գիշէրուան հող ։ Այս անունը ինքը ընտրեր էր զարմանալի կերպով մը ։ Անգամ մը անիկայ ճամբորդութիւն ըրած ատենը՝ լեռներու վրայ ցուրտ տեղ մը պառկելով պաղ առեր էր ։ Անոր ծառաները հետեւեալ օրը իր հազալը տեսնելով , ան գիշերը Յոմարէ կոչեցին ։ Այս բառիս հնչումը այնչափ քաղցր էր եկեր իշխանին ականջներուն , որ ան անունը իրեն դրեր էր ։

Այսուհետև Օթուին վրայով խօսած ատեններս՝ Յոմարէ անունը պիտի տանք ։

## ԳԼՈՒԽ Ժ

### Թահիթեցիներէն նախ գիր գրելու վարժողները :

Թէ և Բօմարէ Բ. իր հօրը պէս հաճոյական բարք չունէր , սակայն անոր չափ քարոզիչներուն բերած պատգամին հակառակութիւն չէր ըներ . քանզի առաջները շատ անգամ եղբայրներուն քովը գտնուած էր , և գիպուածով անոնց քարոզութիւնները մտիկ ըրեր էր : Կիրակի օր մը Խոխային լուր խրկեց՝ որ գայ դուրս տեղ մը տրուած քարոզը մտիկ ընէ . բայց երբոր անիկայ եկաւ , շատ հեռու տեղ մը կայնեցաւ որ չըլսէ . վասն զի Աւետարանին մեծ թշնամին էր : Թէ և Բօմարէ իր ժամանակին մեծ մասը՝ ուտելով խմելով ու իր սպասաւորներուն հետ գեղջկօրէն խաղալով անցուցեր էր , սակայն պատերազմը ըլլալէն 'ի վեր կարդալ ու գրել սորվելու ետևէ ինկաւ : Երբոր դուրս երթալու ըլլար , ուր որ քարոզիչներէն հեռու պիտի ըլլար , հետը գիրի օրինակներ

կ'առնէր , ու ինքնիրմէն կրթութիւն կ'ընէր , և հիմա կարող էր տոմսակներ գրել բաւական վայելչութեամբ ։ Յիրաւի ան նոյն աղջի մարդն էր , բայց հետզհետէ կը ջանար իր չարութիւնը քարոզիչներէն ծածկել ։

Բօմարէ իր հօրը մեռնելէն տարի մը ետքը եղբայրները թողուց , ու Էյմէօ կղզին գնաց , հետն առնելով իր Օրօ կուռքը ։ Աթէհուրուացիք շատ կը վշտանային ան կուռքը իրենց սահմանէն կորսնցընելնուն համար , բայց դուրսէն չէին ցուցըներ իրենց տրտմութիւնը ։ Ա. Բօմարէին մեռնելէն ետքը՝ Օրօյին համբաւը խիստ շատցաւ . քանզի մարդիկ կ'ըսէին թէ՝ Օրօ իր կարողութեամբը զանիկայ մեռցուցեր էր իբրև պատիժ իր յանդգնութեանը , որ անգամ մը Օրօյին նուիրուած սուրբ լաթ մը առեր՝ ու իր որդւոյն Օթուին հագցուցեր էր ։

Հիմակու Բօմարէ թագաւորին զօրութիւնն ալ խիստ մեծ սեպուած էր ։ Կ'ըսէին թէ անիկայ կարող է իր աղօթքովը մարդ մեռցընելու , ու հետևեալ պատմութիւնը կը ստորագրուէր իբրև ապացոյց աս բանիս ստուգութեանը ։

Անգամ մը Բոմարէ իր աստուծոյն երկրպագութիւն ըրած ատենը , մարդուն մէկը Թմբուկ զարնելով անոր աղօթքին շփոթութիւն տուեր է : Ան ալ լուր խրկեր է որ Թմբուկը ձեռքէն ձգէ . բայց մարդը չարունակ ձանձրացուցեր է զանիկայ : Ատենը Բոմարէն ըսեր է , «Թո՛ղ տուէք զանիկայ», և նոյն գիշերը մարդը մեռեր է :

Իսկ Թագաւորը գիտէր որ՝ Թէ և ժողովուրդը իրմէ կը վախնար , բայց շատերը զինքը կ'ատէին . աս պատճառաւ ինքը երկիւղի մէջ էր , որ չըլլայ Թէ ուրիշ պատերազմ մըն ալ բացուի :

Կ'ուզէր որ զինքը խաղաղասէր երևցընէ Թահիթիի մէջ եղող ժողովուրդին . աս դիտաւորութեամբս՝ քանի՛ որ ինքը Էյմէօյի մէջ կը գտնուէր , մարդ մը զոհ ըրաւ , և անոր մարմնոյն այլ և այլ մասերը Թահիթիի զանազան կողմերը խրկեց : Մէկ մասին ծայրը Մաթավայի խրկեց . և մազին , ոտքերուն ու ձեռքերուն կտորուանքները ուրիշ տեղուանք խրկեց :

Սակայն ինքը գիտէր որ հաւանական է թէ շուտով պատերազմ մը պիտի

ծածկէր․ ուստի սկսաւ պատրաստութիւն տեսնել, ամէն գտած հրացանները ժողվելով ։ Աշիմէօյի բնակիչներէն շատերը կը յորդորէր՝ որ իրենց հրացանները պարգևներով փոխոց ընեն, բայց ուրիշներուն բռնութեամբ կը պահանջէր ։ Թահիթիի ժողովուրդը լսեցին՝ որ Թագաւորը հոն գալով ամենը իրենց հրացաններն առնելու միտք ունի, հաստատ որոշեցին որ մանաւանդ մեռնիլը աչքերնին առնեն, քան թէ իրենց հրացաններէն զրկուին ։ Այսպէս Թագաւորին խիստ վարմունքը՝ իր հպատակներուն սրտին մէջի բարկութեան կայծը արծարծից, և շատ հաւանական կը թուէր որ շուտով պիտի ապստամբէին ։

Բողոքիչները սա վիճաբանութիւնները ընելով՝ կը տեսնէին որ օր մը հաւանականաբար ուրիշ պատերազմ մըն ալ պիտի ծագէր, ուսկից շատ կը վախնային, մանաւանդ իրենց ընտանեացը մէջ եղող կնիկներուն ու տղաքներուն համար ։

1805ին՝ Սեպտեմբեր ամսուն մէջ․ եղբայրները խիստ մեծ վնաս մը կրեցին ։ Անոնք 1 մղոնի չափ տարածութիւն ունեցող արտի մը բոլորտիքը պատ քաշե֊

լով , անոր մէջ 600 գաղղիացի , Նազրէթցի և լեմոնի ծառեր տնկեր էին : Զ տարի առ ծառերուն խնամքը տարեր էին . մէյմ'ալ նայիս՝ տա ազնիւ ծառատունկերը մէկ գիշերուան մէջ գրեթէ բոլորովին այրուեր մոխիր դարձեր էին : Պարտիզչները կարծեցք պատան՝ որ քանի մը չարանախանձ մարդիկ ցանկին դուրսի կողմը բուսած բարձր խոտերուն մէջը կրակ ձգած են :

Տեղացիները քսան մէկ ջանք մը չըրին ան ծառերը ինչ միջոցով կորսուիլը երեւան հանելու համար , ոչ ալ ան կորուստեանը վրայ ցաւակցութիւն մը կը ցուցընէին : Եղբայրները մէկտեղ ժողվուեցան խորհուրդ ընելու՝ թէ արդեօք թագաւորին իմացընեն ան բանը . սակայն միաբերան հաճութիւն տուին որ դանգատ չընեն , որ չըլլայ թէ իրենց պատճառաւը արիւն թափուի :

Յիրաւի եղբայրներուն անտանելի բան մը պիտի ըլլար՝ տա ապերախտ ժողովուրդին հոգիներուն համար շարունակ աշխատիլը , թէ որ մեղքերնին չըներէին դընէկայ , որ երբոր մենք թշնամի էինք , մեր մեղքերուն համար իր Որդին տուաւ :

Աս բանս մտքերնին բերելով կարողա-

ցան հեզութեամբ տանիլ իրենց կրած անիրաւութեանը , և անդուլ ջանիւք իրենց սիրոյ գործը շարունակել :

Թագաւորը մէկ ու կէս տարի Էյմէօյի մէջ մնաց : 1806ին՝ Յունվար ամսուն մէջ Թահիթի դարձաւ :

Եղբայրները Բարէ գացին Թագաւորին գալուստը ողջունելու , քանզի ծովէն հոն ելեր էր : Թագուհին ալ հետն էր , բայց խիստ հիւանդ կ'երևնար : Թագաւորը եղբայրները տեսնելուն վրայ հաճութիւն ցուցուց , ու ըսաւ որ՝ քանի մը օրէն Մաթավայի պլուտի գայ , և անոնցմէ խնդրեց որ իրենց տանը մօտ՝ ծեփած պատերով պզտիկ բնակարան մը շինեն իրեն համար , որ անոր մէջ հանդարտ մտօք նստի գիր գրէ : Նաև ըսաւ թէ՝ կ'ուզէ որ իրեն ընծաներ տրուի :

Թէպէտ և Թագաւորը շարունակ չարագործութեան մէջ յամառեալ կը մնար , բայց առջինէն շատ աւելի փափաք կը ցուցընէր քարոզչաց հետ կենակցելու : Օր մը անոնց աղաչեց որ իր մօրը հարցընեն՝ թէ արդեօք նոր եկող քարոզչաց տունը կրնա՞յ մտնել , որ անոնց հոն հաւանելէն ետև շինուեր էր . քանզի կը փա-

փաքէր վերի սենեակները ելլել , բնաւ գետնի յատակէն վեր շինուած սենեակներ տեսած չըլլալուն համար : Կ'երևի թէ Խոխա կարողութիւն ունէր խափանել Թահիթեցւոց օրէնքը , որով Թագաւորներուն ամէն ոտք կոխած տուները անոնցը կ'ըլլար : Խոխա Օթուին խընդրած թոյլտուութիւնը շնորհեց . Թագաւորն ալ իր հետաքրքրական փափաքը լեցուց՝ տանը վերի սենեակներուն մէջ պտըտելով , բայց վարի սենեակները տեսնելու չգնաց , ո՛չ ալ քարոզիչներուն միւս բնակարանները :

Մարտ ամսուն մէջ , 1806ին , եղբայրները մէկ կորուստ մը կրեցին . չէ թէ կաւ կարասիքի , հապա իրենցմէ մէկ ընտանիքի : Պ. Շէլլի իր կնկանը ու իր տղուն հետ կղզւոյն մօտը եղող նաւ մը մտնելով ճամբայ ելաւ :

Պ. Շէլլիյին սենեակը՝ որ վերի դըրտիկոնն էր , Պ. Թէսսիէրին տրուեցաւ : Շատ չանցաւ քարոզիչները մեծ զարմանքի մէջ մնացին , երբոր Թագաւորէն աս հետևեալ տոմսակը ընդունեցին , որ Թահիթեցւոց լեզուով գրուած էր : Եւաս է անոր թարգմանութիւնը :

«ՅԱՐԵԿԱՄՆԵՐ — *վերի սենեակը ինծի տուէք — Պ. Շէլլէյին սենեակը — ինծի տուէք զանիկայ որ իմ գրատունս ըլլայ. վարի սենեակը Թէասիէրին տուէք և վերինը ինծի* ։ *Թէ որ ամէնքանիդ ալ աս բանիս կը հաճիք, աս իմ ըսածս ըրէք. թէ որ հաւանութիւն կուտաք, գրեցէք ինծի, որ ես ալ ձեր ըսածը գիտնամ* ։

"ԲՈՄԱՐԷ, ԹԱԳԱՒՈՐ"

*Յարգողները մէկտեղ խորհուրդ ըրին՝ թէ ինչ պատասխան տան աս նամակին* ։ *Զանազան պատճառներու համար չուզեցին որ ան սենեակը Բոմարշէին տան* ։ *Մէկը աս էր, որ Պ. Թէասիէրին պէտք էր, և դեռ երկու օր եղեր էր ան սենեակը մտներ* ։ *Մէյմըն ալ աս էր, որ եթէ Թագաւորը հոն բնակելու ըլլար, եղբայրները շատ անհանգիստ պիտի ըլլային. շատ անգամ մարդիկ պիտի գային զանազան բաներու վրայով Թագաւորին խօսելու. կերակուր պիտի ուտէին տանը մէջ, և անոր բոլորտիքը. և ան տեղը անկարգութիւնը պիտի տիրէր. պարտէզը ոտնակոխ պիտի ընէին, ու ծառերուն վրայի պտուղներէն պիտի ուզէին որ ու-*

տէն , կամ առանց հրաման խնդրելու պիտի քաղէին զանոնք ։

Ուստի եղբայրները որոշեցին Թագաւորին առաջարկելու որ անոր՝ իրենց տանը մօտ պզտիկ բնակարան մը շինելու համար ձեռքերնէն եկածին չափ օգնութիւն ընեն , որովհետեւ անանկ մէկ բնակարան մը ունենալու փափաք ցուցուցեր էր ։ Սակայն մէկ կողմէ ալ կը վախնային առանց առաջարկութիւն մը ընելու , մտածելով որ անիկայ հաստատ որոշեր է՝ որ իրենց հետը բնակի իրենց ընդարձակ տանը մէջ ։ Ուստի սիրոյ նամակ մը խրկեցին անոր՝ ըսելով թէ հաւանութիւն պիտի տային որ ան սենեակը իրը ըլլար , թէ որ իր մարդիկը աղաղակ ու շփոթութիւն հանելու չըլլային ։

Քանի մը օրէն ետեւ ուրախութեամբ Թագաւորէն հետեւեալ պատասխանը ընդունեցին ։

«Եղբայրներ — այսպէս իմ խօսքս կը շարունակուի , ու իմ փափաքս աս է ։ Դուք իմ կամքս կատարեցէք , եւ մինակ ընելէն մի՛ դառնաք . հապա իմ խօսքս մինակ կ՚ընէք , թո՛ղ Պատ . Սօթ ու Պ . Պիքնէլ իմ գործաւորներս ըլլան , ու իմ

ծովահայեաց սենեակս շինեն նոր տանը մէջ . քանզի հոն պիտի շինուի , թէ որ դուք ալ բարեհաճիք : Իմ բարեկամներս՝ ինծի սղոց մը , քերիչ մը , քանդակագործի գրիչներ և ուրիշ մանր մունր բաներ տուէք , որոնք շինութեան գործին հարկաւոր են : Աս առաջարկութեանս կը հաճի՞ք . հաճելի՞ է ձեզի . գուցէ չըլլայ : Ձեր կամքը ինծի գրութեամբ իմացուցէք՝ որ գիտնամ : Ահա՛ աս է ամէնը , ալ ըսելիք չունիմ ,

"Ողջ կեցէք բարեկամներս :

"ԲՕՄԱՐԷ , ԹԱԳԱՒՈՐ"

Եղբայրները յօժար կամօք հաճութիւն տուին՝ որ թագաւորին փոքրիկ սենեկին շինութեանը օգնութիւն ընեն , ու աս հետևեալ պատասխանը խրկեցին անոր :

"ԿԵՑՑԷ ԹԱԳԱՒՈՐԴ

"Քու գրած խօսքերդ հաճելի եղան մեզի . ուստի սղոցը , մեծ ու պզտիկ գրիչներ , ու բևեռներ պիտի տանք՝ քու գործքդ գործելու համար :

"ՅՈՎՀԱՆՆԷՍ ՏԷՎԻՍ"

Սենեակը շուտով լմնցաւ . թագա-

Աստուծոյն անծանօթ մէկու մը պէս մեռաւ :

Թագաւորը վատաբաղդ կը ցուցընէր զինքը Թագուհւոյն մահուանը վրայ , նոյնպէս ալ անոր ծառաներէն ոմանք : Խոխա և ուրիշ քանի մը կնիկներ աս բանիս համար իրենց մարմիններուն վրայ ճեղքուածներ ըրին ձուկի ակռաներով : Նոյն օրը Թագուհւոյն մարմինը ծառանկրի մը մէջ դրին , ու Խարէ տարին , և հոն զանիկայ զմռսելով փոքրիկ գաւիթի մը մէջ եղած հիւղի մը տակ դրին : Թագուհւոյն իր կենդանութեանը ատենը գործածած ամէն բաները իր քովը դրին , օրինակի աղագաւ՝ անոր գաւաթները , ամանները , ափսէները , կողովները , և կացինը . բայց զանոնք կոտոր կոտոր ըրին , որ չըլլայ թէ մարդիկ երթան զանոնք գողնան : Անոր ազգականները ամէն օր անոր կերակուր կը տանէին . և զոհասեղանին վրայ դրած ատեննին՝ համառօտ աղօթք մը կ'ընէին , ըսելով թէ՝ իր հոգւոյն համար ձուկ և գագաթի ընկոյզ բերած են :

Աս դիպուածներս պատահած միջոցին եղբայրները անդադար կ'աշխատէին փո-

դովուրդին սորվեցընելու , ու կղզւոյն շրջակաները համբորդութիւններ կ'ընէին , ինչպէս որ առաջները սորուագրած ենք : Ու որովհետև տրտմութեամբ պաշարուած էին՝ տեսնելով որ Աստուծոյ դարձող մը չկայ : Մայիս ամսուն մէջ օր մը որոշեցին՝ որ ծոմապահութիւն ու աղօթք ընեն : Աս նոյն օրը 4 անգամ մէկտեղ ժողվուեցան աղօթք ընելու , և Աստուծմէ խնդրեցին որ իրենց մեղքերը ներէ , և զիրենք զօրացընէ՝ որ կարողանան ան խեղճ հեթանոսներէն մէկ քանիները աստուածգիտութեան դարձընելու :

Պատ . Տէվիս մասնաւորապէս աշխատեր էր՝ Թահիթիի մէջ եղող տղաքը կրթելու : Շատ անգամ կղզւոյն բոլորտիքը պտըտեր էր տղաքները ժողվելու համար . երբեմն ալ Պատ . Աքօթ և Ուիլըքն աս նոյն բանը ըրեր էին : Ամէնքնին ալ մեծ դժուարութիւն կը կրէին տղաքը իրենց քովը բերելու ու անոնց դաս տալու համար : Նախ տղաքը վախկոտ էին . երկրորդ ծոյլ . և որովհետև խաղալը բան սորվելէն աւելի կը սիրէին , շատ անգամ իրենց ուսուցիչներուն քովը տեսած ատեննին՝ վազելով կը պահուըտէին : Քո-

Գուցէ այժմ ուզէք գիտնալ թէ քարոզիչները ինչ տեսակ կրթութիւն կու տային տղոցը ։ Չէին կրնար անոնց կարդալ սորվեցընել , քանզի տղաքը անոնց գրերուն նայիլ չէին ուզեր ․ անոր համար համառօտ քրիստոնէական մը սորվել կու տային ։ Տղոցմէն մէկ քանիները վերջապէս անգիր մը սորվեցան այս քրիստոնէականը , ու քանի մը ամիս դաս չառնելէն ետև ալ՝ դեռ մոռցած չէին ։ Եղբայրները այս բանէն քաջալերութիւն առնելով՝ համոզուեցան որ աւելի ընդարձակ քրիստոնէական մը շինեն ։

Այսուհետեւ ալ շատ ժամանակ կը կորսնցընէին՝ տղաքը փնտռելու երթալովնին ․ մանաւանդ թագաւորին Թահիթի դառնալէն ի վեր ․ քանզի աս միջոցիս զանազան տեղուանք իրարու ետեւէ խնճոյքներ կը կատարուէր , և տղաքը միշտ աս խնճոյքներուն գացած կ՚ըլլային ․ տղոցմէ մէկ քանիները ալ թագաւորին ծառաներ եղեր էին , ու անոր հետ տեղէ տեղ կը պտըտէին ։

Նոյեմբեր ամսուն մէջ , 1806ին Պատ․ Տէվիս դպրոց մը բացաւ քարոզչաց նոր տանը մէջ , ու մեծ տեղուանքը բնակող

տղաքը Հրաւիրեց՝ որ շաբաթը 3 անգամ իրիկունները գան, և դաս առնեն: Եղ-բայրներուն քովը խոնարհութիւն ընող տղաքն ալ աշակերտներուն մէջն էին: Տղաքը այնչափ Հաւնեցան աս դպրոցին, որ ամիսէ մը ետքը աղաչեցին Պատ. Տէ-վիսին որ աւելի յաճախ իրենց դաս տայ: Ան ալ Հաճեցաւ ամէն առտու դասա-տուութիւն ընել անոնց: Աս տղաքը կարդալ ու գրել սորվեցան: Նախ գիր գրելը ծովեզերքի աւազին վրայ սորվե-ցան: Քարոզիչները քանի մը Հեգերէն-ներ պատրաստեցին անոնց Համար, և քանի մ'ալ Սուրբ Գրոց պատմութիւն-ներ, ու զանոնք Անգղիա խրկեցին որ տպագրուի, և նոյն ատենը դպրոցին մէջ ձեռքով գրուած պզտիկ գրքեր կը գոր-ծածէին: Աս դպրոցը քարոզչաց սրտին մխիթարութիւն մը եղաւ, քանզի տղաքը բան սորվելու յօժարամտութիւն կը ցու-ցնէին:

Աս տարւոյն վերջը դիպուած մըն ալ պատահեցաւ, որով քարոզիչները քիչ մը ոգի առին: Հինգ տարի եղեր էր որ Անգղեոյ մէջ եղող իրենց բարեկամներէն լուր առած չէին — այսինքն Արքունի

ծովապետ՝ նաւուն նոր քարոզիչները բերելէն 'ի վեր : Վերջապէս նաւ մը հասաւ հոն , որուն մէջ նամակներ ու ծըրարներ կար քարոզիչներուն համար : Սակայն անոնց ուրախութիւնը տրտմութեան հետ խառնուեցաւ . քանզի իրենց խըրկուած հանդերձները այնչափ փտտած էին ծովու ջուրէն , որ անոնց մեծ մասը բնաւ գործածուելու չէր գար :

Եղբայրները Թօմաբէին ազատ բնակութիւնը արդէն գիտցած ըլլալով , իրենց ընդունած բաներէն քիչ մըն ալ անոր խրկեցին՝ առ հետեւեալ նամակին հետ :

«ԹՕՄԱԲԷ — քեզի բաժին տրուած բաները աստնք են . 10 կացին , 10 մըկրատ , 10 հայելի , 6 ածելի : Ասոնք բոլոր քարոզիչներուն խրկած ընծաներն են : Հանդերձները փտած էին :

«ՃՕՆ ԵԱԻԼ»

Շատ չանցած առ հետեւեալ պատասխանը ընդունեցին Թագաւորէն :

«ԲԱՐԵԿԱՄՆԵՐ — խրկած ընծաներիդ մեծ հաճութեամբ ընդունեցի :

«ԹՕՄԱԲԷ»

Թուահիթեցւոց լեզուին մէջ «Աշխարհա-կալութեան» բառ մը չկայուն համար, Ռոմարէ չէր կրնար իր երախտագիտու-թիւնը յայտնել, թէ որ անանկ զգա-ցում մը ունեցած ալ ըլլար :

Աս կերպով Ռոմարէին նամակ մը եկաւ Լոնտոնայի Թարգմանչաց ընկերութեանը Հո-գաբարձուներէն, որ Անգղիարէն գրուած ըլլալով՝ եղբայրները չանիկայ Թուահիթե-ցւոց լեզուին թարգմանելով Ռոմարէին կարդացին : Ռոմարէ կարող էր ինքնին աս նամակին պատասխան մը գրելու : Ասոր անիկայ երկար նամակ մը գրեց Թուահիթեցւոց լեզուով. եղբայրները զա-նիկայ Անգղիարէնի թարգմանեցին. ետքը Ռոմարէն ալ օրինակեց ան Անգղիարէնը, և երկուքն ալ մէկտեղ ընկերութեան հոգաբարձուներուն խրկեց՝ թէ Թուահի-թեցւոց լեզուով գրածը և թէ անոր Անգղիարէն թարգմանութիւնը :

Նամակը երկար ըլլալուն՝ անոր մէկ մասը միայն հոս պիտի դնենք :

«ԲԱՐԵԿԱՄՆԵՐ — ձեր ընտրած երկ-րին մէջ ձեզի ամէն տեսակ օրհնութիւն-ներ գալը կը խնդրեմ, և աս չար երկրին, աս անզգամ երկրին՝ աս երկրին՝ որ ճըշ-

մարիս Աստուածը չճանչնար , աս անհող երկրին մէջ ձեր ձեռք զարկած բաղէ գործին ալ յաջողութիւն :

«Ձեր փափաքած բանին բոլորովին կը համաձայնիմ , և հետևաբար ասկէ պիտի հեռացընեմ Օրօ կուսակը , ու Ուլիաթէա պիտի խրկեմ զանիկայ :

«Բարեկամներ , կը յուսամ որ դուք ալ իմ խնդիրքս պիտի ընդունիք , որ աս է : Կ'ուզեմ որ բազմաթիւ էրիկ մարդիկ ու կնիկ մարդիկ և տղաքներ խրկէք հոս : Բարեկամներ , զանազան կահ կարասիներ ու հանդերձներ ալ խրկեցէք մեզի համար , և մենք ալ Անգղիացւոց սովորութիւնները պիտի ընդունինք :

«Բարեկամներ , խրկեցէք նաև խիստ շատ հրացաններ , ու վառօդ • քանզի մեր երկրին մէջ յաճախ պատերազմներ կը պատահի : Թէ որ զէն մեռցընեն , ալ դուք Թահիթիի մէջ բան մը պիտի չունենաք : Երբոր ալ ես մեռած ըլլամ , դուք ալ հոս մի գաք • Թահիթի մէկ անհող երկիր մըն է :

«Աս ալ կը խնդրեմ որ Անգղիոյ մէջ գտնուած ամէն տեսակ հետաքրքրական բաները ինծի խրկէք : Նաև գիր գրելու

համար ամէն ինչ որ պէտք է — թէ թուղթ , թէ մելան և թէ գրիչ՝ առատօրէն խրկէք . ինաւ գիր գրելու գործիք մը պակաս չըլլայ ։

«Իսկ ձեր փափաքը՝ որ կ'ուզէք Թահիթիի ժողովուրդը կրթել , ինծի խիստ ախորժելի է ։ Յայտնի բան է որ առջի բերան ժողովուրդը չիմանար . բայց ձեր դիտաւորութիւնը բարի է , և ես շատ կը հաւնիմ անոր , ու ասկէ ետև ամէն չար սովորութիւնները անհետ պիտի ընեմ ։

«Ի՛նչ որ կ'ըսեմ՝ ճշմարիտ է , և ո՛չ թէ սուտ . բոլորովին ճշմարիտ»։

Արդեօք ասիկայ անկեղծութեամբ գրրուած նամակ մըն էր ։ Կրնա՞նք ըսել թէ անանկ էր , քանի որ Պոմարէ քիչ ժամանակէ ետև Աթէհուրույի մէջ մարդ մը մեռցընել տուեր էր զոհի համար , ու ծառակրի մը մէջ դնելով ուրիշ տեղ խրկեր էր ։ Աս բանը քարոզիչներէն ծածուկ պահելու համար՝ պատուիրեր էր , որ ծառակները Մաթաւայի առջևէն անցընելու տեղնին՝ ծովեզերքին բացէն տանին ։ Պոմարէին միտքը աս էր որ , ան գեղեցիկ խոստմունքները Անգղեոյ մէջ եղող հոգաբարձուներուն ընելով՝

բան մըն էր ։ Աթէհուբույի մէջ մարդուն մէկը ձուկի կարթեր շիներ էր մեռած իշխանի մը ոսկորներով , որ ատենօք պատերազմի մէջ սպաննուեր էր ․ Եւ սա իշխանը թագաւորաց ցեղէն ըլլալով՝ անոր ոսկորներուն սանկ մէկ չնչին բանի մը գործածուիլը թագաւորին նախատինք մը կը սեպուէր ։ Ասոր թագաւորը շատ հակամիտութիւն ունէր պատերազմ ընելու , և սա չար մարդիկը՝ որոնք կը հաստատէին թէ իրենք Օրօյէն ներշնչեալ են , կը դրդէին զանիկայ որ պատերազմը սկսի ։ Մարգարէին մէկը՝ որ Մէթիա կը կոչուէր , ըսաւ թէ՝ Օրօ բարկացած է , և կ՚ուզէ որ թագաւորը պատերազմ ընէ Աթէհուբույի մարդոցը դէմ ։ Աս պատերազմը 3 տարիի չափ տեւեց , և կղզին անանկ շփոթութեան վիճակի մէջ էր , որ բոլոր քարոզիչները ստիպուեցան անկէ մեկնելու ։ Պատ․ Նօթ և Հէյուարտ՝ մօտակայ Հուահինէի կղզին գացին ․ իսկ բոլոր մնացածները Հարաւային Նոր Ուէյլսի մէջ Բօրթ Ճ՚աքսըն գացին ։ Ատենէ մը ետքը՝ Բօրթ Ճ՚աքսընի մէջ եղող եղբայրները Բօմարէէն նամակ մը ընդունեցին , որուն մէջ կը

դրէր թէ , շատ իշխաններ ուրիշ կղզի-
ներէ իրեն օգնութիւն ընելու համար մարդիկ բերեր են՝ որ իր ապստամբ հպատակները հնազանդեցընեն , և թէ հիմա ինքը թագաւոր ճանչցուած է . Նոյն ատենն ալ կ'աղաչէր զանոնք որ դառնան գան :

Շատ չանցած Պատ. Հէյուարտէն և Նօթէն ալ նամակներ եկաւ , որոնց մէջ իմացուցեր էին՝ թէ իրենք թագաւորին հետ Էիմէօյի մէջ էին , և թէ խաղաղութիւնը կը շարունակէր կղզւոյն մէջ : Ասոր վրայ քարոզիչներէն շատերը առաջին պատեհութեամբ խեղճ հեթանոսներուն դարձան : Անոնք տաժանելի ճանապարհորդութենէ մը ետև Էիմէօ հասան Հոկտեմբերի վերջին օրը . և թագաւորը ողջ առողջ վիճակի մէջ գտան , նոյնպէս ալ անոր մայրը Իտիան , Պատ. Հէյուարտն ու Նօթը :

Պոմարէ մեծ ուրախութեամբ ընդունեց զանոնք : Եղբայրները շուտ մը տեսան՝ որ Պոմարէ առջինին չափ չէր պատուեր իր կուռքերը : Գուցէ կէս մը Մէթիա մարգարէին կանխաձայնած յաջողութիւնը սուտ ելլելն ըլլայ ասոր պատ-

ճառը , և զուցէ կէս մ՚այ իր նախորդու-թիւնները , և ասանկ մէկ ժամանակին մը մէջ Պ. Նօթին և Հէյուարտին ըն-կերակցութիւնը վայելելը :

Բարեգործները աս տեղ մեծ զուա-րութիւններ պիտի կրէին , քանզի Թա-հիթիի մէջ շինած տուներնուն պէս յար-մար բնակարաններ չունէին :

Իբր աս քարոզիչները չեկած՝ Բօսթընէ ուրիշ նամակ մըն ալ գրեց Պ. Հէն-րիին , աղաչելով որ եկէ գայ : Այս ալ է անոր նամակին մէկ մասը :

«Ո՞ւր են Պ. Նօյթ և իր կինը : Ընդ-հանրապէս բնակութիւնը հո՞ն հաստա-տուած են . սիրտս շատ կը ցաւի անոնց համար : Միւս քարոզիչները ո՞ւր են . անոնց բնակարանը ո՞ւր է : Անոնց հա-մար մեծ տրտմութիւն պիտի չքաշեմ : Քարոզիչներուն ամէն մեկնելէն ի վեր է՝ որ հոս մեր բնակարանները բանի տեղ դրած չենք : Անոնք հարկաւոր են մեզ երջանիկ ընելու : Հիմա մենք սատանա-յութեան մէջ մնացած կը նեղանանք՝ նա-մանաւանդ Նօթի և Հէյուարտն ալ : Իմ աղէկս բարեկամներս՝ հաւատարմութեան տալ աս իմ ձեռքի ըրած աղաչանքներս ,

ու ես երջանիկ պիտի ըլլամ. հոն եկէք, իմ սիրելի բարեկամս, հոն Թուահիթի եկէք: Պտղոց առատութիւնը մեզի համար քիչ մը գինի գտէք ու բերէք: Թէ որ գալու ըլլաք, ես երջանիկ պիտի ըլլամ: Ձեր դիտաւորութիւնը ինծի գրութեամբ իմացուցէք՝ իմ սիրելի բարեկամս: Զանցառութիւն մի ըրէք, քանզի ձեզի համար խիստ տրտում եմ, իմ սիրելի բարեկամս: Գրոյս գէշութեանը մի նայիք:

"Հաղորդութիւն եւ երջանկութիւն կը խնդրեմ ձեզի եւ Հէնրիի տիկինոջն համար. ողջ եղիք ու երջանկութիւն վայելեցէք: Սոյնպէս ալ դուք՝ Թոմարէ, Թերիթիահի, եւ փոքրիկ Էօ *,

"Ամէնքս ալ աս աշխարհիս ճշմարիտ Աստուծոյն Եհովային միջոցաւը փրկուինք — ան որ մեր Ապաւէնն է:

"ՓՕՄԱՐԷ"

Հիմա Էիմէօյի մէջ աս 7 քարոզիչները կային. Պատ. Նօթ, Հէյուարտ, Պիքնէլ, Սքօթ, Ուիլսըն, Տէվիս եւ Հէնրի:

---

* Տեղացիք աս անունները կու տային Պատ. Հէնրիին որդւոցը՝ Սարային, Սամուէլին եւ Էլէանորին:

Անոնց բնակած տեղը Բաբէլթօայի կը կոչուէր , և Թալու նաւահանգստին մօտը կ'իյնար . և նաւերուն խարիսխ ձգելու ապահով և յարմար տեղ մըն էր ։

Հոն տեղը բնակարաններ , պարտէզ-ներ , նաև խիստ պզտիկ մատուռ մըն ալ շինեցին , որուն մէջ ամէն Կիրակի Թա-հիթեցւոց լեզուով պաշտօն կը կատա-րուէր . բայց քիչ ժողովուրդ կու գար մտիկ ընելու , որովհետև իշխաններէն շատերը իրենց ծառաներովը մէկտեղ Թա-հիթի գացեր էին ։ Այս մատուռին շի-նուելուն միայն 24 հայելի ծախք եղաւ , որոնց արժէքը Անգղիոյ մէջ 88 ղուռուշի չափ էր . և զանոնք տեղացիներուն տուեր իրրև վարձք մատուռին շինութեանը օգ-նութիւն ընելնուն ։

Դպրոց մըն ալ բացին . բայց 20 ա-շակերտ միայն կրցան գտնել , և անոնց աւազի վրայ գիր գրել , և տպուած հե-գերէններով կարդալ կը սորվեցընէին ։

Կ'ուզէին որ ուրիշ կղզիներ ալ եր-թան՝ Աւետարանը տարածեն . բայց մը-տածեցին թէ աղէկ պիտի ըլլար որ առաջ նաւ մը շինեն , որ միշտ իրենց հրամանին տակը ըլլայ , և անով մէկ կղզիէն մէկ

ուրիշը երթան ։ Ուստի ան նաւը շինելու համար պէտք եղաւ որ ամէնքն ալ մէկտեղ ըլլան ։ Քանի մը դիպուածներու պատճառաւ ալ համոզուեցան որ Նիմէօյի մէջ մնան ։ Ասոնցմէ մէկը խիստ բերկրաւիթ դիպուած մըն էր , թէ և միւսները ցաւալի բաներ էին ։

Բօմարբէ սկսաւ կամաց կամաց եղբայրներուն դաստիարակութեանցը ուշադիր ըլլալ . և անգամ մը իր կուռքերը արհամարհելը ցուցուց , որ մեծ զարմանք մը պատճառեց ։

Սովորութիւն կար որ երբոր անզգացիք տատրակ մը բռնէին , Բօմարբէին կը բերէին սուրբ կենդանի մը ըլլալուն համար , որպէս զի ուրիշ կերակուրի պէս չուտուի ։ Այլ հարկ սեպուած էր որ Թագաւորը նախ կռոց տաճարը խրկէ զանիկայ սուրբ կրակով եփուելու համար , և դեռ ինքը չկերած՝ անկէ բաժին մը տայ կուռքին ։

Գարնան մէջ 1812ին , մարդուն մէկը տատրակ մը բռներ էր , և Բօմարբէին սպասաւորները երբոր կ'ուզէին որ զանիկայ տաճարը տանին , Թագաւորը զանոնք ետ կանչեց , և հրամայեց՝ որ զանիկայ իր խոհանոցին փուռին մէջը եփեն ,

և ճաշին ժամանակ ըմպան սափորակը իր առջևը բերին :

Սպասաւորները կարծեցին թէ Թագա-ւորը խնթեցեր է , կամ կատակ կ՚ընէ . բայց երբոր նորէն հրամանը կրկնեց , սպա-սաւորեցան անոր ուզածին պէս ընելու :

Ճաշի ժամանակ Թագաւորին բարե-կամներն ու սպասաւորները լռութեամբ բոլորտիքը կեցեր կը սպասէին՝ որ տեսնեն թէ յանկարծ ջիղերը կծկելով ցնցական տկարութիւն մը պիտի բռնուի , կամ մեռած պիտի իյնայ : Պարապ տեղը Թագաւորը հրաւիրեց զանոնք որ իրեն հետ ուտեն , և զանոնք քաջալերեց ըսելով թէ՝ կռուո-քերը կարողութիւն չունէին իրենց վնաս մը հասցընելու : Սպասաւորները այնպէս-ները վերցուցած սառնմանին , զարմանքի մէջ մնացեր էին թէ ինչպէս եղաւ որ դեռ չպատժուեցաւ . և աներկբայ յու-սով կը սպասէին , որ հետևեալ օրուան պիտի չմեռնայ՝ պատուհաս մը պիտի գայ անոր վրայ : Իսկ Ռաւմարէ տեսնելով որ աս բանը ընելուն համար իր վրայ պա-տուհաս մը չեկաւ , ալ աւելի հաստա-տեց իր միտքին մէջը որ իր կուռքերը ա-նարգէ :

Աս պարագայիս մէջ Բօմարէին վարմունքը այլ աւելի զարմանալի բան մը պիտի ըլլար, թէ որ տեղացիներէն մէկ ուրիշ մարդ մը ասկէ աւելի յանդգնական փորձ մը ընելու ձեռք չզարնէր : Աս տեղացի բանձնիս՝ Ատափաթէայի թագաւորին եղբայրը Ռահին էր : Ասիկա քիչ մը առաջ Բօմարէ թագաւորին հետ Թահիթիի մէջ գտնուած ատենը, երազին մէջ տեսեր էր թէ՝ մեծկակ վայրենի կատու մը ճանկերը բացած վրան կը վազէ , և կատաղաբար իր երեսը կը ճանկռթէ , մեծ խռովութեամբ կ'արթըննայ . բայց նորէն քունը տանելով՝ նոյն երազը կը տեսնէ . և դարձեալ արթըննալէն ետև՝ նորէն կը քնանայ , ու երրորդ անգամին ալ նա նոյն երազը կը տեսնէ : Անատենը ինքնիրեն կ'ըսէ թէ՝ « Զիս այսպէս անհանգիստ ընողը իմ չար աստուածս է , զանիկայ բնաջինջ ընեմ »: Հետևեալ օրը կ'առնէ ան ծառի կոճղը՝ որուն երկրպագութիւն մատուցած էր մինչև նոյն կէտը , և փուռի մը բոցերուն մէջը նետելով , անոր կայծերուն վրայ խել մը հացածառի պտուղ կ'եփէ : Տեղացիք զարմանքի մէջ կը մնան տեսնելով անոր յանդգնութիւնը՝

որով իրենց կուռքը հրոյ ճարակ ըրաւ . և ալ աւելի կ'ապշէին , երբոր կը տեսնէին որ ան կուռքին մոխիրին վրայ եփուած հացածառի պտուղները կ'ուտէ : Աս բանիս համար Թոմարէն խիստ կը սրդողէ Թահիթին . բայց շատ չանցած՝ անոր ըրածին պէս բան մըն ալ ինքը կ'ընէ , ինչպէս որ վերը տեսանք :

Աս միջոցիս՝ Թոմարէ հրապարակաւ ըսաւ թէ ալ անկէ ետև միայն մէկ կնիկ մը պիտի ունենայ . և որոշեց որ Մահաթեայի թագաւորին մեծ աղջկանը հետ ամուսնանայ . ուստի պատգամաւոր խրկեց ան ինքնակալին՝ որ իր դիտաւորութիւնը անոր իմացընէ , և խոստմունք ալ ըրաւ որ խումբ մը ծառակուրներ խրկէ · մէկ քանի իշխաններով՝ որ թագուհին առնեն իրեն բերեն : Մահաթեայի թագաւորը ուրիշ աղջիկ մըն ալ ունէր Թէերա անունով , որ իր քրոջմէն քիչ մը պզտիկ էր և անկէ շատ գեղեցիկ էր : Ասիկայ իր հօրմէն հրաման խնդրեց որ անմիջապէս Թոմարէին այցելութեան երթայ . ու հրաման առնելուն պէս՝ բազմաթիւ իշխաններու՝ երիկ մարդոց ու կնիկ մարդոց հետ ընկերացած ելաւ գնաց : Երբոր Թոմարէ տեսաւ զա-

նիկայ, խիստ շատ հաւնելով միտքը դրաւ որ զանիկայ իրեն կնիկ ընէ : Հաւանական էր որ Թէերա իր մեկնելէն առաջ կը յուսար թէ Ռոմարէ աս բանը պիտի ընէր : Ի՛նչ և իցէ Ռոմարէ աս իր ընելու բանին համար վախցաւ, որ չըլլայ թէ Սախաթէայի թագաւորը սրտմտի, ու իրեն դէմ պատերազմ մը բանայ . աս պատճառաւ ըսաւ Թէերայէն . Դուն իմ Թագուհիս պիտի չըլլաս . քու մեծ քոյրդ պիտի ըլլայ իմ Թագուհիս . իսկ դուն իմ կինս պիտի ըլլաս" :

Ուստի ինչպէս որ խոստացեր էր, Նաւատորմիղը խրկեց որ անոր մեծ քոյրը իրեն բերեն . երբոր անիկայ եկաւ, Ռոմարէ վահինէ կոչուեցաւ, որ ըսել է՝ Ռոմարէուհի, և իր քրոջմէն աւելի պատուով կը մեծարուէր : Սակայն թէ և Ռոմարէ իր կնկանը քրոջը Թագուհւոյ աստիճանի պատիւ տուաւ, բայց մենք զանիկայ Թագուհի պիտի չանուանենք աս պատմութեանս մէջ . քանզի ուրիշ պատմութիւններու մէջ ալ անիկայ աս տիտղոսով չկոչուիր : Ուստի մենք Թէերան՝ Թագուհի պիտի անուանենք, և Ռոմարէ վահինէ՝ Թագուհւոյն գահը : Անկէ ետքը

Ռօմարէ վահինէն շատ անգամ պիտի յիշուի , և պիտի տեսնէք թէ անիկայ խիստ երևելի մէկ մըն էր : ՝Նաև Հուա-հինէ կղզւոյն թագուհին էր , և ինքը հոն չընակելուն համար՝ իր տեղը փոխա-նորդ կառավարիչ մը դրուած էր :

Վերջապէս Թէրա թագուհին աղջիկ մը ծնաւ : Ռօմարէին ալ իր նորածին աղջկանը հետ օրինաւոր կերպիւ վարուիլը մեծ ակնկալութիւն կու տար : Նաւաջները խիստ զարմանալի հրամաններ կը տրուէր նորածին արքայորդւոյ մը համար : Ժա-մանակ մը երախային եղած տանը մօտ անցուանքը կրակ վառելը կ'արգիլուէր . ծառակուր մը ծովեզերքէն չէր կրնար զա-տուիլ , անանկ որ ձուկի կարօտ կը մը-նային . և մարդ մը կարող չէր արքայ-որդւոյն քովը երթալու , բայց միայն սուրբ զգեստներ հագած սուրբ մարդիկը կրը-նային անոր մօտենալ : Ռօմարէ աս սո-վորութիւններէն մէկն ալ 'ի գործ չդրաւ , հապա քարոզիչներուն ըսաւ թէ՝ ինքը կ'ուզէ որ իր աղջիկը Անգղիացւոյ աղջկան մը պէս կրթուի . աս պատճառաւ աղա-չեց անոնց որ գաւաթներ , պնակներ , և դրգալներ տան , որ զանիկայ Անգղիա-

ցուոց սովորութեանը համեմատ կերակրէ ։ Ըս աղջկան անունը Ըհիմաթա էր, որուն վրայով ասկէ եւս շատ բաներ պիտի ստորագրուի ։

Յուլիս 18, 1812ին՝ Բոմարշէ խօսակցութիւն մը ըրաւ քարոզիչներուն հետ, և սաիկայ մեծ ուրախութեան պատճառ եղաւ քարոզիչներուն սրտին ։ Ընիկայ ըսաւ անոնց թէ՝ «Դուք իմ սրտիս խորհուրդները չէք գիտեր, ոչ ալ ես ձերինները, բայց Աստուած գիտէ» ։ Ըհմ սա կերպով սկսեց իր խօսակցութիւնը ։ Հարկ չէ հոս տեղ բոլորն ալ կրկնել, բայց սս խօսակցութեանս մէջ ըսաւ. «Կ'ուզեմ որ զիս մկրտէք, քանզի ես հաստատ կերպով միտքս դրած եմ Եհովային յարելու, նաև ձեզի՝ որ անոր ժողովուրդն էք ։ Կը խնդրեմ ձեզմէ որ ինծի համար աղօթող ըլլաք» ։

Եղբայրներէն մէկը պատասխանեց ու ըսաւ. «Մենք ըսնա չդադարեցանք քեզի համար աղօթք ընելէն. և յիրաւի երբոր տեսնէինք՝ որ քու սիրտդ Աստուծոյ տուած ես, մեծապէս պիտի ուրախանայինք, ու այնուհետև քեզ ալ պիտի մկրտէինք» ։

Ռոմարէ նորէն պատասխան տուաւ ըսելով. "Դուք իմ սիրտս չէք գիտեր, ոչ ալ ես ձերինը. բայց Ան որ մարդիկը ստեղծեց, գիտէ անոնց սրտերը. Նաև իրարու հետ ուխտ կամ՝ իրաւ խօսելնին ալ գիտէ":

Անատենը եղբայրները ըսին. "Քարոզիչները սովորութիւն ունին՝ որ իրենց առաջին անգամ ուզելնուն պէս շուտ մը հեթանոսները չեն մկրտեր, այլ կը սպասեն, որ ատեն մը Աստուծոյ վերաբերեալ բաները անոնց սորվեցընեն, և անոնց վարքը քննեն՝ որ տեսնեն թէ իրենց չար ճամբաները իրաւցընէ ձգա՞ծ են":

Ռոմարէ պատասխանեց. "Յօժար կամօք պիտի ընեմ ինչ որ վայելուչ կը սեպէք, ու երբոր յարմար կը դատէք պիտի մկրտուիմ":

Աս խօսակցութեանս մէջ Ռոմարէ ըսաւ. "Կ'ուզեմ մէկ մատուռ մը շինել. — քանզի ան առջի շինուածը խիստ պզտիկ էր:

Քարոզիչները առաջարկեցին որ սպասեն, մինչև որ կղզիներուն մէջ եղած խռովութիւնը վերջանայ. բայց Ռոմարէ պատասխանեց. "Աս բանը Հոգերնիս

թիէն , և Ռոմարէն հրաւիրեցին որ դառնայ Թահիթի երթայ , խոստանալով որ տեղացւոց ու իրեն մէջտեղը եղած բոլոր վէճերը բարեկամօրէն վերջացընեն . քանզի Ռոմարէին և անոր հպատակներուն մէջտեղը առջի եղած խաղաղութիւնը հաստատ և հաւատարիմ չէր : Քարոզիչները մեծապէս տրտմեցան անոր Թահիթի երթալուն համար . քանզի կը վախնային որ չըլլայ թէ հոն իրեն պատահելու փորձութիւններուն զիջանի :

Այս միջոցիս իրենց մէկ երիտասարդ ծառային երջանիկ մահուամբը քաջալերութիւն առին յուսալու՝ թէ ուրիշներն ալ դարձի պիտի գան : Այս ծառան թէ և իր հիւանդութեանը սկիզբը անոնց ըսածներուն ունկնդրութիւն չըրաւ . բայց վերջապէս զղջում մի եկած կ'երևէր . և Քրիստոսի միջնորդութեամբը իր մեղքերուն թողութիւն կը խնդրէր , մինչև որ ալ խօսելու կարողութիւնը չմնաց :

Եղբայրները Ռոմարէէն նամակներ ընդունեցին անոր մեկնելէն ետքը . բայց անոր առջի գրածներուն հետ բաղդատելով շատ տարբեր էին : Այս նամակներէն մէկուն մէջ կ'ըսէ :

«Դուք անշուշտ պիտի փրկուիք, դուք Աստուծոյ ժողովուրդն եղած էք. բայց ես կարելի է որ դժոխքը երթամ. Աստուած ինծի գուցէ չողորմի. ես չար մարդ մըն եմ, իմ մեղքերս մեծ ու մեկ-մեկու վրայ դիզուած են»։

Ուրիշ նամակի մը մէջ կ՚ըսէ.

«Անցեալ երկուշաբթի առաւօտուն ժամը 3ին հիւանդացայ։ Մեծ մտատանջութեան մէջ եմ. բայց թէ որ մեռնելէս առաջ Աստուծոյ շնորհքը միայն ձեռք բերելու ըլլամ, զիս երջանիկ պիտի համարիմ։ Բայց աւա՜ղ, թէ որ մեղքերուս թողութիւն չստացած մեռնելու ըլլամ, յիրաւի բանս գէշ պիտի ըլլայ»։

Բօմարէ իր երրորդ նամակին մէջ այսպէս կը գրէ.

«Անդադար աղօթք կ՚ընեմ Աստուծոյ։ Առանց ուրիշ բան մը խնդրելու, միայն աս կ՚ուզեմ որ Յիսուս Քրիստոսի միջոցովը փրկուիմ։ Իմ սրտիս բաղձանքը աս է՝ որ Եհովայի ժողովուրդին մէկն ըլլամ, և որ Աստուած ինծմէ դարձընէ իր բարկութիւնը՝ որուն արժանացեր եմ իմ չարութիւններուս, անոր վրայով տգէտ ըլլալուս, և անթիւ եղեռնագոր-

ծուլթիւններուս պատճառաւը" :

Քանի մը ամիս ետև՝ կ'երևի թէ Ռօմարէ իր մեղայը թողութեան քաղցրայայա յոյս մը կ'ունենայ , քանզի ուրիշ նամակի մը մէջ կ'ըսէ .

"Եր համարձակիմ իմ բոլոր ըրած յանցանքներուս Յիսուս Քրիստոսի երթալ , թէ և չարագործութեան կորզմէ ինծի նմանող մը ըլլայ , ոչ ալ յանցաւորութեան կողմէ , և ոչ կամակոր չարութեան , և ճշմարտութիւնը մերժելու կողմէ ինծի նման մէկը կայ , և կը յուսամ թէ աս չար մարդը Եհովայ Յիսուս Քրիստոսին միջոցովը պիտի փրկուի" :

Եւ հիմա քարոզիչները կը խորհէին թէ Ռօմարէ ճշմարտապէս դարձի եկած ըլլալու է . քանզի իր մեղքերուն համար խիստ շատ վշտացած կ'երևնար : Ասկէ ՚ի զատ իր ամէն պարտաւորութիւնները ընելու փափաք մըն ալ կը ցուցընէր . քանզի իր վերջին նամակին մէջ՝ որն որ վերը յառաջ բերինք , կ'ըսէ թէ , "Աթահիթիի մէջ շատ գողեր կան , մեծ պուրակ կտաւ , և գրքեր , և ուրիշ բաներ գողցան : Արդեօք ան գողերը մեռցընելով մեղանչեմ : Զեր կարծիքը

տեղն 'ի տեղը ինծի գրեցէք , իմ սիրելի բարեկամներս" :

Ատեն մը Պոմարէ իրեն վնաս մը չը-տուող մարդիկը կը սպաննէր · բայց հիմա իր բանտերը գողցողներուն հետ անգթու-թեամբ վարուելու կը վախնար : Նաև անիկայ Կիրակի օրերը սուրբ կը պահէր , և կը ջանար իր բոլոր բարեկամները հա-մոզելու՝ որ Աստուծոյ դառնան : Թէպէտ և անիկայ մէկ Թագաւոր մըն էր , բայց շատերը ծաղր կ'ընէին զանիկայ իր կրօն-քին համար , և սաստիկ բարկութեամբ կ'ըսէին անոր թէ՝ Թահիթիի մէջ պա-տահած բոլոր խռովութիւններուն պատ-ճառը ինքն էր · որովհետև զինքը Թա-գաւոր նստեցընող Օրօն բարկացուցեր էր :

Քարոզիչները զարմանքի մէջ մնացեր էին , մտածելով թէ ինչպէս եղեր էր որ Պոմարէին պէս չար մարդ մը Աստուծոյ դարձաւ · բայց աս ալ գիտէին՝ որ Քրիստոս եկաւ մեծ մեղաւորները փրկելու · ուստի անոր փոփոխութեանը փառքը՝ Աստուծոյ մեծ և հրաշագործ շնորհացը կու տային , որ միայն կարող է ասանկ մեծ ու զարմանալի մեղաւոր մը դարձի բերելու :

## ԳԼՈՒԽ ԺԲ

### Բերկրալի լուրեր :

Հիմա քարոզիչները Ծիմէօյի ժողովուրդը խիստ դիւրապատրաստ գտան իրենց վարդապետութեանը ունկնդրութիւն մատուցանելու : Նաև լսելով՝ որ Թահիթիի ժողովուրդն ալ ճշմարիտ Աստուածը գիտնալու եռանդ է , որոշեցին որ եղբայրներէն երկուքը Թահիթի երթան , և տեսնեն թէ աս ուրախալի լուրը ճշմարիտ է :

Պատ. Սքօթ և Հէյուարտ աս գործքով խրկուեցան : Անոնք Թահիթի հասնելով՝ նոյն գիշերը տեղացւոյ մը տուն քնացան , և առաւօտուն կանուխ ելան՝ ու իրարմէ զատուելով մացառներուն մէջը գացին որ առանձին տեղ մը գտնեն ու աղօթք ընեն : Երբոր Պատ. Սքօթ մինակ էր , ձայն մը առաւ , և անիկայ աղօթք ընելու պէս ձայն մը կ'երևէր . մօտեցաւ ան տեղին՝ ուսկից որ ան ձայնը կու գար , և լսեց որ մէկը Թահիթեցւոց լեզուով ճշմարիտ Աստուծոյ փա-

ռարանութիւն կը մատուցանէր ։ Ըսփկայ աղջի անգամն էր որ ինքը Թահիթեցւոյ մը բերնէ սաանկ խօսքեր լսեց ։ Ուրախութեան արտասուքներ կը հոսէին անոր երեսն 'ի վար , և կը ցանկար ան քրիստոնեայ մարդուն գթկածութեամբ փաթթուելու . սակայն լուռ կեցաւ ու սպասեց մինչև մարդուն աղօթքը վերջացընելն ու երթալը . ու ետքը ծնկան վրայ գալով՝ ջերմեռանդութեամբ փառք տուաւ Ըստուծոյ՝ որ իր Սուրբ Հոգին շնորհեց ան խեղճ հեթանոսներուն ։ Պատ. Սքօթ տուն դարձաւ , ու իր բարեկամը Պատ. Հէյուարտը հոն գտնելով՝ աս ուրախալի դիպուածը անոր պատմեց ։ Ըսոնք հարցուփորձ ըրին տեղացիներուն՝ թէ ով կրնար ըլլալ ան մարդը՝ որ կռոց երկըրպագութիւն ընելէն հրաժարեր էր . անոնց պատասխանեցին թէ Օիթօ անունով մէկ մըն էր ան բանը ընողը ։ Ուստի զանիկայ փնտռեցին , և իր պատմութիւնը իրմէ իմացան ։ Օիթօ ժամանակով քարոզիչներուն սպասաւորն է եղեր , անոնց Թահիթիի մէջ եղած ատենը , բայց ան Քրիստոսին հաւատքի չէ եկեր . վերջը Թագաւորին Օրինակին հետևելով՝ բան սոր-

վելու փափաք ունեցեր է ։ Ուստի Թուա-Հինէ անունով մարդու մը քով գացեր և անկէ խնդրեր է՝ որ իրեն քրիստոնէութիւն սորվեցընէ ․ քանզի անիկայ շատ տարի սպասաւորութիւն ըրած է եղեր քարոզիչներուն ։ Թուահինէ ալ Օիթօյին ունեցած մտքին վրայ ըլլալով՝ երկուքնին մէկտեղ շատ անգամ լեռանց առանձին տեղուանքը իրար կը գտնեն, աղօթք կ՚ընեն ու կը խօսակցին եղեր ։ Ասոնց վարմունքին մէջ եղած փոփոխութիւնը շուտով յայտնի ըլլալով իրենց քաղաքացիներուն ․ ոմանք ծաղր կ՚ընեն եղեր զանոնք, մէկ քանիներն ալ անոնց աղօթքի ժողովներուն գտնուելով՝ հաճութիւն կու տան որ կռոց երկրպագութիւնն ու ամէն չար սովորութիւնները թող տան, և Կիրակի օրը սուրբ պահեն ։ Ահա Օիթօ ասանկ լուրեր տուաւ քարոզիչներուն ։

Պատ․ Աքօթ անմիջապէս նամակ մը գրեց ու Էյմէօյի մէջ եղող եղբայրներուն աս բարեյաջող դիպուածներուն լուրը տուաւ ։ Եղբայրները աս նամակը կարդալով՝ անոնց աչքերէն ուրախութեան արտասուքներ կը հոսէին ։ Հիմա կ՚իմանային որ իրենց 16 տարուան աշխատու-

տակիս համար ինչ միջոց բանեցուցին :

Ռոմարէին հրամանաւը շինուած մատուռը Յուլիս 25 , 1813ին բացուեցաւ հրապարակական երկրպագութեան համար , Ճիշդ Ռոմարէին հրաման ընելէն տարի մը ետքը : Մատուռին բացուած ատենը Թագաւորը հոն չէր . հապա դեռ Թ'ահիթիի մէջ էր : Երեկոյեան պաշտամունքը լմննալուն Պաա . Տէվիս ծանուցած ըրաւ որ հետևեալ իրիկունը մատուռը գան ան ամէն մարդիկը՝ որոնք անկեղծութեամբ իրենց կուռքերէն հրաժարելու փափաք ունէին , որպէս զի անոնց անունները գրքի մը մէջ արձանագրէ : Սահմանուած ժամանակին 40 հոգւոյ չափ մարդիկ եկեր կը սպասէին : Եղբայրները աղօթք ըրին ու երգ երգեցին . և Պաա . Նօթ համառօտ ատենախօսութիւն մը ըրաւ , և ըսաւ որ առաջ գան ան ամէնը՝ որոնք իսկապէս կը փափաքէին միայն Ճշմարիտ Աստուծոյ ծառայելու : 31 հոգի հաճութիւն տուին որ իրենց անունները արձանագրուին , որոնց մէջն էին Օիթօն և Թ'ուահինէն : Եղբայրները աս փոքրիկ ժողովը հրաւիրեցին ատէպ ատէպ մատուռը գալու , ու առանձին բան սորվելու :

Անոնցմէ մէկը որ Մուի կը կոչուէր , շուտով իր կենացը վախճանին կանչուեցաւ ։ Աս ողորմելի պատանին մեծ սէր կը ցուցընէր Աստուծոյ խօսքին և աղօթք ընելու , ու մեղաւորներու մէջ մնալով զաղտուկ աղօթք կ՚ընէր իր կարողութեանը չափ ։ Իր խուցին մէջ գտնուած ատենը՝ երբոր մարդիկը փողոցէն կ՚անցնէին դպրոցը կամ մատուռը երթալու , անիկայ կ՚ըսէր . “Իմ ոտքերս չեն կրնար երթալ . բայց իմ սիրտս ձեզի հետ կ՚երթայ” ։

Աս ատեններս մէկ խիստ տարբեր բընաւորութիւն ունեցող անձ մը մեռաւ ։ Ասիկայ Իտրիան էր , որ միշտ Քրիստոսին անհաշտ թշնամի մը եղեր էր . և ուրիշներուն ալ արգելք եղած էր՝ որ Անոր վրայ ունեցած հաւատքնին չխոստովանին ։ Խել մը մարդիկ որ անոր կենդանութեան ատենը կը վախնային իրենց քրիստոնէութիւնը յայտնելու , անոր մեռնելուն պէս՝ համարձակ դաւանեցան իրենց կրօնքը ։ Յիրաւի թէ և միշտ սէր կը ցուցընէր քարոզիչներուն , բայց անոնց Տէրոջը Յիսուս Քրիստոսին սիրոյն համար չէր ասիկայ ։

ժողովուրդ. Ասիկայ պատուանուն մըն էր, բայց Նախատելու մտօք կը բանեցը-նեն։ Ամէն երկիրներու մէջ Աստուծոյ ժողովուրդը ծաղր կ'ըլլայ ամբարիշտնե-րէն։ Անոնք շատ անգամ կը կոչուին, “Սուրբ, աղանդաւոր, աւետարանական”, եւն. բայց ասանկ անարգութիւնները ան-շուշտ պատիւ կ'ընեն մարդուս. քանզի Քրիստոս ինքը Բեեղզեբուղ կոչուեցաւ։ (Մատթ. ժբ. 24։)

Աս տարիներս շատ մարդիկ ուրիշ կղզիներէ Էիմէօյի մէջ ժողվուած էին, և անոնցմէ ոմանք կը ցանկային քարո-զիչներէն բան սորվելու, և աս պատ-ճառաւ եկան անոնց մօտ բնակեցան։ Աս մարդիկը Էիմէօ եկած էին՝ որ Պօմարէին օգնութիւն ընեն իր պատերազմներուն մէջ. բայց Աստուած իր իմաստութեամբը՝ զանոնք հոն բերեր էր, որ փրկութեան խաղաղարար աւետիսը իրենց երկիրները տանին։ Նոյն տարին անոնցմէ ոմանք Ուլիաթէա և Հուահինէ դարձան, ուս-կից որ եկեր էին։

Պատ. Նօթ և Հէյուարտ Էիմէօյի մօտը կեցած նաւ մը հեծնելով ան կղզի-ները տեսնելու գացին, և ան տեղերուն

ժողովուրդները տեսան որ իրենց բնակչան յօժարութեամբը խիստ դիւրապատրաստ էին՝ թէ քարոզութիւն մտիկ ընելու, և թէ իրենց կուռքերը անարգելու կողմէ, զորոնք չար և յիմար աստուածներ կը կոչէին։ Երկու ամիսէն ետև վերոյիշեալ երկու եղբայրները ուրախալի լուրերով Խիմէօ դարձան։ Քարոզիչներէն ոմանք յօժար սրտիւ կ'ուզէին մօտակայ կղզիները երթալ բնակիլ, բայց նաւուն շինութիւնը գլուխ տանելու համար ստիպուեցան ամէնքնին մէկտեղ մնալ։ Նաև ստէպ ստէպ հիւանդանալնուն համար կը վախնային իրարմէ զատուելու։

Քարոզիչները կը փափաքէին մկրտել Խիմէօյի մէջ եղող քրիստոնեայ մարդիկը՝ որոնք ճշմարտապէս դարձի եկած կ'երևնային․ բայց որովհետև ամէնէն առաջ Ռօմարէն մկրտուիլ ուզեր էր, իրենք ալ յարմար դատեցին որ աս բանս գրութեամբ մը անոր իմացընեն։ Սակայն Ռօմարէին վարմունքին վրայով գէշ լուրեր առած էին, ու մեծապէս կը վշտանային, մանաւանդ անոր տարապայման արբեցողութեանը համար, որ անիկայ միշտ աս մեղքիս անձնատուր եղած էր։

Անոր գրած նամակնուն մէջ աղաչեցին որ մտածէ անգամ մը՝ թէ ի՛նչ վիճակի մէջ կը գտնուի, և թէ մկրտուելու յարմարութիւն մը ունի՞ :

Ռօմարէ անոնց պատասխան գրած նամակին մէջ ըսաւ թէ՝ ինքը շուտով Եգիպտոս պիտի դառնայ, և թէ չուզեր որ իր գալէն առաջ մէկը մկրտեն. Հապա ապըսպրեց եղբայրներուն որ սպասեն, ու տեսնեն թէ արդեօք ան մարդիկը անկեղծութեամբ յարած են քրիստոնէական կրօնքին :

Եղբայրները Ռօմարէին վրայ ունեցած նուն չափ՝ ուրիշներուն վրայ ամենևին կասկած մը չունէին թէ զիրենք խաբած պիտի ըլլան :

Ռօմարէ իր անձնասէր բնաւորութեանը համար կ'ուզէր որ ան մարդոցը մկրտութիւնը ուշանայ, մինչև իր հոն դառնալը. բայց կ'երևի թէ անիկայ հպարտութեան ոգիէ մը շարժեալ՝ կը ցանկար որ առաջ ինքը մկրտուի. և գուցէ եղբայրները անիրաւութիւն ըրած են անոր կամքը կատարելով :

Թագաւորը 2 տարի դուրսը մնալէն ետև՝ Եգիպտոս դարձաւ. և թէպէտ ըսաւ

Թէ խիստ շատ կը փափաքէր մկրտուելու , բայց եղբայրները այնչափ զգուշեր էին անկէ , որ չէին ուզեր անոր խնդրանացը զիջանիլ . այսու ամենայնիւ անոր ժողովուրդէն մէկը չմկրտեցին : Անիկայ տակաւին հաստատ որոշած էր իր մտքին մէջ անուամբ քրիստոնեայ ըլլալ . բայց աւաղ , որ նորոգուած սրտի մը նշոյլը անգամ չէր երևնար անոր վրայ :

## ԳԼՈՒԽ ԺԳ

### Կոստերոն Հրապարակախօսութիւնը :

Աշիմէօյի բնակիչներէն կրթութեան փափաք ունեցողներուն թիւը օրէ օր աւելնալու վրայ էր : Աս միջոցիս 800էն աւելի գրուած էին , և ամէն օր դպրատուն գնացող 300 աշակերտ կար , որոնց մեծ մասը չափահաս մարդիկ էին :

Աս տարիներս խիստ զարմանալի դարձ մը եղաւ , որով Հեթանոսաց մէջ Սատանային զօրութիւնը մեծապէս խախտեցաւ :

ծապէս զարմանալով կ՚ըսէին թէ արդեօք իր խոստմունքը պիտի կատարէ՞ · մէկ կողմէ ալ կը վախնային որ եթէ իր խոստմունքը պահէ , ժողովուրդը խիստ պիտի կատղի իրենց պատուական սեպուած կուռքերը այրելուն համար :

Հետեւեալ առաւօտուն Բաթիր և անոր բարեկամները ծովեզերքին մօտ փայտեր դիզելու վրայ էին · կէս օրին ալ զանոնք ձեղքեցին , և կռոց տաճարին քովը մէկ մեծ դէզ մը ըրին :

Իրիկուան դէմ հեթանոսներէն բազմաթիւ մարդիկ ժողվուեցան ան տեղը , նոյնպէս ալ քարոզիչներէն ու անոնց բարեկամներէն շատերը : Դեռ արեգակը մարը չմտած՝ Բաթիր հոն եկաւ , և հրրամայեց իր ծառաներուն որ ան փայտի դէզը բռնկցընեն · եաքը ինքը կռատունը մտաւ , և կուռքերը մէկէն 'ի մէկ դուրս բերաւ , ինչպէս որ առաջ ալ շատ անգամ ըրած էր · բայց աս անգամ զանոնք գովաբանելով դուրս չհանեց առջի ատեններուն պէս , հապա զանոնք կարգաւ գետնին վրայ շարելով՝ անոնց վրայի լաթերը պատռեց , և զարդերը հանեց , ու ետքը մէկիկ մէկիկ բոցերուն մէջը

նեանց . և ամէն մէկ կուռքը կրակը նետած ատենը՝ անոր անունը կու տար , և անոր յիմարական պատմութիւնը կը զրուցէր , ձայն տալով ժողովուրդին որ տեսնեն՝ թէ ինչ անօգնական կոճղ մըն է ։ Արեգակը՝ իր մարը բնաւ մտած չէր ասանկ սպառիչ բոցերէն աւելի ուրա-խալի տեսարանի մը վրայ , որով Էջիմէօյի գլխաւոր կուռքերը բնաջինջ եղան ։

Հեթանոսները աս տեսած բաներնուն վրայ ապշած տուներնին դարձան ։ Ոմանք կը սպասէին թէ կուռքերը շատ չանցած իրենց բարկութիւնը պիտի յայտնեն , նոյն ատենը ուրիշներն ալ կուռքերուն զօ-րութիւն մը ունենալուն վրայ առջինէն աւելի կասկածի երթալով , իրենց կուռ-քերը այրելու և անոնց մեհեանները քան-դելու ձեռք զարկին ։ Բաթիին ալ աս ժամանակէս սկսաւ մեծ փութով քարո-զիչներուն ունկնդրութիւն ընել , և Քրիս-տոսի օրհնեալ Աւետարանին համեմատ քալել ։

Թագուհւոյն քոյրը գրեթէ աս նոյն ատենները հրապարակաւ իր կուռքերը անարգելը ցուցուց ։ Առջի տարին բազ-մաթիւ ծառաներով Էջիմէօ հասաւ , ո-

կը պատուէին կերակուրը ։ Մարաէ տանե-
լու, խիստ բարկացան . այսու ամենայնիւ
չհամարձակեցան կերակուրը առնել հոն
տանելու, անգամ մը քրիստոնէից Նա-
ւածոյն նուիրուած ըլլալուն համար ։

Ըստ չանցած՝ Թագուհին ու անոր
քոյրը ընկերութեամբ Թահիթի գացին ։
Պօմարէ անոնց գիրք մը տուաւ իր դե-
ւահամակ աղջկանը տանելու՝ որ արդէն 3
տարեկան էր, և իր դայեակին հետ Թա-
հիթիի մէջ կը բնակէր ։

Թահիթիի մէջ եղող կուապաշտները
լսելով որ Թագաւորը իր պզտիկ աղջկանը
գիրք մը խրկեր է, իմացան որ Թագաւորը
իր աղջիկը նոր կրօնքին համեմատ դաս-
տիարակելու միտք ունի . ուստի ալ առ-
ջիններ աւելի հաստատ որոշեցին՝ որ Պօ-
մարէն Թագաւորութենէ հանեն ։

Իշխանները ըստ սովորութեան՝ Թա-
գուհւոյն ու անոր քրոջը Թահիթի հա-
սած ատենը խնճոյք ըրին ։ Կուրմերէն
ոմանք տեսնելով որ աս իշխանուհիները
իրենց պատուածները կ՚արհամարհէին,
սկսան յանդիմանօք խօսիլ անոնց հետ,
և անոնց արհամարհած պատուածներուն
բարկութեամբը պատահելիքներ ըսել ա-

նոնց , և նոյն ատենը հոն մօտ տեղ մը կախուած քանի մը փունջ կարմիր փե֊տուրներ կը ցուցընէին , որոնք իրենց աս֊տուածներուն նուիրուելու համար . որո֊շուած էին ։

Փարէֆատու աս խօսքերը լսելով աղա֊ղակեց . « Աս փետուրներն են անզօրաւոր բաները՝ որոնց բարկութեամբը մեզի բո֊պառնալիքներ կ՚ընէք ։ Հիմա շուտով բանը պիտի ստուգեմ » ։ Աս ըսելով անմի֊ջապէս յափշտակեց ու առաւ զանոնք , և հոն մօտ եղած գետնափոր փոսի մը մէջ նետելով՝ հրոյ ճարակ ըրաւ զանոնք ։

Յիրաւի սոսկալի անխոհեմ գործ մըն էր ։ Նոր վրայ կռապաշտները սաստիկ զայրացան . և թէպէտ չհամարձակեցան նոյն տեղը իրենց վրէժը առնելու , բայց մէկ պատեհութեան մը կը սպասէին որ իրենց դիտաւորութիւնը գլուխ տա֊նին ։

Իւ քանի որ դեռ Թագուհին ու անոր քոյրը Թահիթիի մէջ էին , Բօմարէ Նչի֊մեօյի շրջականները պտըտելու ելաւ . և իր միտքը աս էր՝ որ իր ամէն գացած տե֊ղուանքը հեթանոսները կռապաշտութենէ դարձընէ ։ Զարմանալի բան մը պիտի

երևնայ ընթերցողին , երբոր Ռօմարէին վրայով առջի ստորագրուածները կարդալէն ետև , տեսնէ թէ անիկայ Աստուծոյ գործին համար այսչափ կ՚աշխատի : Քարոզիչներն ալ տարակուսանաց մէջ էին անոր վրայով . երբեմն կը յուսային որ անիկայ Աստուծոյ զաւակ մը եղած էր , և երբեմն կը վախնային որ անիկայ Սատանայի զաւակ մըն էր :

Աս ճամբորդութիւնը ըրած ատենը քարոզիչներուն նամակ մը գրեց , որուն մէջ այսպէս կ՚ըսէ .

«Ուրախ եմ մեծապէս որ ժողովուրդին երևելիները ուշի ուշով Աստուծոյ խօսքին մտադրութիւն կ՚ընեն : Աս ճամբորդութեանս մէջ իմ գործս աս եղաւ , որ Աստուծոյ խօսքը անոնց գիտցընեմ . և ահա՛ անոնք մտիկ ըրին , և զանիկայ պատուեցին : Իսկ թէ որ ասոր հակառակը պատահէր , խիստ շատ պիտի տրտմէի : Վաղուան օրը նոր ամսուն սկիզբը ըլլալով՝ մեր աղօթքի ժողովը պիտի գումարուի . ուստի թէ որ անոնցմէ ոմանք ուզելու ըլլան իրենց անունը արձանագրել , ինչպէս ըսեմ , գրեմ . շուտով ձեր կար-

ծիքը ինծի գրեցէք , և ինծի իմացուցէք թէ ինչպէս ընեմ ։ Աստուծոյ օրհնութիւնը ձեր վրայ ըլլայ ։

"ԲՕՄԱՐԷ , ԹԱԳԱՒՈՐ"

Աս նամակը մեծ սփոփանք մը պիտի ըլլար քարոզիչներուն ՝ թէ որ Բօմարէին վարմունքին մէջ գտնուած մէկ քանի անյարմարութիւնները անոնց սրտնեղութիւն պատճառած չըլլար ։

Քանի որ Աստուծոյ խօսքը արմատ կը կապէր ոմանց սրտին մէջ , նոյն ատեն մեղքը՝ ալ չարաչար կը կատղէր ուրիշներուն սրտին մէջ ։ Ապստամբ թահիթեցիք ամենօք սոսկալի բաներ ըրեր էին ։ Անգղիացի նաւ մը ձեռք անցընելով , մէջը գտնուած նաւաստիներէն մէկ քանիները մեռցուցեր էին , և ուրիշ նաւերու վրայ ալ յարձակեր էին ․ քրիստոնէութեան դարձած բնիկները հալածեր էին , անոնց մէկ ժողովարանը կրակի տուեր էին , և զանոնք որսի պէս կը փնտռէին Օրօյին զոհ մատուցանելու համար ։ Վտանգաւոր բան մը կը սեպուէր քրիստոնեայ ճանչցուիլը ։ Յիրաւի ոմանք քաջասրտութեամբ յայտնի կերպով Աստուծոյ երկրպագութիւն կը մա-

տուցանէին ․ բայց ուրիշները՝ Նիկոդեմոսին պէս՝ կը վախնային Քրիստոսը յայտնի դաւանելու , և միայն կէս գիշերուան ատենը Թաւուտ անտառներու և ամայի ձորերու մէջ մէկտեղ կը ժողվուէին աղօթք ընելու համար ։

Քրիստոսի սիրոյն համար չարչարանք կրողներէն մէկը պատանի մըն էր ՚ որուն սրտաշարժ պատմութիւնը հիմա պիտի ստորագրեմ ։

Երբոր ասիկայ քրիստոնեայ եղաւ , իր ազգականները վրան կը ծիծաղէին , անոր շողքորթութեան խոստմունքներ կ՚ընէին՝ որ նորէն դառնայ իրենց կուռքերուն երկրպագութիւն ընէ ․ և աս ամէն բաներէն ետքը անոր սպառնալիք ըրին , և զանիկայ իր հօրը տունէն վռնտեցին ։ Երբոր ասիկայ հալածական մէկը եղաւ , անոր թշնամիները իրենց կուռքերուն մատուցուելու զոհի մը պէս կը նայէին անոր վրայ ։ Օր մը եկան անիկայ փնտռելու գացին ․ և զանիկայ գտան որ բլուրի մը գագաթը իր փոքրիկ բնակարանին մօտ եղող ծառերուն տակը նստեր էր ։ Անիկայ անանկ ապահով տեղ մը առանձնացեր էր , որ Աստուծոյ վրայով մտա-

ծութիւն ընէ՝ դեռ իր երեկոյեան աղօթքը չմատուցած ։

Մէյմ'ալ տեսաւ որ քուրմերուն և իշխաններուն ծառաներուն գունդը դէպ 'ի իրեն կու գար, ինչպէս որ ժամանակով Գեթսեմանիի մէջ՝ մեր Փրկիչը տեսեր էր Յուդան ու իր թշնամիները ։ Իսկոյն իմացաւ պատանին անոնց գալուն պատճառը ։ Անոնք մօտենալով ըսին իրեն թէ թագաւորը եկած է, ու զինքը տեսնել կ'ուզէ . ան ալ համարձակութեամբ պատասխանեց թէ՝ ինքը չհաւատար որ թագաւորը եկած ըլլայ ։ Անոնք ըսին թէ՝ իր մէկ քանի բարեկամները զինքը տեսնել կ'ուզեն ։ Բայց անիկայ պատասխանեց ու ըսաւ, "Ինչո՞ւ համար զիս խաբելու ետեւէ ինկեր էք . ես հաստատ գիտեմ որ շուտով մարդ մը զոհ պիտի մատուցուի կուռքերուն . և գիտեմ ալ որ ես պիտի ըլլամ այն մարդը, սակայն Յիսուս Քրիստոս իմ պահապանս է ։ Դուք կարողութիւն ունիք իմ մարմինս սպաննելու, բայց ես մեռնելէ չեմ վախնար ։ Դուք չէք կրնար իմ հոգւոյս վնաս մը հասցընել, Յիսուս Քրիստոս անպարտ պիտի պահէ զանիկայ" ։

Իր թշնամիները տեսնելով որ չկրցան զանիկայ համոզել. իրենց հետ ծովեզերքը իջնելու, ուր որ ծառաւկուր մը կըսպասէր անոր համար, ամէնքնին մէկէն վրան թափեցան, ու զանիկայ սպաննեցին. ետքը անոր մարմինը գագաթի տերեւներէ շինուած կողովի մը մէջ դնելով ծառակուրը տարին ու անկէ կռատունը:

Ասկէ քիչ մը ետքը Թահիթիի ապըստամբներուն աչքը Ապէքրահամա կոչուած պատանւոյ մը վրայ էր՝ որ զանիկայ զոհ մատուցանեն: Անոր աս բանիս համար ընտրուելուն պատճառը իր քրիստոնեայ ըլլալն էր: Անիկայ քուրմերուն ծառաներուն ձօտենալը տեսնելով փախաւ. բայց անոնք ետեւէն ինկան, վրան յարձակեցան, ու զանիկայ վիրաւորեցին: Գնտակը անոր դպչելուն պէս՝ ինքը գետինը ինկաւ, ու ալ վազելու կարողութիւնը չմնաց. ուստի սողալով մացառներու մէջ մտաւ ու պահուըտեցաւ: Անոր թշնամիները շատ աշխատեցան որ զանիկայ իր պահուած տեղէն գտնեն ու հանեն, և թէպէտ շատ անգամ խիստ մօտն ալ եկան, բայց չկրցան զանիկայ տեսնել. վերջապէս յոյսերնին կտրելով

եղած գացին ։ Անոնց երթալէն ետքը եր-
բոր գիշերը վրայ հասաւ , Աբրահամն
իր պահուած տեղէն դուրս ելաւ , և իր
բարեկամներուն տունը գնաց , որոնք ա-
նոր վէրքը պատելով , ապահով տեղ մը
տարին զանիկայ ։ Անոր վէրքը բժշկուե-
ցաւ , բայց անոր պատուական նշանը
վրան մնաց , որ մէկ ապացոյց մը եղաւ
իր կեանքը Քրիստոսի համար վտանգի
մէջ դնելուն , այսինքն ան Փրկչին՝ որ
հիմա երկինքին մէջ կը տեսնուի մորթուած
գառնուկի մը պէս ։

---

## ԳԼՈՒԽ ԺԳ

Թահիթիի մեծանը փոխուելուն պատճառ-
եղող պատերազմը ։

Թահիթիի մէջ 1815երորդ տարուոյն
պէս նշանաւոր տարի մը տեսնուած չէր ,
որուն մէջ պատահած մեծ գիպուածները
հիմա պիտի պատմենք ։

Արդէն պատմեցինք՝ թէ Թահիթիի մէջ
հեթանոսները ո՛րչափ կ՚ատէին տեղացի-

ներէն քրիստոնէութեան դարձողները ։ Վերջապէս անոնցմէ ոմանք որոշեցին որ զանոնք բոլորովին կորսնցընեն ։ Հեթանոս իշխաններէն շատերը որ առաջ իրարու հետ թշնամութիւն ունէին , աս բանիս համար իրարու հետ միաբանեցան ։

Յուլիսի 7երորդ օրուան գիշերին կը սպասէին , լուր առնելով որ քրիստոնեաները ծովեզերքին մօտ տեղ մը պիտի ժողվուէին՝ հաւանական է որ աղօթք ընելու համար ։

Քրիստոնեաները ժողվուեցան ան նոյն տեղը ինչպէս որ կը յուսացուէր · բայց գաղտուկ իմացած ըլլալով իրենց թշնամիներուն դիտաւորութիւնը , անմիջապէս իրենց ծառակուրներուն մէջը ցաթկտեցին , ու դէպ ՚ի Լիմէօ նաւելով՝ հետեւեալ առտուն հոն հասան ։ Աս քրիստոնէից փախչելուն վրայ շատ չանցաւ՝ հեթանոս իշխանները ան որոշուած տեղը ժողվուեցան , և զանոնք հոն չգտնելնուն համար խիստ շատ բարկացան ։ Ու որովհետև աս իշխանները առաջուց իրարու թշնամի էին , շուտ մը սկսան մէջերնին վէճ մը հանել ։ Աս բազմութեանը մեծ մասը՝ քրիստոնեաները ա-

ռաջմանէ ջարդելու առաջարկողներուն դէմ դարձան, ու անոնցմէ շատ մարդիկ սպաննեցին ։ Այսպէս Աստուած չարութեան դէմ իր բարկութիւնը ցուցուց, չարերը իրենց փորած փոսին մէջը ձգելով ։

Աշիմէօյի մէջ եղող քարոզիչները անշուշտ սիրով ընդունեցին ան խեղճ քրիստոնեաները՝ որ իրենց դիմեր էին պաշտպանութիւն գտնելու համար ․ և պատահած բաները լսելով մեծապէս խռովեցան, վախնալով որ չըլլայ թէ հեթանոսները վերջապէս երկու կողմներուն վրայ ալ յարձակին, ու Եհովային երկրպագութիւն մատուցանողները բնաջնջեն ընեն ։ Ուստի Յուլիս ամսուն 14երորդ օրը իբրև ծոմապահութեան և աղօթքի օր որոշելով՝ խնդրեցին Տէրոջմէն, որ իրենց թշնամիներուն սիրտը դարձընէ ։ Առաջներն ալ շատ անգամ հեթանոսաց դարձի գալուն համար աղօթքի օրեր որոշած էին, և անաստենները մինակ իրենք աղօթք կ'ընէին, բայց հիմա հարիւրաւոր տեղացի քրիստոնեաներ անոնց հետ աղօթակից էին ։

Իրենց Աստուածը շուտ մը յայտնեց անոնց որ «Իր ձեռքը փրկելէն չկարճըցաւ

ու անոր ականջը լսելէն չծանրացաւ" ։ (Եսայ. ԾԹ. 1։)

Շատ չանցած Թահիթիէն երկու իշխան Եփիմէօ եկան ։ Ասոնք եկեր էին որ քրիստոնէութեան դարձած փախստական իշխանները հրաւիրեն իրենց երկիրը դառնալու ։

Պէտք էր որ Թագաւորը քրիստոնեաներուն հետ երթար, որպէս զի հին սովորութիւններուն համեմատ անոնց կալուածքներուն իրաւունքը պաշտպանէ ։ Աւստի Թագաւորը գնաց անոնց ու անոնց ծառաներուն հետ, նաև ուրիշ կղզիներէ եղող շատ քրիստոնեաներուն հետ ։ Ասոնք գիտէին որ անթիւ թշնամիներ ունին Թահիթիի մէջ, անոր համար պատերազմի պատրաստութիւն տեսեր էին ։

Երբոր իրենց ծառակուռներովը Թահիթիի ծովեզերքը մօտեցան, տեսան որ ծովեզերքին վրայ բազմաթիւ մարդիկ կայներ էին նիզակներով ու հրացաններով, և կ'արգիլէին զիրենք ցամաքը ելլելէն, ու շատ անգամ հրացաններ կը պարպէին իրենց վրայ ։ Իսկ Թագաւորը անոնց ըրածին փոխարէն հրացան չպարպեց, հապա ծովեզերքը դրօշակ մը խրկեց խա-

ղաղութիւն առաջարկելու համար ։ Վերջապէս ժողովուրդը հաւանութիւն տուաւ որ ցամաքը ելլեն , ու կ'երեւնար թէ մտքերնին խաղաղութիւն ընել էր ․ անանկ որ իշխաններէն շատերը խաղաղութեամբ իրենց երկիրները գացին ։ Բայց թէպէտ հեթանոսները երեսանց բարեկամութիւն կը ցուցընէին , այլ ներքերնուն՝ թագաւորին ու անոր բարեկամները բնաջինջ ընել կը խորհէին ։ Թագաւորը անոնց չար դիտաւորութիւններուն համար կասկածի երթալով , անոնց ընթացքին վրայ արթնութեամբ կը հսկէր ։

Թագաւորին գլխաւոր թշնամիներէն մէկը Ուրուֆարա անունով մարդ մըն էր ։ Ասիկայ շատ անգամ ճշմարիտ Աստուծոյ վրայով խօսքեր լսած էր , բայց չէր հաւատար ։ Գիշեր մը երազին մէջ մեծկակ հնոց մը տեսաւ ահագին կրակով , ու անոր մէջտեղը մեծ ձուկ մը ցաւօք կը տանջուէր , և կը ջանար դուրս ելլելու ․ և թէպէտ կրակին մէջն էր , բայց չէր այրեր , հապա գեռ. ողջ էր ։ Ասոր վրայ մեծ խռովութեամբ քունէն արթնցաւ , ու նոյն գիշերը չկրցաւ նորէն քնանալ , ոչ ալ իր տեսածը մու-

նալ , հապա կը խորհէր թէ գուցէ իրեն աս տեսիլքը եղած էր՝ դժոխքին մէջ իր մեղքերուն պատճառաւը կրելու տանջանքը իրեն ցուցնելու համար ։

Ու որովհետեւ իր բարեկամները որոշած էին Բոմարէին դէմ պատերազմելու , անոնց մէկուն ըսաւ թէ՝ «Գուցէ մենք կը սխալինք . եկէք թագաւորին պատգամաւոր խրկենք և խաղաղութիւն ընել առաջարկենք . և գրքեր ուզենք որ իմանանք թէ ի՞նչպէս բան է աս նոր խօսքը»։ Սակայն քուրմերը համոզեցին զանիկայ պատերազմ ընելու , հաւատացընելով անոր թէ իր ձեռքը պիտի մատնէ Օրօ ան աղօթասէր ժողովուրդը ։ Ո՛հ , ինչո՞ւ համար Աւրուփարա մտիկ ըներ անոնց խաբէական խրատը , ու իր սրտին մէջը գոյացած ան բարի փափաքներուն դէմ դնէր . ո՞վ երբէք Աստուծոյ դէմ խըստութիւն բանեցուցեր ու յաջողութիւն գտեր է ։

Երկու օրէն ետքը ասիկայ ժողովուրդին առջեւը ինկաւ՝ Բոմարէին դէմ պատերազմի ելլելու ։ Աս պատերազմը եղած օրը Կիրակի էր , Նոյեմբեր 12 , 1815 ։

Բոմարէ և անոր բարեկամները չէին

գիտեր որ ան նոյն օրը իրենց թշնամի-նները վռանեն պիտի յարձակին · բայց այսչափ գիտէին որ հաւանականաբար Կիրակի օր մը պիտի յարձակէին իրենց վրայ՝ Աստուծոյ երկրպագութիւն մա-տուցած ատեննին · և աս բանիս համար երբոր մատուռը ժողվուելու կ'ըլլային , իրենց պահպանութիւն ընելու համար մարդիկ կ'որոշէին , անոնց պատուիրելով որ թշնամւոյն մօտենալը տեսնելնուն պէս հրացաններ պարպեն :

Կիրակի օր մը առտուանց կանուխ՝ Ռոմարէ և 800 հոգի , որոնցմէ ոմանք նիզակներով ու հրացաններով սպառա-զինեալ՝ Պունաատիայի մէջ եղող մա-տուռը ժողվուեցան : Ճիշդ երբոր ա-տուածային պաշտօնը սկսելու էին , իրենց պահապաններուն հրացաններուն ձայնը լսեցին : Դուրս ելան նայեցան որ հե-ռուէն բանակ մը կու գար , որուն առ-ջևէն դրօշակներ կը քաշուէին 'ի պատիւ իրենց կուռքերուն :

Քրիստոնեաները կ'աղաղակէին թէ՝ "Պատերազմ կայ , պատերազմ": Ա-նոնցմէ ոմանք կ'արտորային որ իրենց վը-րանները երթան զէնքերնին առնեն , բայց

Ռոմարէ ոտք ելաւ, ու աղաչեց որ ա-
մէնքնին ալ հանդարտութեամբ տեղեր-
նին նստին, քաջալերելով զանոնք թէ
Աստուած իրենց պաշտպան պիտի կայնի՝
իրենց երկրպագութիւն ընելու ատեններնին,
և թէ բնաւ մէկ պատճառ մը համար
անոր մատուցուելու երկրպագութիւնը
զանց ընելու չէ։ Ժողովքին մէջէն մէկը
ելաւ երգ մը կարդաց, ու ժողովուրդը
նոյն երգը եղանակով երգեց. ետքը
Սուրբ Գրքէն քիչ մը բան կարդացուե-
ցաւ. ու աղօթք ալ ըրին։ Ասհա այս-
պէս վերջացաւ աստուածային պաշտօնը.
և անոնք որ վրանին զէնք չունէին, ի-
րենց վրանները դացին որ սպառազինին։
Պատերազմը ծովեզերքին քովը եղաւ
աւազին վրայ, և ծովուն մօտ բուսած
ծառերուն մէջերը։ Ռոմարէին զօրքերէն
շատերը դեռ քրիստոնեայ եղած չէին,
աս պատճառաւ զանոնք պատերազմին
ճակատը չըրին, քանզի անոնց վրայ՝
այնչափ վստահութիւն չկար, որչափ որ
քրիստոնեաներուն վրայ, որոնք Ինքնա-
յօժար կամօք ուզեցին որ ճակատամարտ
գունդերը իրենցմէ կազմուին։ Թագու-
հւոյն քոյրը՝ Ռոմարէ վահինէն ալ պա-

տերազմականաց մէջն էր , որ բարձրա-
հասակ և զօրաւոր կնիկ մըն էր , և զը-
րահի տեղ չուանէ հիւսուած ցանցակերպ
բան մը վրան հագեր էր , և հրացան ու
նիզակ բռնած էր . անոր մէկ քովը իր
քաջասիրտ քրիստոնեայ ծառան Փարէ-
ֆառուն կայներ կը պատերազմէր : Բօմա-
րէն ալ ծառակրի մը մէջ նստած Թշնա-
մին կը զարնէր :

Հեթանոսները իրենց քուրմերէն քա-
ջալերուած ըլլալով՝ թէ իրենց աստուած-
ներուն միջոցովը իրենք յաղթող պիտի
ըլլան , բուռն զօրութեամբ Բօմարէին
զօրացը վրայ թափեցան : Բայց քրիս-
տոնեաները աչքերնին իրենց Աստուծոյն
վերցընելով՝ անկէ օգնութիւն կը սպա-
սէին , և շատ անգամ պատերազմին մէջ
ծունկ չոքելով խոտերուն վրայ , թէ ա-
ռանձին մէկ հոգի , և թէ քանի մը հոգի
մէկտեղ՝ համառօտ աղօթք մը կ'ընէին :

Երկու կողմէն ալ խել մը մարդիկ
մեռան : Վերջապէս հեթանոսաց գլխա-
ւոր զօրապետը Աւբուֆարան վիրաւո-
րուեցաւ ու ինկաւ . և քանի որ աւա-
զին վրայ փռուած հոգի կու տար , ա-
նոր բարեկամները իր բոլորտիքը գիզուե-

ցան , և կը ջանային որ վերջին արիւնը դադրեցընեն ։ "Թողէք զիս", ըսաւ մեռնող պատերազմականը , "տեսէք ան երիտասարդը , անիկայ զիս վիրաւորեց ․ իմ մահուանս վրէժը անկէ առէք"։ Ահա այսպէս վրէժխնդրութիւն արտասանելով՝ մեռաւ Ուբուֆարա ։ Երկու իրեք զօրաւոր մարդիկ իրենց զօրապետը զարնող մարդուն վրայ վազեցին ․ անոնց մէկը շուտ մը վրան յարձակեցաւ դեռ անիկայ չզգուշացած ․ և քանի որ կը ջանար զանիկայ խեղդամահ ընելու , ինքն ալ սպաննուեցաւ ան նոյն հրացանով՝ որով Ուբուֆարան սպաննուեցաւ , որն որ դեռ ան մարդուն ձեռքն էր ։

Ուբուֆարային մահուան լուրը մեծ սրտաբեկութեան մէջ ձգեց հեթանոսաց զօրքը , որոնք վերջապէս ստիպուեցան փախչելու , և ապառաժուտ լեռներու մէջ պահուըտելու ։ Թագաւորին զինուորները կ'երթային որ զանոնք հալածեն՝ ինչպէս որ իրենց առջի սովորութիւնն էր ․ բայց Ռոմարէ մօտ գնաց ու բարձր ձայնով կանչեց , "Անէկրա" , այսինքն "Բաւական է ․ պատերազմէն փախչողները մի՛ հալածէք , ո՛չ ալ անոնց տու-

ները այրեցէք և անոնց տղաքը պատժե-ցէք"։ Գիտէք թէ ինչ անգթութիւններ կը բանեցնէին հեթանոսները իրենց յաղթած թշնամիներուն դէմ ։ Աս ինչ մեծ փոփոխութիւն մը ըրեր էր Աստուած Պոմարէին սրտին մէջ՝ որ ժամանակ մը այնչափ անգութ էր ։ Մինչև անգամ թշնամեաց մարմինները՝ փոխանակ շուներուն ու խոզերուն կերակուր ըլլալու համար ծովեզերքը նետուելու, օրինաւոր կերպիւ թաղուեցան, և Ուբուփարային մարմինը իր հարցը գերեզմաններուն տեղը տարին թաղեցին ։

Պոմարէ փոխանակ ան օրը կոտորածով անցընելու, մէկտեղ ժողվեց իր զօրքերուն փոքրիկ խումբը, որ Աստուծոյ գոհութիւն մատուցանեն իրենց մեծ փըրկութեանը համար ։ Ամէն բան աս օրուան եղած պատերազմէն կախում ունէր ։ Թէ որ Պոմարէն յաղթուած ըլլար, բոլոր քրիստոնեաները անգթութեամբ պիտի մեռցուէին, կամ. գերի պիտի ըլլային, և կուռքերը առջի տեղերուն պէս պիտի մեծարուէին ։ Բայց հիմա Աստուած գովաբանեցաւ իր ծառաներէն ու մինչև անգամ շատ ուրիշներէն ալ, որոնք բնաւ

իրեն երկրպագութիւն մատուցած չէին , և նոյն իրիկունը Աստուծոյ ժողովուրդին հետ միանալով գոհութիւն մատուցին :

Բոմարէ փոխանակ իր թշնամիները սպաննելու՝ որոշեց որ անոնց կուռքերը բնաջինջ ընէ : Խումբ մը մարդիկ խրկեց Օրօյին տաճարը որ զանիկայ կործանեն : Դեռ անոնք չգացած՝ ըսաւ անոնց · «Փոքրիկ կղզիները մի երթաք , ուր որ մեր թշնամիներուն կնիկներն ու տղաքները խրկուած են ապահովութեան համար · չըլլայ որ ճամբանուդ խոտորիք ու երթաք տուներ այրէք , ո՛չ ալ ծառեր · հապա շիտակ ձեր ճամբան գացէք» : Աս մարդիկը թագաւորին խօսքին հնազանդեցան : Երբոր հասան Օրօյին տաճարը՝ որ Թահարապուի մէջ էր , վախցան որ չըլլայ թէ ժողովուրդը սրտմտի իրենց կուռքերը անարգելու երթալնուն համար , և վրանին յարձակի · ինչ և իցէ աս կասկած ըրած երկիւղնին իրենց արգելք մը չեղաւ · խիստ քաջասրտութեամբ աս բանիս ձեռք զարկին : Սկսան հրացաններ պարպել ան պզտիկ տանը վրայ՝ որուն մէջն էին կուռքերը , ըսելով · «Հիմա՝ ով կուռքեր , թէ որ դուք աստուած

էք , ու մէկ զօրութիւն մը ունիք , դժուրանլէք , և ձեզի տուած անարգանքնուս վրէժխնդիր եղէք" ։ Բազմութիւնը ասոնց բոլորտիքը կայնած ապշեր մնացեր էին , տեսնելով աս մարդոցը յանդգնութիւնը , և կուռքերուն անկարողութիւնը ։ Շատ չանցած տունը փլուցին , և բոլոր կուռքերը նախ Հրացանի բռնելով վրանին ծակ ծակ ըրին և կրակը նետեցին ։ Իսկ Օրօն չայրեցին . միայն անոր ծածկոցն ու զարդերը բոցերուն մէջը նետեցին ։ Ներկայ լոկ փայտի կտոր մըն էր մարդու հասակէն քիչ մը երկայն , և մարդու սրունգի հաստութիւնով ։ Աս անզգայ աստուածը Թօմարէին բերին , ու անոր ոտքին քովը դրին ։

Թագաւորը ինչ բանի գործածեց կը կարծէք աս Օրօ կուռքը , իր խոհանոցին մէջը դրաւ գերանի մը տեղ , վրան փայտէ բևեռներ զամեց , անոնցմէ ուտելիքի կողովներ կախելու համար , ու ժամանակէ մը ետքը փայտի տեղ վառեց ։ Ահա աս եղաւ Օրօ կուռքին վախճանը , որուն համար Թահիթեցիք շատ տարի այնչափ կատաղաբար պատերազմեր էին ։ Այսպէս Թո՛ղ կորսուին Աստուծոյ բոլոր Թշնամիները ։

ղողմները, որ մինչև անգամ իր Արգիստուան անոնց համար մեռնելու, բայց հիմա կը հաւատային :

Պատերազմը լմննալէն անմիջապէս ետքը Բօմարէ Էշիմէօ գտնուող քարոզիչներուն իր յաջողութեանը աւետիքը տալու արտորաց : Ըս լուրը տանողը քրմապետ և Էրէօփ մըն էր : Քարոզիչներն ու անոնց աշակերտները ծառակլին մօտենալը տեսնելով, ծովեզերքը վազեցին. բայց դեռ մէկ բան մը չհարցուցած, լրաբերը բարձր ձայնով մը կանչեց. "Յաղթեցի՛նք, յաղթեցի՛նք — մի միայն աղօթքով". ու ետքը նիզակը ձեռքը բռնած ցաթկեց ցամաքը ելաւ :

Քարոզիչները առջի բերան դժուարաւ հաւատացին. բայց շուտ մը մէկտեղ ժողվուեցան Աստուծոյ շնորհակալութիւն մատուցանելու, թէ հեթանոսաց ձեռքէն ազատուելնուն համար, և թէ կուռքերուն բնաջինջ ըլլալուն համար :

## ԳԼՈՒԽ ԺԸ

Ընտանիքը պարփէկէն դարձած :

Ու Հիմա Հաւանական կ'երեւնար՝ որ Եղբայրներէն մէկ քանիները Թահիթի փոխադրուէին , ու Հոն Հաստատուէին իրենց բնակութիւնը . և իրենք ալ կը փափաքէին որ Հոն երթան , բայց դեռ նաւու մը շինութեանը զբաղած էին : Ասոնք շինելու սկսած տուններն , մեծ դժուարութեամբ կրնային մարդիկը Համոզել որ իրենց ունկնդրութիւն ընեն . ան պատճառաւ ան տուները Հիմակուանին չափ մարդոց փրկութեանը Համար շատ գործ չունէին : Մտքերնին դրած էին որ ան նաւով կուզէին կղզի երթան քարոզութիւն ընեն , և նոյն ժամանակը մարգարիտներ ու խոզեր ալ ծախու առնեն . ու ետքը ան ապրանքները Անգղիացւոց նաւերուն տալով ուրիշ բաներու Հետ փոխող ընեն , և պէտք չունենան Անգղիոյ մէջ եղող քրիստոնեաներէն շատ ստակ պահանջելու : Հիմա անիկայ սկսելնուն Համար շատ կը ցաւէին :

Որդւոյդ Յիսուս Քրիստոսին միջոցովը, ան որ կենաց Իշխան է. այո՛, անոր միջոցովը փրկութիւն ստանանք։

«Օրհնէ աս կղզիներուն բոլոր բնակիչները, անոնց մէջ գտնուած բոլոր ընտանիքները. թո՛ղ ամէն մարդ իր բազուկները առ Աստուած տարածէ, ու ըսէ. 'Տէ՛ր՝ փրկէ զիս. Տէ՛ր՝ փրկէ զիս'։

«Թո՛ղ աս ամէն կղզիները — Թահիթին՝ Էյմէօյի և Հուահինէի, և Ռայաթէայի, և շրջակայ բոլոր փոքրիկ կղզիներուն բնակչացը հետ մէկտեղ, քու փրկութեանդ բաժանորդ ըլլայ։ Օրհնէ Բրիտանիան, և աշխարհիս վրայ եղած ամէն մէկ երկիրը։ Թո՛ղ քու խօսքդ շուտով անցի բոլոր երկրիս վրայ, չարութեանը անձրևէն ալ աւելի շուտ։

«Աղօթէ՛ մեզի, ու օրհնէ՛ մեզ Յիսուս Քրիստոսին համար. Ամէն"։

Աս աղօթքէն կ'իմացուի թէ Բոմարէ շիտակ սորվեր էր՝ թէ ի՛նչ բանի համար պէտք էր աղօթել։

Պատ. Նօթ և Հէյուարտ տեսան որ ժողովուրդը խիստ շատ փափաք ունէր կարդալ սորվելու։ Եւ Թահիթիի մէջ դպրոցներ չըլլալուն համար, ժողովուրդը

թէ հասարակ մարդիկ — մենք մեռան՝ առանց ճշմարիտ Աստուծոյ վրայով բան մը գիտնալու . և հիմա որ կարգը ժողովուրդին ալ փոքրիկ մանչերուն եկաւ , Եհովան հանեցաւ իր խօսքը ճանչցընելու , և մենք ծանօթացանք իր բարի խօսքին , և իմացանք սուտ աստուածներուն խաբէութիւնը , և ինչ որ չարութիւն և ունայնութիւն է : Աս բաները մեզի սորվեցընողը դուք էիք , բայց գիտութիւնը Եհովայէն է : Ասոր համար ուրախ եմ , և կը խնդրեմ Եհովայէն՝ որ ալ աւելի դարձիլ տայ ինծի չար ճամբաներէն :

‹‹Հիմա Թահիթիի շրջականները պտըտելու կ՚ելլեմ , որ ժողովուրդին իմացընեմ Աստուծոյ խօսքը : Կարմիր փետուրներով զարդարուած երևելի կուռքը՝ Թէմէհարօ կը կոչուի : Աս է իրեն տրրուած անունը . նայեցէք , կարմիր փետուրներէն պիտի ճանչնաք : Ասիկայ էր բուն իմ հօրս պաշտած աստուածը , և ան կարմիր փետուրները տեղական Ուաղսըն առեր էր : Իմ հայրս դրաւ զանոնք կուռքին բոլորտիքը : Թէ որ դուք յարմար կը գտնէք , աս կուռքերուն բո-

լոյս ալ կըսակի տուէք, կամ թէ որ կը հաճիք, ձեր հայրենիքը խրկեցէք, որ ան տեղի ժողովուրդը տեսնէ Թահիթիի յիմարական աստուածները":

Քարոզիչները ասոր նամակը կարդալէն ետև՝ փայտաշէն տեղի մը մէջ, դրին ան կուռքերը, և բևեռներով զամեցին, ու յետոյ Անգղիա խրկեցին զանիկայ Լոնտոնայի քարոզչաց ընկերութեանը հոգաբարձուներուն:

Աս ամառ եղելութիւնները շատ ճամբորդութիւններ ըրին Թահիթի ու Էյմէօ կղզիներուն բոլորտիքը:

Աս տարուան Հոկտեմբերին մէջ ՊՊ. Տէվիսին և Հէյուարտին Թահիթիի բոլորտիքը ըրած ճամբորդութեանը վրայով քիչ մը բան պիտի պատմեմ, ուսկից կրնայ իմանալ ընթերցողը՝ թէ ինչ մեծ փոփոխութիւն մը եղած էր կղզւոյն մէջ:

Էյմէօյէն խել մը մարդիկներ ու տղաքներ ծառաներուն մէջ մնալով ընկերացան երկու եղբայրներուն, քանզի աս միջոցին՝ եղբայրները առջի ճամբորդութիւն չէին ըրեր, հապա ծովով կ'երթային: Ուր որ քանի մը տուն կը գտնէին, հոն ցամաքը կ'ելլէին. բայց

Հիմա պէտք չէր որ տունէ տուն երթան , ու տղաքին ժողովուրդին որ քարոզ մտիկ ընելու գան , քանզի ժողովուրդը իրենք իրենցմէ կու գային . և շատերը Հրապարակական երկրպագութիւնը բաւական չսեպելով , եղբայրներուն տանէն անոնց իջած տունը կ՚երթային , որպէս զի Հան ալ ընտանեկան երկրպագութեան ներկայ գտնուին . քանզի Հիմա շատ ընտանիքներու սովորութիւնն էր առտու և իրիկուն աղօթք ընել , և քարոզիչները ներկայ գտնուած ատեններնին սովորաբար պաշտօնը անոնք կը կատարէին : Իրիկունը եղբայրներէն մէկը ՙՍուրբ Կտակարանէն քաղուած տետրակէ մը քիչ մը կը կարդար , ու կը մեկնէր , ու ետքը աղօթք կ՚ընէր : Իսկ առտուանց եղբայրներուն քունէն արթնցած ատենը շատ անգամ դեռ մութ ըլլալով՝ չէր կարդացուեր , և ան միջոցին ընդՀանրապէս տեղացիներէն մէկուն կ՚ըսէին՝ որ բարձր ձայնով աղօթք ընէ :

Բայց տեղացիք միայն ընտանեկան աղօթքը բաւական չէին սեպեր : Եղբայրները ամէն իրենց գացած տեղուանքը տեսնելով որ անոնք առտու և իրիկուն

մացառներուն մէջ ծածուկ տեղեր կը փնտռէին առանձնական աղօթք ընելու համար , մեծապէս կ'ուրախանային :

Տեղացիք այնչափ փափաք ունէին հոգևոր բաներու վրայով տեղեկութիւն առնալու , որ շատ անգամ եղբայրները չէին քնացըներ իրենց պառկած անկողին-ներուն մէջ , հապա անոնց հարցմունքը-ներ կ'ընէին գրեթէ մինչև առտու : Արդարև աւելի մարդասիրութիւն մը ըրած պիտի ըլլային , թէ որ յոգնած քարո-զիչները թող տային որ հանգստանան . բայց մէկ կողմէ ալ աղէկ էր որ խեղ-ճերնին մտքերնին բարի խօսակցութիւն-ներու տուեր էին , փոխանակ ծիծաղելու և շաղակրատութիւն ընելու , ինչպէս որ առաջինները կ'ընէին սովորաբար գիշեր ու ցորեկ :

Անգամ մը Դինօ անունով մարդ մը՝ որ առաջուց ինքզինքը մարգարէ մը կը ձևացընէր , գիշեր մը խիստ խոհեմ և բարեպաշտ կերպով սկսաւ խօսակցիլ եղբայրներուն հետ : Ասիկայ ըսաւ որ բնաւ պէտք չէ մարդ մը Քրիստոսին դի-մացէն արգիլել՝ իր չարութեանը համար . «Մանզի» , ըսաւ Դինօ , «Ես խիստ

չար մարդ մըն էի , այսու ամենայնիւ հիմա Ճշմարիտ Աստուծոյ դարձած եմ , և իմ սիրտս բոլորովին անոր վրայ հաստատուած է"։

Առտուանց կանուխ շատ մարդիկ գիրքերնին հետերնին առած եղբայրներուն կու գային ՝ աղաչելով որ իրենց թող տան որ քիչ մը կարդան ։

Եղբայրները ամէն տեղ մատուռ մը կը գտնէին . երբեմն մատուռը խիստ պզտիկ ըլլալով , եղբայրներուն քարոզութիւնը մտիկ ընելու եկող ժողովուրդին մեծ մասը կը ստիպուէր դուրսը կայնելու ։ Մատուռներն ալ տուներուն պէս ցիցերով շինուած էին՝ մէյմէկ քիչ իրարմէ հեռու ցցած , և տերևներով ծածկուած էին , նոյն ատենը յատակին վրայ մաքուր խոտ փռած՝ մատուռին ներսը մէկ կողմը երէցին համար աթոռ մը դրուած էր , ու անոր առջին պզտիկ սեղան մը . իսկ ունկնդիրներուն համար կարգ կարգ նստարաններ շարուած էր ։ Կղզւոյն մէջ 66 հատ ասանկ մատուռներ կար , որոնցմէ ոմանք՝ եղբայրներուն հոն գացած ժամանակը՝ կիսկատար շինուած էին ։ Ժողովուրդը Հրապարակա-

կան երկրպագութեան համար 3 անգամ կը ժողվուէին Ուրբաթի օրերը , նաև չո-րեքշաբթի իրիկունները , և շատ անգամներ ալ ամէն ամսուան առջի երկուշաբթի օրը ժողով մը հաստատած էին հեթանոսաց դարձի գալուն համար աղօթք ընելու , ինչպէս որ քարոզիչները և անոնց Անգ-ղիոյ մէջ եղող բարեկամները սովորու-թիւն ունէին :

Ժողովուրդը առ հասարակ առ եղած փոփոխութեանը համար խիստ կ'ուրա-խանար : Թուաթի անունով իշխան մը ը-սաւ . «Թէ որ Աստուած իր խօսքը չը-խրկէր , մենք շատ չանցած բոլորովին բնաջինջ պիտի ըլլայինք . քանզի ժամա-նակով մենք հիմակու եղածներնուս շատ աւելի բազմաթիւ ազգ մըն էինք . բայց մեր տղաքները մեռցընելով , մարդիկներ զոհ ընելով , ու պատերազմներ ընելով՝ օր ըստ օրէ կը քիչնայինք" :

Բայց թէպէտ եղբայրները ընդհան-րապէս ժողովուրդին յօժարակամ ու-շադրութիւնը ուրախութիւնով կը տես-նէին , բայց երբեմն ալ անհոգ մարդիկ-ներու կը հանդիպէին՝ որոնք շատ անգամ առաջուան պէս համարձակ ու ամբար-

տուած չէին . քանզի իշխաններուն բարի օրինակը ամբարիշտներուն յանդիմանութիւն մըն էր :

Մէկ տեղ մըն ալ քարոզիչները տեսան որ ժողովուրդը Հոգւոյ պաշտօնի ժամանակ խիստ անհոգ և անմտադիր էր . ուստի զանոնք յանդիմանեցին ու ըսին . "Ձեր պզտիկ մատուռը տեսանք՝ ուրախացանք . բայց հիմա ձեր վարմունքը տեսնելով՝ յոյսերնիս ունայն եղած է":

Մէկ ուրիշ տեղ մըն ալ Թախտայապուլի մէջ բարձրաբերձ ժայռերուն անդին կողմը բնակող ժողովրդոց լուր խըրկեցին՝ որ ելլեն իրենց գան , բայց անմարդիկը պատասխանեցին թէ իրենք չեն կրնար գալ , այլ կըսպասեն որ իրենց տեղը քարոզիչները գան : Աս լուրին վրայ եղբայրները ճանկռթելով մեծ դժուարութեամբ ան սեպացեալ ժայռերուն վրայ ելան . բայց երբոր ձորը իջան , նայեցան որ իրենց յոյսը պարապ ելաւ , քանզի բոլոր մարդիկն ալ իրենց կերակուր ճարելու գացեր էին : Նորէն դարձան , և ուրիշ մարդիկներու քարոզութիւն ըրին ծովեզերքին քովը շինուած մատուռի մը մէջ : Նոյնը աս խաբէու-

թիւնը ընող մարդիկը եկան ու ըսին՝ որ Աստուծոյ խօսքին վրայ այսչափ քիչ ակեր ունենալնին իրենց մեծ ցաւ է , որ մինչև անգամ զանիկայ լսելու պատեհութիւնները ձեռքէ փախցուցին , մանաւանդ որ խիստ քիչ անգամ քարոզութիւն կ'ըլլար իրենց մէջը ։

Եղբայրները կղզւոյն շրջականները պըրտըտելէն ետև , Մաթավայի եկան , և Թագաւորը հոն գտան որ փոքրիկ տան մը մէջ կը բնակէր , և աս տունը ճիշդ իրենց առջի տանը տեղին վրայ շինուած էր ։ Ասոնք նայեցան իրենց անկած ծառերուն , որոնց մէկ քանիներուն վրայ լեմոն և նարինջ կար , իսկ հացածառներէն շատերը կորսուած էին ։ Թագաւորը մեծ մարդասիրութիւն ցուցուց ասոնց , և ան տեղի բնակիչները թախանձանօք կ'աղաչէին՝ որ նորէն գան իրենց մէջը բնակին ։ Սակայն եղբայրները դեռ չէին կրնար անոնց խնդիրքը կատարել , այլ միտք ունէին որ կարելի եղածին չափ շուտով ասիկայ ընեն ։

Որչափ իրաւացի էին Մաթավայի բնակիչներուն Աստուծոյ տուած պատիւները ։ Երբոր Աստուծոյ խօսքը անոնց

մէջը կը քարոզուէր , անոնք արհամարհեցին զանիկայ , և իրենց աստուածաբանական պատերազմներովը ուսուցիչներնին դուրս վռնտեցին : Աստուած անոնք պատժելու համար՝ "Տէրոջը խօսքը լսելուն սովը խրկեց", (Ամով. Ը. 11,) և "Անոնց ուսուցիչները անկիւնի մը մէջ փոխադրեց": (Եսայ. Լ. 20:) Խիստ վըտանգաւոր բան է կրօնական արտօնութիւններու վրայով զանցառութիւն ընելը: Շատ տղաքներ՝ որ հաւատարիմ քարոզիչի մը բարի խրատներովը կրթուած են , իրենց տարիքը լցուած ատենը պարապ տեղը կը փափաքին սա նոյն բարի խրատները լսելու պատեհութիւն ձեռք անցընել : Շատ մարդիկ ալ որ բարեպաշտ ընտանեաց մէջ մեծցեր են , անատենը կ'իմանան իրենց վայելած օրհնութեանը յարգը , երբոր չեն կրնար նորէն ձեռք բերել սա նոյն պատեհութիւնը :

## ԳԼՈՒԽ Ժ.Զ.

### Պատոյ կամ Պէտրոկան :

Աս միջոցիս նորէն քանի մը ուրիշ քարոզիչներ ալ եկան : Ասոնք բերող նաւը նախ Թահիթի կղզին հասաւ , ուր որ Թագաւորը կը բնակէր : Բօմարէ լսելով որ Պատ. Էլլիս հետը տպագրութեան մամուլ մը բերած էր , խիստ ուրախացաւ , և աղաչեց որ Թահիթի հանէ մամուլը , և ինքն ալ հոն բնակի : Բայց Պատ. Էլլիս ըսաւ անոր՝ թէ պէտք է որ իր եղբայրներուն քովը երթայ Էյմէօ :

Աս նաւով Բօմարէին ընծայ մը բերուած էր , որուն համար անիկայ խիստ շատ ուրախացաւ , և ան ընծան ձի մըն էր : Բօմարէ գնաց որ զանիկայ տեսնէ , որուն եղած տեղը անանկ նեղ էր՝ որ կարող չէր պառկելու : Հիմա դժուարին բանը ձին ցամաքը հանելն էր : Բօմարէ հրաման ըրաւ որ նաւուն քովը 2 ծառակուր մօտեցընեն՝ որ ձին անոնց վրայ դըրուի : Ուստի ձին՝ կապերով նաւուն մէկ քովէն կախեցին , ուսկից որ չէտակ

ծովուն վրայ կ'իջնէր ։ Եւ քանի որ ձիւն օդին մէջ կախուած կը մնար , մէյմ'ալ նայիս կապը արձըկուելով՝ խեղճ անասունը ծովը ինկաւ ։ Բոմարէն և տեղացիք ալ տեսնելով որ ձիւն ալիքներուն մէջը աներևոյթ եղաւ , զարհուրեցան մնացին . բայց շատ չանցած՝ անասունը փռնչելով ջուրին երեսը ելաւ , ու սկսաւ լողալ դէպ 'ի ցամաքը ։ Տեղացիք ծովը նետուեցան , որոնցմէ ոմանք անոր բաշէն , և ուրիշները պոչէն փակչելով՝ կը ջանային զանիկայ բռնել , անանկ որ՝ ալ կ'երևէր թէ խեղճ անասունը խեղդուելու վտանգի մէջ էր ։ Պարապ տեղը Թագաւորը բոլոր ձայնովը կը պոռար՝ որ անասունը իր կամացը թողուն ու չբռնեն , քանզի անոր ձայնը լուղակներուն աղաղակին հետ խառնուելով չէր լսուեր ։ Վերջապէս ձիւն անվնաս ծովեզերքը հասաւ ։ Տեղացիք որ հոն ժողվուած էին , աղաղակ փրցընելով անմիջապէս փախան . ոմանք ծառերու վրայ ելան , և ոմանք ապառաժներու և թուփերու մէջ պահուըտեցան ։ Անգղիացի նաւաստիներէն մէկը՝ որ ցամաքը կը գտնուէր , ձիուն մօտեցաւ ։ և անոր պախուրձէն բռնեց ։

Ընատենը տեղացիք իրենց պահուըտած տեղերէն ելան , և ապշած կը նայէին անոր վրայ ։ Ինուէ ձի տեսնուած չէր Թահիթիի մէջ , բաց 'ի այն մէկ ձիէն՝ որ Քուք նաւապետը հոն թողուցեր էր 40 տարի առաջ . և ժողովուրդէն քիչ մարդիկ կրնային մտքերնին բերել այնչափ հեռաւոր ժամանակի մէջ պատահած անցք մը ։ Այն գիշերը ձին ծածքի մը տակ դրին ։ Հետևեալ առտուն նաւապետը թամբ մը և համետ մը բերաւ իբրև ընծայ Պոմարէին ։ Ան ալ խնդրեց որ անոնք ձիուն վրայ դնէ ու վրան հեծնէ ։ Տեղացիք ծովեզերքէն քովը ձիուն երագընթաց արշաւանքը և քառասմբակ վազելը տեսնելով մեծապէս կ'ուրախանային , և կը կոչէին զանիկայ «Վազարշաւ խոզ», և «Մարդ տանող խոզ» ։ Հաւանական կը թուի որ մէկը համարձակած չըլլայ անոր վրայ հեծնելու ։

Կիրակի օրը Պատ . Էլլիս տեղացւոց մէկ քանիներուն տունը այցելութեան գնաց առտուան ու կէսօրէն ետքի աղօթքին միջոցը եղած ժամանակները . և տեսաւ որ անոնք իրենց ընտանիքներուն հետ նստեր իրենց տետրակները կը կար-

գայլին , և իրարու հետ կարգացած քա-նիրնուն վրայով կը խօսակցէին :

Շատ ուրախացաւ Պատ. Նըլէր երբոր տեսաւ որ Կիրակին այնչափ զգուշութեամբ կը պահէին , ան օրը իրենց կերակուրի պատրաստութիւն անգամ չէին տեսներ : Իսկ ուրիշ օրերը առջինէն շատ աւելի աշխատասէր էին . քանզի ան յիմարական զբօսանքները՝ որոնցմով առաջները կը զուարճանային , ալ հիմա մէկդի թողուցեր էին : Չափահաս մարդիկները ալ իրենց ժամանակները գնտակախաղութեամբ , կամ նշան առնելով , կամ որ աւելի գէշ է , գոտեմարտութեամբ , բըռնամարտութեամբ , և աքաղաղներ մէկզմէկու հետ մարտնչել տալով չէին անցըներ . հապա օգտակար գործքերու ետևէ էին , այսինքն՝ տուներ շինելու , և մշակութեան կը պարապէին : Անոնց շատ տուներուն բոլորտիքը Թուրօյէ * փոքրիկ պարտէզներ շինուեցաւ : Աս պարտէզներուն մեծ զարդարանքը՝ պզտիկ խուց մըն էր առանձնական աղօթքի համար շինուած : Ասկէ կ'իմանանք թէ անոնց տէ-

* Տեսակ մը բոյս է , որուն պտուղը գետնախնձորի կը նմանի :

ըսրը աւելի աղէկ ժառանգութեան մը կը սպասէին ։

Հիմա եղբայրները մէկտեղ գալով խորհուրդ ըրին՝ թէ ուր դնեն տպագրութեան մամուլը ։ Վերջապէս որոշեցին որ Էրիմէօյի մէկալ կողմը փոխադրեն դունիկայ , և հաճութիւն տուին որ Պատ. Էլլիս՝ Տէվլիս և Պրուք հոն երթան , ու բնակին ։ Ըս միջոցով Էրիմէօյի անդիի կողմը եղող ժողովուրդը կրթութիւն առնելու պատեհութիւն մը պիտի ունենար։

Բօմարէ նամակ մը խրկեց եղբայրներուն , որով կը խնդրէր որ տպարանը չինուելուն պէս իրեն լուր տան , որպէս զի ինքը գայ՝ ու տպագրութեան գործը տեսնէ . բայց մինչև անատեններն չսպասելով , ելաւ անոնց տեսութեան գնաց , հետը խել մը տախտակներ տանելով եղբայրներուն ընծայելու համար ։ Եւ իր խելքը միտքը պատկերներու հետ զբաղած կ'երևնար . քանզի ամսական տետրակի մը մէջ մէկ քանի մարդոց կենդանագիրները նաև քանի մը կենդանիներու և թռչուններու պատկերները տեսնելով՝ մեծ հաճութեամբ կը դիտէր զանոնք . այսու ամենայնիւ անոնցմէ մէկ հատ մըն

ալ չգողցաւ , ինչպէս որ առենօք Պ.
Պրուժհօլին Աստուածաշունչին մէջէն Ա-
դամ Եւային պատկերները գողցեր էր ։

Եղբայրները՝ նմանապէս տեղացիք ալ ,
նոր տուները շինելու զբաղած էին ։ Տը-
պարանին յատակը քարերով կը շինէին ։
Երդեօք ուսկից կը կարծէք որ աս քա-
րերը բերած ըլլան ։ Մարաքի մը քարա-
յատակէն , որուն վրայ կռոց երկրպա-
գութիւն մատուցանողները կ'երթային
ծունկ կը չոքէին զոհարաններուն առջին ։
Եւ հիմա տպարանին յատակը կը փո-
րէին , և աս սրբատաշ քարերը տեղա-
ւորելով սալայատակ կը շինէին , ան տեղը՝
ուր որ Աստուծոյ խօսքը պիտի տպուէր ։
Այսպէս Սատանան հալածուեցաւ , և
Աստուած փառաւորուեցաւ ։

Յունիսի սկիզբը տպարանին շինու-
թիւնը լմնցաւ . պատերը տախտակամած
շինուած էր , ու 2 հատ ապակեղէն պա-
տուհան ունէր , որոնց ապակիները Անգ-
ղիայէն բերած էին , և գուցէ աս կղզի-
ներուն մէջ առջի անգամ տեսնուած էր
սանկ պատուհաններ ։

Ալ հիմա լուր խրկելով Թագաւորին՝
իմացուցին թէ տպագրութեան վերաբե-

քեալ ամէն բանը պատրաստ էր ։ Ան ալ քանի մը մտերիմ իշխաններու և բազմաթիւ մարդիկներու հետ ընկերացած շուտով հոն հասաւ ։ Ողջի տպուելու գիրքը Պապա՝ այսինքն քերական մըն էր․ քանզի թէ և առաջուց հարիւրաւոր օրինակներ տպուեր էին Անգղիոյ և Բօրթ Ճ'աքսընի մէջ , բայց անոնք կղզիներուն բնակչացը բաւական ըլլալու չափ չէին ։

Ռօմարէ մեծապէս զուարճացած կը նայէր զանազան բաժանումներու մէջ դըրուած կապարեայ գրերուն կամ տիպերուն ։ Պատ․ Էլլիս հարցուց անոր՝ թէ արդեօք կ'ուզէր գիր շարել ։ Ռօմարէ ուրախութեամբ հաճութիւն տուաւ որ գործը ինքը սկսի ։ Եւ որովհետև Պապային առջի երեսը այբուբեն պիտի տըպուէր , Ռօմարէին շատ դիւրին էր ամէն մէկ բաժանումէն առնել ան խոշոր գիրերը , և իրենց տեղը դնել ։ Ետքը մանր գրեր ալ շարեց , և այնուհետև մէկ քանի կարճ խօսքեր , և այսպէս քերականին առջի երեսը շարեց լմնցուց ։ Բայց որովհետև մամուլով տպելու համար պէտք էր որ ուրիշ շատ երեսներ ալ պատրաստուէր , Ռօմարէ ստիպուեցաւ 2 շաբաթի

ջափ տպաել, դեռ առջի թերթին տը-պուիլը չաւարտած :

Վերջապէս 2 մեծերիմ իշխան հետը առնելով, հոն եկաւ, ու անոր ետեւէն խումբ մը հետաքրքիր և աշխոյժ մար-դիկներ ալ եկան : Թագաւորն ու անոր իշխանները դրանը բոլորտիքը կեցող ժո-ղովուրդին մէջէն անցնելով՝ տպարանը մտան : Ընատենը դուռը գոցուեցաւ, քանզի թագաւորը չէր ուզեր որ զինքը տեսնեն . և ծովուն կողմի պատուհանը մթացաւ, վասն զի ժողովուրդը քաղա-քավարութիւն սորված չըլլալով՝ չէին գի-տեր թէ պատուհաններէն նայիլը տմար-դութիւն է :

Թագաւորը խնդամտութեամբ իր քովը կեցողներուն ըսաւ՝ որ վրան չխնդան, թէ որ չկրնայ անսխալ կերպով տպագրել : Ընատենը Պատ . Յուլիս մրիչ գլանը մելանը թաթխելով՝ անոր ձեռքը տուաւ, և ը-սաւ որ զանիկայ կապարեայ գրերուն վրայ գլորելով տանի բերէ : Ետքը մաքուր թուղթ մը առաւ գրերուն վրայ տարա-ծեց, և թագաւորին ըսաւ որ մամուլին կոթը քաշէ ու դարձընէ : Երբոր Բո-մարէ զանիկայ դարձուց, թուղթը մա-

մուլէն հանեցին ։ Թագաւորն ու անոր բարեկամները շուտով վրան թափեցան՝ որ տեսնեն թէ աս գործողութենէս ի՞նչ արդիւնք ծագեցաւ ։ Երբոր թուղթին վրայ ան խոշոր ու սև գրերը տեսան , ամէնքը մէկէն զարմանքի և ուրախութեան ձայնով աղաղակեցին ։ Ետքը ան տպուած թերթը դուրսը կայնող բազմութեանը ցուցուցին , որոնք անմիջապէս ցնծութեան աղաղակ մը փրցուցին ։ Թագաւորը ուրիշ երկու թերթ ալ տպեց , ու անկէ ետև մինչև արեգակին մարը մրանելը եղբայրներուն գործելը դիտեց . և իր վրանը դարձած ատենը՝ իր տպած թերթը հետը առաւ ։

Գրեթէ ամէն օր երբոր տպարանին քովէն անցնելու կ'ըլլար , որովհետև իր լուացուելու տեղը երթալու ճամբուն վրան էր , տպարանը կը մտնէր , ու քիչ մը ատեն տպագրութեան գործը կը դիտէր ։ Ժողովուրդն ալ շարունակ պատուհաններէն և պատերուն ծակերէն ներս նայելով , շատ անգամ կը կանչէին . "Ո՛վ Բրիտանիա՝ երկիր հանճարոյ"։

Ամիս մը չանցաւ քերականը տպուեցաւ լմնցաւ , և ժողովուրդին բաժնուեցաւ ։

Տեղացիք մեծ փափաք կը ցուցընէին աս գրքոյկները ստանալու ։ Թուահիթիէն խել մը պանանայի ոլորուած տերեւներ հաւաքորդիչներուն ձեռքը, զորոնք երբոր բացին, տեսան որ ամէնն ալ քերական ուղղելու աղերսագիրներ էին ։ Ժողովուրդը տոմսակ մը գրելու համար, սովորաբար թուղթի տեղ պանանայի տերեւ կը գործածէր․ բայց որովհետեւ շուտով կը թառամէին աս տերեւները, անոր համար միայն կարճ տոմսակներ գրելու յարմար կու գային ։

Եղբայրները իմացան որ՝ ժողովուրդին փափաքը միայն գրքի տէր ըլլալու վրայ չէր, հապա անոր մէջ պարունակուածին իմաստը հասկընալու․ քանզի անոնցմէ շատերը իրենց դպրացիներուն գրքերը օրինակեր էին բաֆթի կտորներու վրայ, կամ ծառի կեղեւներու վրայ, գրիչի տեղ տեսակ մը եղէգ, եւ քայտի մը ծիրանեգոյն հիւթը մելանի տեղ գործածելով ։ Ոմանք իրենց Աստուածաշունչէն քաղուած գրքոյկը կարդալով՝ շատ կը փափաքէին կարդացածնուն նշանակութիւնը հասկընալու, եւ ի՛նչ ժամանակ որ եղբայրները անոնց տունը երթալու ըլլային, տեղա-

ցիք սովորաբար քանի մը Հարցընելու-բաններ կ'ունենային, ու եղբայրներն ալ ուրախութեամբ կը պատասխանէին :

Որչափ Հաճոյական բան մը պիտի ըլ-լար, թէ որ տետրակները, և աղէկ գրքերը, և մանաւանդ Աստուածաշունչը ամէն տեղ այնչափ յարգի սեպուէր : Բայց "Կուշտ մարդը խորիսխը կ'արհա-մարհէ" : (Առակ. իէ. 7 :)

Պատ. Էլլիսին և Պրուքին տիկինները քերականներուն Համար ծաղկոցներ շի-նեցին, և զանոնք տեղացւոց կը ծախէին ուտելիքի Հետ փոխոց ընելով : Երկու Հատ Բաքօյէ արմատը, կամ Հացածաղի պտուղէն մէկ կապոցը քերականի մը ծաղկոցին գինն էր : Իսկ քերականները ձրի կու տային, որ ժողովուրդը կարդալ սորվելէն առիթ մը չունենայ թուլնալու :

Աս քերականներէն առնողներուն մէջ խումբ մը խեղճուկ օտարականներ կային, որոնք քիչ մը առաջ Թահիթի գացեր, և Բօմարէին Հետ Էյմէօ եկեր էին : Ա-սոնք Մարգարիտ կղզիներէն եկած էին, և ան կղզիները ցած տեղուանք ըլլալով, Հոն գագաօյի ընկուզէն 'ի զատ ուրիշ բերք մը չկար, և բնակիչներն ալ իրենց

վարմունքին կողմէ՝ Թահիթեցիներէն շատ աւելի կոշտ մարդիկ էին ։ Ասոնք խիստ չար էին , և գրեթէ իրենց պատերազմներովը բնաջինջ էին ըրեր իրենց ազգը ։ Բայց հիմա իրենց կուռքերը մէկդի ձգելով , ճշմարիտ Աստուծոյ երկրպագութիւն կ'ընէին , և իրենց մէկ կղզւոյն մէջ 3 մատուռ շիներ էին ։ Բնաւ Անգղիացիէ մը բան սորված չէին , հապա իրենց կղզւոյն բնիկներէն մէկը Թահիթիի մէջ կարդալ սորվեր էր , ու իր հայրենիքը դառնալով իր ազգին ալ սորվեցուցեր էր ։ Աս խեղճուկ օտարականներուն փափաքը գրքեր առնել , և աւելի դաստիարակներ ունենալ էր ։ Բօմարէ շատ մարդասիրութիւն ցուցուց ասոնց , և իրենց արտօնութիւն տուաւ Թահիթիի մէջ բնակելու . բայց անոնց փափաքը աս էր որ իրենց ուզած գրքերը ձեռք անցընելնուն պէս՝ իրենց ծննդեան կղզիները դառնան ։ Եւ որովհետև միայն քերական առնելը հերիք չէր անոնց փափաքը լեցընելու , անոնցմէ շատերը Բօմարէին վրաններուն մէջը մնացին . և շատ անգամ տպարանը տեսնելու կ'երթային , նաև դպրոցը ու մատուռն ալ կ'երթային

տրուած դասն ու քարոզը մտիկ ընելու ։

Վհարոզիչները մեծ ուրախութիւն կը զգային իրենց սրտին մէջը՝ տեսնելով որ աստուածպաշտութիւնը կղզիէ կղզի կը տարածուէր, և չարութիւն ընելու սովորները բարիք ընել սորվելու ետեւէ կ՚ըլլային. քանզի ինչպէս որ անկարելի բան է «Ինձի մը իր խայտուցները փոխել, կամ խափշիկի մը իր մորթը ճերմըկցընել», (Երեմ. ԺԳ. 23,) անանկ ալ դժուարին էր ասոնց՝ իրենց չարութիւններէն ետ կենալ. սակայն մարդոցմէ անկարելի եղածը Աստուծմէ կարելի է ։

## ԳԼՈՒԽ ԺԵ.

### Տեղացւոց կրօնքի վրայօք ըրած հարցմունքները ։

Երբոր Պատ. Էլլիս քերականը տպեց լմնցուց, խել մը քրիստոնէականներ ալ տպեց, ու եօթը Սուրբ Գրքէն քաղուածներու ալ տետրակներ ։ Ասիկայ տեղացիներէն 2 հոգւոյ սորվեցուց տպ֊

պագրութեան գործը , և ամէն օր 8 կամ 10 ժամ այս գործովս կը զբաղէր : Ահա՛ ասանկ սաստիկ փափաք մը ունէր ժողովուրդին պիտանի գրքեր մատակարարելու :

Պատ. Շլլիխին տիկինը դպրոց մը բացաւ , ուր տեղ ասղնեգործութիւն կը սորվեցընէր . Պատ. Վրուքին 6 աղջիկներուն , և քանի մը տեղացի աղջիկներու ալ , որոնք սորվելու կը փափաքէին :

Եղբայրները իրենց առջի անգամ հոն համնելուն՝ իրենց պարտէզներուն մէջը ծաղիկներ ու բոյսեր տնկեր էին : Թագաւորը Պատ. Շլլիխին պարտէզին մէջ արևածաղիկները տեսնելով՝ ապշեցաւ մնաց , քանզի առաջուց անոնց պէս ծաղիկ մը տեսած չէր , և ուզեց որ մէկ քանի հատ իրեն տայ . իսկ Պատ. Շլլիխ անոր խնդիրքը մերժեց . վասն զի ինքն ալ կ'ուզէր պահել այն ծաղիկները սերմի համար : Ետքը Թագաւորը այս բանս Թագուհւոյն ու անոր քրոջը պատմեց . անոնք ալ ուզեցին մէյմէկ հատ այն ծաղիկներէն : Պատ. Շլլիխ ալ չկրնալով անոնց աղաչանքին դէմ դնել , ամէն մէկուն մէյմէկ հատ խրկեց : Ասոր վրայ մեծապէս ուրախացան , և այն ծաղիկները

զարդի պէս իրենց մազերուն վրայ դրին ։ Աս կարճառօտ պատմութենէս կ՚իմանանք թէ՝ Խօմարէն ու իր ընտանիքը իրենց մուրացկանութեան հին սովորութիւնը մոռցած չէին ։

Աս ամառուան մէջ մարդ մը մեռաւ , որուն նշանաւոր պատմութիւնը արդէն լսած է կարդացողը , ու պիտի յիշէ Ֆա-րէֆաուն՝ որ անգամ մը կարմիր փե-տուրները փուռին մէջը նետեց ։ Ասիկայ ան ժամանակէն ՚ի վեր շարունակ Քրիս-տոսին ծառայեց ։ Շատ անգամ Թա-հիթիի սեպացեալ ժայռերուն ու լեռնե-րուն վրայ ճանկռթելով կ՚ելլէր , որ քը-րիստոնէութիւն սորվեցընէ ան մարդոցը՝ որոնց բնակութիւնը կրթութեան տեղե-րէն հեռու էին ։ Իր մեռնելէն քանի մը շաբաթ առաջ Էյիմէօ բերուեցաւ ծանր հիւանդութեամբ բռնուած . սակայն չէր կարծուեր որ իր վախճանին այնչափ մօ-տեցած ըլլար ։ Իր մեռնելուն առջի օրը խել մը մարդիկներու ըսաւ թէ՝ ինքը աս կեանքէս մեկնելու կէտին հասած էր , այսու ամենայնիւ վախ մը չունէր , քանզի իր միտքը հաստատուած էր Յիսուս Քը-րիստոսին՝ մեղաւորաց Փրկչին վրայ , որ

իր հոգին լեցուցեր էր ուրախութեամբ և խաղաղութեամբ ։

Եղբայրները ամէն երկուշաբթի իրիկունները խիստ սրտաշարժ ժողով մը կ'ունենային, տեղացւոց հետ հոգևոր բաներու վրայով խօսակցելու ։ Կարծեմ թէ՝ ձեզի ախորժելի բան մը պիտի ըլլայ աս պատեհութիւններու մէջ տեղացւոց ըրած դիտողութիւններն ու հարցմունքները, որոնց մէկ քանիները աս տեղս պիտի պատմեմ ։

Անոնք շատ անգամ իրենց առջի օրը մէկիկ ըրած քարոզին վրայով կը խօսէին ։ Անգամ մը Բաղաամին վարուցը վրայով Պատ. Տէվիսին տուած քարոզը լսելէն ետև՝ կ'երևէր թէ ժողովուրդին վրայ սարսափ մը եկաւ ։ Ծեր մարդուն մէկը ելաւ հարցուց թէ՝ «Ի՞նչ տարբերութիւն կայ մտքով Աստուած ճանչնալուն, և սրտով հաւատալուն մէջտեղը» ։

Երբեմն Սուրբ Գրոց վարդապետութիւններուն վրայով հարցմունքներ կ'ընէին ։ Անգամ մը մարդուն մէկը հարցուց թէ՝ «Մարդ մը քանի որ աս կեանքիս մէջն է, կրնա՞յ արդեօք բոլորովին չար խորհուրդներէ ազատելու յոյս ու-

նման" : Եղբայրներս ըսին անոր թէ՝ մենք քանի որ աս կեանքիս մէջն ենք՝ մեր բնութիւնը չար է , մեզ փորձութեան տանող թշնամի մըն է , որուն դէմ պէտք է մաքառինք · բայց թէ որ Քրիստոս սիրենք , մեղքին դէմ պիտի գտնենք , և Հետզհետէ սուրբ պիտի ըլլանք : Ուրիշ անգամ՝ մը մարդուն մէկը Հարցուց թէ՝ արդեօք չարերը երբեք պիտի ազատի՞ն դժոխքէն , ու երկինքը պիտի ընդունուի՞ն : Եղբայրները ասոր պատասխանեցին թէ՝ որովհետև չարերը դժոխքին մէջ պիտի չարչարուին , անոնք պիտի չկրնան ալ ազատուիլ :

Ուրիշ մարդ մըն ալ Հարցուց թէ՝ ինչո՞ւ Համար չար Հրեշտակները վար ինկան : Եղբայրները ըսին անոնց թէ՝ Հըպարտութիւնն էր զանոնք վար ձգողը : Բայց երբոր տեղացիք Հարցուցին թէ՝ Հպարտութիւնը ի՞նչպէս երկինքը մտաւ , եղբայրները չկրցան անոնց պատասխան մը տալ · քանզի Աստուածաշունչին մէջ աս գաղտնիքը մեզի ծանուցուած չէ :

Աս ժողովներուն մէջ եղած Հարցումունքներէն շատը աս բանիս վրայով էր թէ՝ ինչ բան օրինաւոր է ընել , և ինչ

ապօրինաւոր ։ Աս հարցմունքներէս կ՚ե-րեւի թէ՝ անգղացիք Աստուծոյ հաճոյ ըլ-լալու կը փափաքէին ։

Մարդուն մէկը հարցուց թէ՝ հոգեւոր ժողովներու մէջ արդեօք աղէ՞կ է որ իշ-խանները հրաւիրուին աղօթք ընելու հա-մար , և նոյն ատենը աղքատ մարդիկ՝ որ գուցէ անոնցմէ աւելի բարեպաշտ ըլլան , և առ քանիս մասնակից ըլլալու չհրաւի-րուին ։ Եղբայրները ըսին թէ՝ կրօնական ժողովներու մէջ մարդոց աչառութիւն ընելը մեղք է , թէ և ուրիշ պարագա-ներու մէջ պէտք է իշխաններուն պա-տիւը պահել ։

Ուրիշ անգամ մը հարցուցին թէ՝ ար-դեօք կնիկ մը կրնա՞յ ընտանեկան աղօթքի մէջ առաջնորդութիւն ընել՝ իր էրիկը դուրս գտնուած ատենը , և հոն անոր տեղը բռնելու ուրիշ էրիկ մարդ մը չգ-տնուելուն համար ։ Եղբայրները պա-տասխանեցին թէ՝ անանկ միջոցի մը մէջ օրինաւոր է կնիկ մարդու մը ատանկ սուրբ պաշտօնի մը մէջ առաջնորդ ըլլալ ։

Անգամ մը մարդուն մէկը հարցուց թէ՝ արդեօք պէ՞տք է որ իր անունը փո-խէ , ինքը Արէօյի և խիստ չար մարդ մը

ըլլալուն համար : Եղբայրները ըսին թէ՝ քանի որ իր օրէնքը փոխուած է , իր անունը փոխել հարկ չէ :

Անգամ մըն ալ մարդուն մէկը հարցուց թէ՝ արդեօք պէտք է հիւանդը մատուռը բերել , երբոր անոր համար աղօթք պիտի ընեն : Եղբայրները անոր ըսին թէ՝ պարապ բան է հիւանդը անանկ մասնաւոր տեղ մը բերելը , որովհետեւ Աստուած ամէն տեղ մատուցուած աղօթքը կը լսէ :

Երբեմն Կիրակի օրը սուրբ պահելու վրայով հարցմունքներ կ'ըլլար : Կը հարցնէին թէ՝ երբոր մարդ մը ծանր հիւանդ ըլլար , կարելի՞ էր որ Կիրակի օր անոր հեռուն գտնուած բարեկամներուն լուր խրկուէր , մինչեւ անգամ թէ եւ անոնք ուրիշ կղզիներէ ալ ծառաներ խրկելով հոն բերուելու հարկ ըլլար : Եղբայրները ըսին թէ՝ օրինաւոր բան է ատանկ ընելը . քանզի ատիկայ բարեգործութիւն մը եւ մարդկային երջանկութեան հարկաւոր բան մը ըլլալով՝ Կիրակի օրուան մէջ կրնայ 'ի գործ դրուիլ :

Աս ժողովներուն մէջ առաջ բերուած աս հետեւեալ երկու պատմութիւններէն

կ՚իմանանք թէ՝ որչափ սոսկալի բան կը սեպէր ժողովուրդը Կիրակին ուրբ չպահելը ։ Անգամ մը 2 ծառակուր կը կենային ծովուն եզերքը ․ ծովը մակընթացութեամբ սովորականէն աւելի բարձրանալով՝ զանոնք ծովեզերքէն վերցուց տարաւ ։ Ծառակուրներուն տէրերը տեսան որ անոնք ալիքներուն վրայ կը տարուբերէին , բայց ան օրը Կիրակի ըլլալուն պատճառաւը ծովը չնետուեցան որ զանոնք քաշէին ցամաքը հանէին ։ Վերջապէս ժայռերուն զարնուելով կոտոր կոտոր եղան ։

Անգամ մըն ալ մարդուն մէկը տեսաւ որ՝ իր Նոր տնկած պարտէզին մէջ խող մը կը պտըտէր ․ մէյմըն ալ աչքին դպաւ որ ցանկին մէկ կողմը փլած էր ․ ուստի միայն խողը դուրս վռնտելը անօգուտ բան էր , թէ որ ցանկին փլած տեղը չընորոգէր , բայց ան օրը Կիրակի ըլլալուն համար վախցաւ ան գործը կատարելու ։

Աս բաները պատմող մարդիկը կ՚ուզէին գիտնալ թէ արդեօք օրինաւո՞ր էր ըրածնին ։ Եղբայրները ըսին անոնց՝ թէ սխալած էին , թէպէտ և յանցանք սեպուած բանը չընելնին աղէկ էր ։ Սուրբ Գրքին

մէջ գրուած է թէ՝ «Ի՛նչ բան որ հաւատքով չէ՝ մեղք է» ։ (Հռովմ. ԺԴ. 23 ։) Ուստի մենք ալ աս կըզգուշացնենք պէս պէտք է որ փնտռենք թէ՝ որն է սխալը և որն է ուղիղը ․ վասն զի թէ որ մէկ գործ մը ապօրինաւոր անգամ չըլլայ , երբոր կը կարծենք թէ ապօրինաւոր է , պէտք չէ ընենք անիկայ ։

Քանի մը աստուածապաշտ ծնողքներ իրենց չար և անհնազանդ տղոցը վարմունքին համար մեծապէս վշտանալով եկան եղբայրներէն խորհուրդ հարցընելու՝ թէ ինչ կերպով վարուին անոնց հետը ։ Եղբայրները ըսին անոնց որ ան պատանիները իրենց տունէն դուրս չընեն , այլ ջանան քաղցրութեամբ անոնց սրտերը մեղմացընել , և շարունակ Տէրոջմէն խնդրեն որ անոնց դարձ տայ ։

Հիմա որ Ըշիմէօյի մէջ 16 քարոզիչ կար , որոնց աղէկ կ'երևար որ անոնք ամէնքն ալ նոյն կղզւոյն մէջը չմնան ։ Սակայն հարկաւոր սեպեցին որ առաջ նաւուն շինութիւնը լմնցընեն , որ դեռ յենարաններու վրայ կը կենար , և տպագրութեան սկսած գրքերը լմնցնան ։ Եղբայրներուն 4 տարուան աշխատութեամբը

չինուած նաւը Հիմա ծովը իջեցընելու պատրաստ էր , բայց կայմերը և առագաստները տակաւին չինուած չէին :

Դեկտեմբերի 7ին նաւուն ծովը իջեցընելուն Հանդէսը կատարուեցաւ 'ի ներկայութեան Թագաւորին , և քարոզչաց , և մեծ բազմութեան ժողովրդոց : Տեղացիք պարաններով քաշեցին նաւը , ու ծովը իջեցուցին , որ ատեն բոլոր բազմութիւնը ուրախութեան ձայներ կը Հանէին :

Պօմարէ որոշեց որ աս նաւը Հաուխ կոչուի 'ի պատիւ Պատ. Հաուխսին , որ առջի քարոզիչները Թահիթի խրկելու Համար Հոգ տանող Հոգաբարձուներէն մէկն էր : Հաճելի բանը աս էր` որ Պօմարէն ընաւ աս բարերար անձին երեսը չտեսած` իր երախտագիտութիւնը կը յայտնէր անոր :

Պօմարէին Պատ. Հաուխսին ցուցուցած երախտագիտութիւնը պէտք չէ՞ որ մեզի յիշեցընէ թէ որչափ պարտական ենք սիրել ան մի միայն Անձը` որուն որ ընաւ չտեսանք , և որ ամէն երկրաւոր բարերարներուն ընելիքէն աւելի մարդասիրութիւն ըրաւ մեզի :

Պօմարէ ամէն ատեն նամակներ կը

գրէր Պատ․ Հաւատաքին, որ դեռ անտա-տէնները ողջ էր։ Հիմա հոս պիտի գտնեմ անոր նամակին մէկ մասը, որն որ գրեր էր՝ դեռ նաւը ծովը չիջեցուցած։

«ՍԻՐԵԼԻ ԲԱՐԵԿԱՄ — կը խնդրեմ որ Ճշմարիտ Աստուծոյ Յիսուսին փրկութեամբը դուք ձեր ընտանիքովը օրհնեալ ըլլաք։

«Ձեր նամակը ընդունելուս՝ զարմանք մը զիս բռնեց․ քանզի կը կարծէի որ մեր Տէրոջմէն յափշտակուած էիք։ Դու ինծի խրկած փոքրիկ ժամացոյցդ ձեռքս է, և կը պահեմ իբրև քու սիրոյդ նշան մը՝ սիրելի բարեկամ։

«Հոս շինուած նաւուն քու անունդ դրի․ աս բանիս համար ոտք կոխեցի․ քանզի ոմանք կ՚ըսէին թէ՝ ուրիշ անուն մը դնեն նաւուն․ բայց ես ըսի թէ՝ «Ո՛չ, հապա անոր անունը Հաւատաքս պիտի ըլլայ՝։ Աս բանիս վրայ ոտք կոխելուս պատճառը աս էր որ՝ դուն մեզի Թահիթեցիներուս համար մեծ խնամք տարիր, այո՛ դուք ամէնքդ ալ․ քանզի Տէրը աս խորհուրդը ձեր միտքը ձգեց, որ հոս Թահիթի պատգամաւորներ խրը-

ջէք , որպէս զի անոնք փողը հնչեցընելով կենաց ճամբան մեզի գիտցընեն :

«Երկու պզտիկ հովահարներ կը խրկեմ ձեզի , որոնցմով աս կողմերուս արքայական ընտանիքէ եղողները սովորութիւն ունէին հովահարուելու : Երբոր տօնի օրերը թագաւորը աղօթք ընելու կ'երթայէր , աս հովահարները կը գործածուէին ճանճերը վռնտելու համար :

«Ինծի խրկած պզտիկ ծրարիդ մէջի սատափէ պզտիկ տուփը ես ի՞նչ պիտի ընեմ : Թէ որ ինծի ուղղուած ըլլար՝ աղէկ , բայց անոր վրայ ուրիշ անուն մը կար , այսինքն Լաթթաքուչի Թագուհւոյնը , և ահա՛ աս է ձեզի իմացընելուս պատճառը : Աս սատափէ պզտիկ տուփը Բօրթ Ճ'աքսընի մէջ եղող Պատ · Մարստընին խրկեցի , որ ան ալ ձեզի ետ խրկէ :

«Թէ որ նորէն ինծի գիր գրէք - մեծապէս պիտի ուրախանամ : Թէ որ կը հաճիք՝ ինծի 3 գիրք խրկեցէք · մէկ հատ խիստ մեծ Աստուածաշունչ մը , մէյմըն ալ խիստ պզտիկ՝ ծոցս պահելու համար , մէյմըն ալ աշխարհագրութեան գիրք մը : Իսկ եթէ աս խնդիրքս ձեզի հաճելի չերեւնայ , դուք ո՛ղջ կեցէք : Սիրելի բա-

ընկած , աս չնչին աղաչանքը որ իմ նա– մակիս վերջը ձեզի ըրի , կը խնդրեմ որ իմ վրայօքս գէշ կարծիք մը ընելու ա– ռիթ չըլլայ :

«Յիսուս Քրիստոսի օրհնութիւնը ձեր վրայ ըլլայ , ան՝ որ փրկութեան ճշմարիտ թագաւորն է , և որուն միջոցովը մենք ամէնքս պիտի փրկուինք :

"ԲՕՄԱՐԷ"

Եղբայրներէն մէկը Պատ. Ափլըրն իր կնիկը և իր չորս տղաքը հետը առնելով՝ գրեթէ անմիջապէս Թահիթիի մէջ Մա– թավայի կոչուած տեղը դարձաւ , ուր որ քարոզիչները առաջուց բնակեր էին : Նոյնկայ Թահիթիի ժողովուրդին շատե– րուն ուրախալի օր մը եղաւ , քանզի նո– րէն իրենց ուսուցչին երեսը տեսան՝ որ կու գար իրենց մէջը բնակելու . ինչու որ եղբայրներուն ան կղզիէն հեռանալը 9 տարի էր եղեր : Թահիթիի բնաւ մէկ ու– րիշ կողմը Մաթավայի չափ անօրէնու– թիւնը տիրած չէր , և պատճառը աս էր՝ որ Անգղիական նաւերու մէջ գտնուող չար նաւաստիները հոն ելլելով , ադելեր հեղանութիւններ կը ծախէին , և տեղացւոց չար օրինակ կ'ըլլային : Նոյնպէս ամենայնիւ

Հոն ալ քանի մը տասնեակներ մարդիկ կը գտնուէին , որոնց Հիմա մէկ օրինակ մը պիտի տամ : Երկուշաբթի երեկոյեան ժողովքէն ետեւ մարդուն մէկը՝ անգամ մը Պատ . Ուիլըրնին ետեւէն անոր տունը գնաց , եւ ըսաւ անոր . «Օրհնութի՞ւն բան է որ ժողովուրդը մատուռներուն մէջ ա-ղօթք ընելու գացած ատենը լայ . քանզի ես աղօթք ըրած ատենս լալս չեմ կրնար բռնել : Արդեօք ուրիշ մարդիկ ալ կու լա՞ն» :

Հարցուց Պատ . Ուիլըրն՝ թէ «Ինչո՞ւ համար կու լաս»:

Պատասխան տուաւ մարդը . «Աս-տուծոյ ինծի ըրած մեծ բարիքը , Քրիս-տոսի սէրը՝ որ ցուցուց մեղաւորաց Հա-մար մեռնելովը , եւ իմ դարձի գալս , ու գէշ վարմունքս յիշելով՝ կու լամ»: Պատ . Ուիլըրն աս դարձի եկող մեղաւորին վրայ ուրախացաւ , աղէկ գիտնալով թէ որ-չափ ընդունելի էին իր արցունքները Անոր՝ որ ատենօք իր աչքերը խոնարհ եւ երախ-տագէտ սիրոյ արտասուքով լուալու թող տուաւ :

## ԳԼՈՒԽ ԺԸ

Տեղացւոց ամէն բանէն աւելի զարմանա-կան սեպած բանը ինչ էր ։

Ու Հիմա կըզգեցիք ակնկառոյց կը սպասէին վայելելու անանկ պատուական գիրք մը՝ որուն նմանը դեռ տեսած չէին ։ Եւ թէպէտ աս գիրքը բոլոր Աստուա-ծաշունչը պիտի չպարունակէր , այլ միայն Ղուկասու աւետարանը , այսու ա-մենայնիւ անիկայ վայելելուն երևակայու-թիւնը այնպիսի խնդութեամբ լեցուց զա-նոնք , որ իրենց ուրախութենէն քուներ-նին չէր տաներ ։

Շատ տարիէ 'ի վեր էր որ Պատ. Նոթ Ղուկասու աւետարանը Թահիթեցւոց լեզուին թարգմանելու զբաղած էր , և Պօմարէ խիստ օգտակար եղաւ աս գոր-ծին մէջ օգնութիւն ընելով Պատ. Նո-թին , և թարգմանութեանց օրինակելով ։

Այսքի եկող 6 քարոզիչները Հեռակրնեն խիստ շատ թուղթ բերեր էին , անանկ որ Պատ. Նոթ ուզեց որ Ղուկասու աւետարանը 3000 օրինակ տպէ . Թէ-

պէս և կը վախնար ալ որ այնչափը բաւական չըլլայ ամէն կարդալ գիտցողներուն տրուելու համար ։

Մինչև աս ժամանակս իրենց տպած տետրակները քիչ տուեր էին . բայց հիմա միաբան համաձայնութեամբ որոշեցին՝ որ Ղուկասու աւետարանը գնով ծախեն , որպէս զի ան գնով ալ աւելի թուղթ ծախսու առնեն , և ուրիշ գրքեր ալ տըպեն ։ Մէկ օրինակին համար որոշուած գինը եօթնուկէս հօխայի չափ գազայի ընկուզի եղ էր ։ Գրքերուն պատրաստուելէն քանի մը ամիս առաջ տեղացւոց պատուիրեցին՝ որ եղէն պատրաստութիւնը տեսնեն * ։

Աս գրքիս տպուած ատենը՝ կղզեցիներէն տպարանը տեսնելու եկողները անոր զանազան տեղերէն շատ փափաքով կը կարդային , և այնչափ շատ հարցմունքներ կ'ընէին իրենց կարդացածնուն վրայով՝ որ Պատ . Յուլիս շատ անգամ կը ստիպուէր գործէն դադարիլ , անոնց հար-

* Եղը աս կերպով կը պատրաստուէր ։ Գազայի ընկուզին միջուկը փորելով կը հանէին , ու տաշտի մը մէջ կը դնէին . ետքը երբոր արեւը դնէին , տաքութենէն եղը դուրս կ'ելլէր ։

ցուցած բաները բացատրելու համար ։ Աս այցելուները ոչ միայն ընդհանրապէս տպարանը կը լեցունէին , այլ մինչեւ անդամ պատուհաններուն առջին իրարու վրայ կը դիզուէին ․ եւ անոնք՝ որ խուռն բազմութենէն չէին կրնար մօտ երթալու միջոց մը գտնել , աս շէնքին բոլորտիքը եղող բարձր վանդակապատին վրայ կ՚ելլէին կը նստէին , եւ կամ իրենց ընկերներուն վրայ ցատկելով՝ անոնց շալակը կը հեծնէին ։

Գիրքերուն լմննալը մօտենալուն՝ բազմութիւնը հետզհետէ աւելնալու վրայ էր ։ Զանազան կողմերէ անհամար մարդիկ կու գային , անանկ որ ծովեզերքը ծառակուրներով ծածկուած էր , ու ցամաքը վրաններով կէտաւանէշ յօրինուած ։

Քարոզիչները չուզեցին որ աս գրքերը չկազմուած բաժնեն ժողովուրդին ։ Առջի բերան՝ Անգղիայէն բերուած ստուարաթուղթով եւ ոչխարի կաշիով կազմեցին գրքերը ․ բայց երբոր աս նիւթերը հատան , ստիպուեցան տեղացւոց գործած լաթովը գրքերուն ծածկոցները շինել , եւ հին օրագիրներ ծիրանեգոյն հիւթով մը ներկելով վրան փակցնել ․ Թագաւորին

տրուելու գիրքը առնելէ զեղչեցին կերպով մը կազմեցին , այսինքն կարմիր կաշիով :

Վերջապէս ժողովուրդը այնչափ ան-համբերութեամբ կը փափաքէին աս գիրքը առնալու , որ եղբայրները ալ գիրք կազմելը ձգեցին : Ուրախ սրտիւ կը տես-նէին որ տեղացիք աս անգին գրքերը ա-ռանց ծածկոցի չէին թողուր : Աս միջո-ցիս շուներուն , կատուներուն , և այ-ծերուն կեանքը մեծ վտանգի մէջ էր ․ քանզի տեղացիք անոնց մորթերուն հա-մար կ'որսային զանոնք , ու ետքը վրայի մազերը քերելով կը հանէին , ու ծանր քանի մը տակ կը ճմլէին , և կաշին արեւը կախելով կը չորցընէին , զանոնք գրքի ծածկոց շինելու կը պատրաստէին : Եղ-բայրները՝ տպարանին բոլորտիքը եղող բո-լոր ծառերուն վրայ փայտէ շրջանակներ-ով խիտ առ խիտ կախուած կենդանի-ներու մորթերուն նայելով կը զուարճա-նային : Այսյն տանկը ժողովուրդը երենց գրքերը չաղտոտելու և չպատռելու հա-մար մեծ հոգ կը տանէին , և զանոնք կար-դալու համար ունեցած փափաքնին չկրը-նալով զսպել , բարակ տախտակի կտոր-ներու մէջ կը դնէին գիրքը , ու այնպէս

կը գործածէին մինչև կաշկանդրուն պատրաստուիլը : Ասոնց կազմուելէն ետքն ալ՝ գործնական գոհ չըլլալով, հետերնին առած առնննին կամ մախաղի, և կամ հողոյին մէջ կը դնէին մաքուր պահելու համար : Քիչ մը ատեն տուներնէն հեռանալու որ ըլլային, գրքերնին ծուր պահելնին չէին գիտեր. քանզի հետերնին առնելու կը վախնային, որ չըլլայ թէ վնաս մը հասնի իրենց գանձերուն. և զանոնք տունն ալ թող տալ չէին ուզեր, որ չըլլայ թէ իրենց դուրսը գտնուած ատենը փորձանք մը պատահի անոնց :

Հիմա մէկ օրինակով մը պիտի ստորագրեմ ձեզի տեղացւոց ան գրքեր պահենալու փափաքը, որ ետքն ալ այնչափ մեծ փութով պահեցին զանոնք :

Խրիկուն մը Թահիթիէն 5 հոգի Աֆարէաիաթու գալով՝ արտորնօք Պատ․ Ն․Ալլիսին տունը գացին : Պատ․ Ն․Ալլիս դուռը ելաւ, ու հարցուց անոնց՝ թէ ինչ կ'ուզեն :

Ամէնքնին մէկտեղ ըսին թէ՝ «Ղուկասու պատգամն» է ուզածնին, ու ետքը գագաթոյի ընկուզին եղը ցուցուցին,

Անոնք ալ պատասխանեցին թէ՝ “Այո՛, հոս էինք”:

Անատեն հարցուց թէ՝ “Ինչո՞ւ համար տուն մը չգացիք որ հոն կենայիք”:

“Վախցանք որ”, ըսին, “չըլլայ թէ մեր ուրիշ տեղ երթալնիս առտուանց մեզմէ կանուխ ուրիշ մէկը գայ, և մեզի համար պահելու գրքերդ ծախու առնէ, ու մենք ստիպուինք ունայնաձեռն ետ դառնալ: Երէկ գիշեր մեզմէ զատուած ատենդ, որոշեցինք որ աս տեղէն քայլ մը անդին չերթանք, մինչև որ գրքերը ձեռք չանցընենք”:

Աս պատասխանս Պատ. Աշլիսը զարմանքի և ուրախութեան մէջ ձգեց: Ուստի ան մարդիկը տպարանէն ներս առաւ, և կարելի եղածին չափ շուտ մը գրքին չկազմուած թերթերը պատրաստեց, և անոնց ամէն մէկուն Ղուկասու աւետարանէն մէյմէկ անկազմ օրինակ տուաւ: Անոնք ալ աղաչեցին՝ որ ուրիշ 2 օրինակ ալ տայ անոնց մէկ մօրը ու մէկ քրոջը համար: Աս գրքերն ալ առալէն ետև՝ գագաօյի ընկուզի եղ առաւ անոնց տեղը: Այնուհետև ամէն մէկերնին իրենց գրքերը ծառի կեղևէ շինուած

ճերմակ լաթի կտորուանքներու մէջ փաթթելով՝ ծոցերնին դրին, ու դէպ 'ի Թահիթի նաւեցին, առանց բան մը ուտելու կամ ջուր մը խմելու, կամ իրենց Էյիմէօ եղած տանը բարեկամի մը այցելութիւն ընելու :

Հաւանական է որ ժողովուրդէն շատերը՝ որոնք առերևոյթ սէր մը ունէին Աստուծոյ խօսքին վրայ, աւելի կը փափաքէին գրքի մը տէր ըլլալու, քան թէ Աստուծոյ կամքը ճանչնալու. իսկ ուրիշները ճշմարտապէս կը սիրէին Աստուծոյ խօսքը. քանզի անիկայ կարող էր փրկել անոնց հոգիները՝ Քրիստոսի վրայ ունեցած հաւատքնուն միջոցովը : Եւ հիմա Ղուկասու աւետարանը առտուան և իրիկուան աղօթքներու ժամանակ՝ բազմաթիւ ընտանիքներու մէջ կը կարդացուէր : Շատ անգամ ցորեկ ատեն կը տեսնուէր որ՝ մարդիկ ծառի մը հովանւոյն տակը պար առեալ՝ նստած՝ կղզեցւոյ մը բարձրաձայն Աւետարան կարդալը մտիկ կ'ընէին :

Հիմա քարոզիչները մտքերնին հաստատեցին՝ որ ալ իրարմէ զատուելու ատենն է որ այլ և այլ կղզիներ երթան քնա-

սա երկիրս մէջ Աւետարանին յարգը գիտցողներուն ամէն մէկուն ծանր բեռ մը պիտի ըլլայ՝ տաքին պղնձափ եղ ժողվելը" :

"Ո՛չ", պատասխանեց Նունա, "չեմ կարծեր որ տաղտանիկ ըլլայ" :

"Սուրբին", ըսաւ Թագաւորը, "սա բանիս վրայով խորհէ, ու սա բանիս համար միաբանելով մէկտեղ խորհուրդի նստինք" :

Թագաւորն ու իշխանները առանձին խորհուրդի նստան քարոզիչներուն հետ, և սա նոր ընկերութեանը համար պէտք եղած բոլոր կանոնները կարգի գրին :

Մայիսի 13ին՝ Էյմէօյի մէջ Պապէ-թօայի կոչուած տեղը մեծ ժողով մը եղաւ. բոլոր քարոզիչներն ալ հոն ժողվուեցան, և Թահիթիէն բազմաթիւ կղզեցիներ հոն եկան : Ան օրը տեղացիք մէյմը իրենք իրենցմէ ժողվուեր աղօթք ըրեր էին արևուն ծագած ատենը, և մէյմըն ալ եղբայրներուն եկած ատենը ըրին : Անանկ որոշուած էր որ աստուածային պաշտօնը մատուռին մէջ պիտի կատարուէր՝ կէս օրէն իրեք ժամ առաջ սկսուելով. բայց որոշուած ժամէն շատ

առաջ ան տեղը այնչափ բազմութիւն խռներ էր, որ ժողովուրդը յարմար սե-պեց ան մօտ տեղուանքը եղող դադարի անտառացեալ ծառերուն տակը երթալը ։

Ուղևորները աս ծառաստանը մտնելով՝ հոն ժողովուրդը արդէն ժողվուած գը-տան, և աս տեսարանին գեղեցկութեանը վրայ ապշեցան մնացին ։ Աս ծառաստանը ծովուն մօտն էր, և սեպացեալ ժայռե-րու ու բարձր լեռներու ստորոտն էր ։ Ծովեզերքին վրայ խեցեմորթներ և ճեր-մակ բուսեր սփռուած էին. ցցուած ժայռերէն զանազան գեղեցիկ բոյսեր կա-խուած էին, նոյն ատենը ուրիշ բոյսեր ալ ծառոց բուներուն վրայ փաթթուած՝ մինչև ան ծառերուն ոստերէն մէկզմէկու պլլուած վարդագոյն ծաղիկներով կը զար-դարէին ։ Ծառերը այնչափ բարձր էին, և անհամար մեծ ու խիտ տերևներով ծած-կուած, որ անոնց ոստերուն տարածու-թիւնը ժողովուրդին վրայ բարձրաբերձ առաստաղ մը կը ձևանար, և զանոնք արևուն ջերմութենէն. բոլորովին կը պա-տըսպարէր ։ Խուռն բազմութիւն իրենց երկրին սովորական հագուստովը նստած էին անոնց հովանուոյն տակը խիտ դալա-կաց վրայ ։

Պատ. Նօթին համար բարձր ծառի մը բունին քովը փայտաշէն փոքրիկ սեղան մը պատրաստեր էին : Թագաւորը անոր դիմացը բազկաթոռի մը վրայ նըստեր էր , ու դեղին Ռիբո-Ռա մը հագեր էր , կուրծքին վրայ եկած կողմը ծիրանեգոյն ծաղիկ մը նկարուած : Թագուհին ու անոր տիկինները և շատ իշխաններ ալ Թագաւորին մօտ նստեր էին :

Ի՞նչ ուրախալի բան մըն էր աս , երբոր մէկը մտածէր որ աս ժողովուրդին ժողվուիլը չէ թէ պատերազմի համար , կամ արիւնաշաղախ զոհերու , կամ զեղխութեան , և կամ անկարգ խնջոյքներու համար էր` առջի ժամանակներու պէս , հապա Աստուծոյ խօսքը խեղճ ու տգէտ հեթանոսներուն խրկելու համար :

Ժողովքը երգով և աղօթքով սկսուեցաւ . ետքը Պատ. Նօթ քարոզ մը տուաւ սա խօսքը բնաբան դնելով . ‘‘Կարդացածդ կը հասկընա՞ս արդեօք” . նոյնպէս ալ Եթէովպացւոյն խօսքը . ‘‘Ինտո՞ր կրնամ հասկընալ , թէ որ մէկը ինծի չառաջնորդէ”: (Գործ. Ը. 30 , 31:)

Քարոզը լմննալուն` Ռօմարէ իր ժողովուրդին ատենախօսութիւն մը ըրաւ :

Նախ անոնց յիշեցուց իրենց առջի վի-
ճակը , որ առեն իրենց ամենալաւ ձու-
կերն ու պտուղները կուռքերնուն կը մա-
տուցանէին , ու մինչև անգամ մարդ ալ
կը զոհէին : Ետքը ստորագրեց Աւետա-
րանին միջոցով իրենց հիմակուան վայե-
լած երջանկութիւնը , և առաջարկեց որ
իրենց ստացուածքէն օգնութիւն ընեն
զանիկայ ուրիշ երկիրներ ալ խրկելու :
Նա ալ իմացուց՝ թէ ինքը կ'ուզէ որ յօ-
ժարակամ եղողները միայն օգնութիւն
մատուցանեն . և որովհետև ինքը ըսեր
էր թէ՝ Աւետարանը չսիրողները յօժար
կամօք օգնութիւն չեն մատուցաներ , աս
պատճառաւ կ'ուզէր որ աս օգնութիւնը
բռնութեամբ չպահանջուի , ոչ ալ ա-
նարգ և ագահ կոչուին աս բանիս ձեռն-
տուութիւն չընողները : Բօմարէ իր խօսքը
վերջացուց՝ խնդրելով որ Քարոզիչ խըր-
կելու ընկերութիւն մը հաստատուելուն
փափաք ունեցողները ձեռքերնին վեր վեր-
ցընեն : Հարիւրաւոր թխամորթ բա-
զուկներ մէկ վայրկեանի մէջ դէպ 'ի եր-
կինքը վեր վերցուեցան : Անիկայ ուրա-
խառիթ տեսարան մըն էր եղբայրներուն ,
որոնք կը յիշէին թէ՝ 'ան ձեռքերը ա-

դաշնուց ի՛նչ սոսկալի չարագործութիւններ ընելու գործածուեր էին ։

Եւ որովհետև արեգակը իր ճառագայթները ծովուն հեռաւոր ալիքներուն տակը ամփոփելու վրայ էր , թագաւորը իր աթոռէն ելաւ ։ և ժողովուրդը ուրախութեամբ տուներնին դարձան . բայց մեծ էր անոնց ուրախութիւնը , որոնք սերմաներ էին ան բարի սերմը , որ հիմա շատ սրտերու մէջ բուսնելու սկսեր էր ։

Աս ժողովքը եղած ատենը Պատ. Էլլիս՝ Ղուկասու աւետարանին բոլոր օրինակները դեռ ծախած չէր , աս պատճառաւ իր եղբայրներէն մէկ քանիներուն հետ Ափարէաիթու դարձաւ քիչ մը ժամանակ հոն մնալու համար ։

Բայց շատ չանցած՝ եղբայրներուն զանազան կղզիներ երթալու և բնակելու ժամանակը հասաւ ։ Հաուէիս նաւը հիմա բոլորովին լմնցած և պատրաստ էր զանոնք իրենց նոր վիճակները տանելու ։

Պատ. Էլլիս որոշեց որ Էիմէօյէն ելլէ , և Հուահինէ կղզին երթայ ։ 9 տարի առաջ քարոզիչները լման 1 տարի բնակեր էին ան կղզին , և ան ժամանակէն 'ի վեր ան տեղի բնակիչները իրենց կուռ-

քերը կործաներ էին , և շատ մատուռներ չմներ էին :

Պառ. Ալլիս մեծապէս վշտացած զատուեցաւ Աւիմէօյէն . քանզի իր հոն թընակած տեղը շատ գոհ էր անոր տեղի բնակիչներէն , որոնք այնչափ պարկեշտութեամբ վարուեր էին , որ թէ և Պառ. Ալլիսին դուռը նիգ կամ կղպակ չունէր , բայց բան մըն ալ չէր գողցուեր : Անոնց առջի բնաւորութիւնը արդէն մոռցած պիտի չըլլան . բայց հիմա՝ ալ գողութիւն մը չէին ըներ :

---

## ԳԼՈՒԽ ԺԹ

### Ռըրէ-տամպէրոնէան եկեղեցին :

Քանի մը ժամանակէ 'ի վեր էր որ Բօմարքէն Թահիթիի մէջ մեկ խիստ մեծ և գեղեցիկ եկեղեցի մը շինելու սկսեր էր Բաբաօ կոչուած տեղը , որ Մաթավայիէն միայն 4 մղոնի չափ հեռաւորութիւն ունէր :

Քարոզիչները թագաւորին խորհուրդ

տուլին, որ այնչափ մեծ եկեղեցի մը չշինէ , որն որ զուցէ պզտիկկի մը չափ օգտակար պիտի չըլլար . բայց Ռոմաբէ պատասխան տուաւ , թէ Սողոմոն թագաւորը ժամանակով խիստ շքեղ տաճար մը շինեց , և թէ ինքն ալ կ'ուզէ անոր նմանիլ : Անոր աս մեծ եկեղեցւոյն շինութիւնը 1819ին գարնան մէջ լմնցաւ : Աս շէնքը 133 պատուհան , և 29 դուռ ունէր . երկայնութիւնը 712 ոտք էր , և լայնութիւնը 54 ոտք :

Այսչափ երկայնութիւն ունեցող եկեղեցի մը չկար * : Ու որովհետև անկարելի բան էր , որ քարոզիչ մը իր բոլոր քարոզը մինչև եկեղեցւոյն ծայրը լսեցընելու համար շարունակ բարձրաձայն խօսի , աս պատճառաւ 3 ամպիոն դրեր անոր մէջը : Եկեղեցւոյն առաստաղը բարակ փախաթով ծածկուած էր , և յատակը չոր խոտերով . և ժողովուրդին համար խիստ շատ նստարաններ և բազմոցներ շարուած էր : Աս եկեղեցւոյն մէջ ամենէն նշանաւոր բանը ջուրի գետակին էր , որ անոր մէջտեղէն կողմնակի

* Լօնտրայի Սուրբ Պօղոսի եկեղեցւոյն երկայնութիւնը 500 ոտք է , և լայնութիւնը 180 ոտք :

ընթացքով կը վազէր ։ Այս գետակը եկեղեցւոյն մէջ իյնալը շինութեանը ըսկըսուելէն ետև տեսան ։ Շինողները կրնային աս գետակին ճամբան ուրիշ տեղ մը դարձընել , որ լեռներէն բղխելով՝ ծովը կ'իջնէր , բայց գուցէ ան ատենը ջուրը պիտի յորդէր • աս պատճառաւ թողուցին որ եկեղեցւոյն մէջտեղէն անցնի երթայ ։ Կարծեմ թէ՝ աս գետակին մօտ նստողները անոր կենդանի ջուրը տեսնելով՝ պէտք էր մտքերնին բերէին ան կենդանի ջուրը՝ որ կու տայ Յիսուս իրմէ խնդրողներուն , նաև ան ապակեղէն գետը՝ որ Աստուծոյ քաղաքը կ'ուրախացընէ ։

Այս եկեղեցին Արքունի քարոզչաց եկեղեցի կոչուեցաւ ։ Բոլոր կողմերէն բազմաթիւ մարդիկ դունդ դունդ հոն կը ժողվուէին , առջև պաշտամունքին ներկայ գտնուելու համար , որ Մայիս ամսուն մէջ պիտի կատարուէր ։ Այս հանդէսիս տես եկողներուն վրանները ծովեզերքին քովը 4 մղոն տեղ բռնած էին ։

Եկեղեցւոյն բացուած օրը՝ Թագաւորն ու անոր ընտանիքը ներկայ էին ։ Ամեն մէկ ամպիոնին վրայ մէյմէկ քարոզիչ ե-

լաւ: Պատ. Տարլէնկ՝ որ մէջտեղի ամպիոնին վրայ էր, բոլոր ժողովուրդին լսելուն չափ բարձր ձայնով երգ մը կարդալէն ետքը, նոյնը եկեղեցւոյն մէջ գտնուող 6000 մարդիկը անոր հետ միաբերան երգեցին: Ասկէ ետև ամէն մէկ քարոզիչ Ղուկասու ԺԴ. գլուխը կարդաց իր բոլորտիքը եղող ժողովուրդին, ու ետքը աղօթք ըրաւ: Թէպէտ և 3 ձայն մէկէն կ'ելլէր, բայց տեղին ընդարձակութենէն իրարու արգելք չէր ըլլար: Ան 3 քարոզը մի և նոյն ատեն սկսուեցաւ, և գրեթէ նոյնպէս մէկտեղ վերջացաւ: Այնուհետև ժողովքը միաբերան երգ մը երգեց. ու քարոզիչները աղօթքով վերջացուցին պաշտամունքը: Ահա այսպէս արձակուեցաւ աս ուրախալի ժողովը:

Հետևեալ օրը ժողովքը նորէն գումարեցաւ Քարոզիչ խրկելու ընկերութեան համար որոշուած 3 քարոզը մտիկ ընելու: Կէս օրէն ետև ուրիշ 3 քարոզ ալ մտիկ ըրին: Արդէն շատ մարդիկ ստորագրուած էին ընկերութեան օգնութիւն մատուցանելու համար: Թղթաւորը՝ ստորագրուողներուն ցուցակին իր

անունը գրեր էր՝ տարին 8 խոզ տալու ։

Միւս օրը՝ որ Հինգշաբթի էր , քանի մը որոշուած օրէնքներ Հրապարակաւ ժողովուրդին ծանուցուեցաւ ։ Թագաւորը ան օրէնքները առաջուց շարադրեր էր իր իշխաններուն խորհրդակցութեամբը , և քարոզիչներուն խրատներովը , և զանոնք իր ձեռօքը գրեր էր ։ 18 յօդուած էին սահմանուած օրէնքները ։ Անոնց մէջ պարունակուած էր մարդասպանութեան , ապստամբութեան , գողութեան , և շաբաթապղծութեան օրէնքները ։

Միայն մարդասպաններն ու ապստամբները մահուամբ պիտի պատժուէին սա օրէնքներուս համեմատ . իսկ գողերը կը պարտաւորէին միայն իրենց գողցած բանին չորեքպատիկը հատուցանել ։

Աս օրէնքները հրատարակուելու օրը՝ ժողովուրդը եկեղեցին ժողվուեցաւ , և Ռօմարէ աղաչեց Պատ. Փրուքին որ առաջ աղօթք մը ընէ , և Սուրբ Գիրք կարդայ ։ Ետքը Ռօմարէ մէջտեղի ամպիոնը ելաւ , և ուրախ սրտիւ շուրջանակի իր հպատակներուն վրայ նայելով՝ դարձաւ իր իշխաններէն մէկուն խօսեցաւ , որուն անունը Թոմաթի էր , և ը-

սաւ. «Թամթի, ի՜նչ բանի կը փափա-
քիս, ի՜նչ կ'ուզես որ քեզի ընեմ»:

Թամթի իշխանը՝ որ ամպիոնին դիմա-
ցովը նստած էր, ոտքի վրայ ելաւ ու
ըսաւ. «Ասոնք են մեր ուզածները —
ձեռքդ բռնած թուղթերդ — օրէնքները:
Մեզի տուր անոնք, որ մենք ալ ձեռ-
քերնիս բռնենք, որ կարենանք յարգել
զանոնք, և իրաւունքը կատարենք»:

Երբ Թագաւորը գորովանոք մէկ ու-
րիշ խիստ բարեպաշտ իշխանի մը ըսաւ.
«Սութամի, ի՜նչ բանի կը փափաքիս»:
Անիկայ պատասխանեց. «Ամէնքս ալ
միայն մէկ բանի կը փափաքինք — Թամ-
թիին ըսածին — ձեռքդ բռնած օրէնք-
ներուդ»: Երբ Թագաւորը միւս իշ-
խաններուն ալ սա կերպով խօսեցաւ:
Անկէ ետև բարձր ձայնով կարդաց 18
օրէնքները, և անոնց զանազան յօդուած-
ները մեկնեց: Ամէն մէկ օրէնքը կար-
դալուն, Թագաւորը իշխաններուն կ'ը-
սէր. «Աս օրէնքիս կը հաւնի՞ք»: Եւ
իշխանները ամէն մէկ հարցմունքէն ետքը
այսպէս կը պատասխանէին. «Բոլոր սըր-
տով կը հաճինք ատոր»: Այնուհետև
Թագաւորը ամէն մէկ օրէնքը կարդալէն

տաքը կ՚ըսէր ժողովուրդին ,` թէ որ կը հաւնին ան օրէնքին , թող իրենց աջ ձեռքերը վեր վերցընեն : Աս բանս մէկ վայրկեանի մէջ կը կատարուէր . և վեր վերցուած բազուկները այնչափ շատ էին , որ անոնց շարժումէն շառաչիւն մը կը լսուէր : Երբոր կարգը ապստամբութեան դէմ եղած օրէնքին եկաւ , թագաւորը գրեթէ անիկայ զանց ընել կ՚ուզէր . քանզի շատ մարդիկ որ առաջուց անգամ մը իրեն դէմ ապստամբեր էին , հիմա հոն ներկայ կը գտնուէին : Սակայն երբոր ան օրէնքը կարդաց , Թաթի` որ ժամանակով ապստամբներուն պարագլուխը եղած էր , սովորականին պէս միայն մէկ ձեռքը վեր վերցընելը բաւական չսեպելով , ոտք ելաւ , ու երկու ձեռքը մէկէն վեր վերցուց , և ժողովուրդին ալ աղաչեց որ նոյն բանը ընեն : Ասիկայ հպարտ և ապստամբ սրտերուն մէջ Աւետարանին ըրած փոփոխութեանը մէկ օրինակ մըն էր :

Հետևեալ Կիրակին գումարուած ժողովը խիստ սրտաշարժ էր , որուն նմանը դեռ եղած ալ չունէր : Բոմարէն` որ երկար ժամանակէ ՚ի վեր պատրաստ էր

արձանագրուելու իբրև հեթանոսութենէ առաջին դարձի եկած , այլ աս մօտ ժամանակներս սաստիկ փափաք մը ցուցուցեր էր ինքզինքը Աստուծոյ նուիրելու ․ ու աս միջոցիս եղբայրներէն շատ հոգեշահ բաներ սորվեցաւ ։ Ան առտուն 3 քարոզ տրուեցաւ ․ քարոզը վերջանալուն՝ Թագաւորը իր հաւատքը խաչեալ Փրկչին վրայ ըլլալը դաւանելով եկեղեցւոյ անդամ եղաւ ։ Եղբայրները որ երկար ժամանակ անոր հոգւոյն համար հոգ տարեր էին , աս հանդիսաւոր դաւանութիւնը խորունկ տպաւորութիւն մը ըրաւ իրենց սրտին մէջ ։ Պատ․ Պինէլ գորովանօք աղաչեց զանիկայ՝ որ իր ըրած դաւանութեանը վայելելու կերպով վարուի , յիշեցընելով անոր՝ թէ քանի որ թագաւորական բարձր պաշտօնը կը վարէ , մարդոց աչքերը , նմանապէս Աստուծոյ և հրեշտակներուն աչքերն ալ իր վրայ են ։

Ետքը Պատ․ Հէնրի յորդորեց ժողովուրդը՝ որ Թագաւորին օրինակին հետևին , ու ինքզինքնին Տէրոջը տան ։ Երգն ու աղօթքը լմնցնելէն ետև , Թագաւորը գորովալից սիրով բոլոր եղբայրներուն ձեռքը բռնելով թօթվեց ։

Արդ. հիմա վերջացուցինք Արքունի քարոզչաց եկեղեցւոյն առջի բացուած շաբաթը պատահած բաներուն ստորագրութիւնը : Ո՛հ , որչափ տարբեր էին սա ժողովքները ան խնճոյքներէն , որոնց մէջ Իսմարէն ու անոր հայրերը շատ անգամ մարդոց արիւնաներկ անդամները իշխաններուն բաժին կը խրկէին , երբեք սատուածոց նուիրուած զոհեր : Ըս տարւոյն մնացորդը բարեբաստիկ դէպքերով անցաւ :

Ամովհետև բոլոր ժողովուրդը աւելի կը հաւնէին Անգղիացի քարոզիչներուն տուած քարոզին՝ ու անոնց մտիկ ընել կ'ուզէին , քան թէ տեղացւոց տուածին . շատ հեռաւոր տեղերէ ան մատուռները կու գային՝ ուր որ անոնք քարոզ կու տային : Ըս պատճառաւ ալ անոնց պզտիկ մատուռներուն մէջ պաշտամունք չկատարուելուն համար , անոնցմէ ոմանք հինցեր կը փլփլէին , և ուրիշներն ալ դպրոցի տեղ կը գործածուէին : Աղեցիներէն շատերը կու գային ու եղբայրներուն եղած տեղերուն մօտ կը բնակէին . իսկ անոնք որ հեռաւոր տեղեր երկիրներ ունենալով՝ չէին կրնար գալ անոնց մօտ

բնակիլ , շաբաթ օրերը կէս օրէն ետև իրենց ծառակուընները կը մտնէին , ու եղբայրներուն եղած տեղը ելլելով՝ հոն ծովեզերքին քովը իրենց վրանները կը կանգնէին ։

Մարդ կ՚ուրախանար , երբ կը տեսնէր որ ժողովուրդը շաբաթ օրուընէ կը պատրաստէին իրենց կերակուրը , և այս պատճառաւ ան օրը «Կերակուրի օր» կ՚անուանէին ։ Կրակ կը վառէին , ու անոր վրայ իրենց պանանայէ և հացածառի պտուղէ ու գագաօյի ընկուզի կաթէ շինուած կարկանդակները կ՚եփէին ։ Երիկ մարդիկ ձեռքերնին ջուրի ամաններ առած՝ տուներէն լեցընելով կը դառնային , որ Կիրակի օրը ձեռքերնին լուալու գործածեն , ու կնիկներն ալ պնակի համար հացածառի տերևներու խուրձեր կը բերէին ։ Ամէն տուներու մէջ կերակուրի փոքրիկ կողովներ կախուած էր մեծ ցիցերուն վրայ գամուած փայտէ բևեռներէն . ամենէն աղէկ հանդերձներնին դարաններէն կը հանէին , որ հագնելու պատրաստ ըլլան ։ Կղզեցիք շաբաթ իրիկունը երգելով՝ կարդալով՝ ու աղօթք ընելով կ՚անցընէին իրենց տուներուն մէջ ։

Կիրակի օրը մէկը ծառի վրայ չէր ելլեր , ու կրակ չէր վառուեր , Հապա ան օրը հոգևոր բաներու եռևէ կ'ըլլային : Երևը ծագելուն պէս ժողովուրդը առանձին աղօթք կ'ընէր , ինչպէս որ սովորութիւն ունէին , կամ մացառներու մէջ , կամ փոքրիկ աղօթարաններուն մէջ , և կամ իրենց տանը մէջ առանձին մէկ կողմը քաշուելով :

Առաւօտուն ժամը 7ին աղօթքի և Սուրբ Գրոց ընթերցման համար եկեղեցին կը ժողվուէին , թէ և քարոզիչները դեռ անատենը եկած չէին ըլլար : Ժամը 8էն մինչև 9 դպրատան տղաքն ու աղջիկները դպրոցին մէջ կը ժողվուէին : Կղզեցիք իրենք ալ իրենց զաւակացը աստուածգիտութիւն կը սորվեցընէին , և մտիկ կ'ընէին անոնց երգ երգելն ու քրիստոնէական կարդալը :

9ին քառորդ մը մնալուն՝ մէյմ'ալ նայիս ձայն մը կը լսուէր . երբեմն մեծ խեցեմորթի մը ձայն , որ մարդ մը գեղին բոլորտիքը պտըտելով՝ փողի պէս կը հնչեցընէր . ուրիշ տեղեր ալ՝ ծառէ կախուած երկաթի մը քարով զարնուելուն ձայնը . և ուրիշ տեղեր ալ՝ պզտիկ զան-

զանկի ձայն • բայց ինչ տխուր ձայն որ ըլլայ՝ թող ըլլայ , անոնց նշանակութիւնը մի և նոյն բան էր — «Տէրոջը տունը հըրաւիրեցէք» : Անատենը վարժապետները իրենց աշակերտները կարգաւ եկեղեցին կը տանէին : Առաջ աղջիկները կ՚երթային՝ զոյգ զոյգ իրարու ձեռքէ բռնած , որոնց շատերը Անգղիացի աղջիկներու պէս հան- դերձ կը հագնէին , և կամ խոտէ կամ ծառի կեղևէ հիւսուած գլխարկ կը դնէին գլուխնին : Ամէն մէկուն ձեռքը մէյմէկ փոքրիկ կողով կ՚ըլլար , որուն մէջը կը գտնուէր իրենց երգին գիրքը , քրիստո- նէականը , և Սուրբ Գիրքը : Անոնց ե- տևէն տղաքը կ՚երթային տեղացւոյ հա- գուստով , մէջքերնին ծառի կեղևէ հիւ- սուած փոխաթ մը կապած , և ուսերնուն վրայ կարմիր կամ դեղին գունով պզտիկ ցփսի մը առած , գլուխնին խոտէ հիւ- սուած գլխարկ մը դրած , և ոտքերնին առանց մուճակի : Անոնց ծնողքներէն ո- մանք շատ անգամ կը սպասէին սա տղոցը անցնիլը տեսնելու : Շատ մայրեր իրենց սիրելի զաւկըները տեսնելով զԱստուած կ՚օրհնէին , քարոզիչները իրենց մէջը խրկելուն համար , որ անոնք գալով ի-

մացուցեր էին իրենց որդեսպանութեանը ինչ մեծ մեղք ըլլալը ։

Եկեղեցւոյն մէջ աղջիկներն ու տղաքները իրենց որոշեալ տեղերը կը նստէին ։ Դեռ աստուածային պաշտամունքը չըսկսուած բոլոր ժողովուրդը հոն ժողվուած պատրաստ կը գտնուէին, քանզի թէ և ժամացոյցներ չունէին, բայց խեցեփողին ձայնին կը հնազանդէին ։

Կէս օրէն ժամ ու կէս կամ մէկ ժամի չափ առաջ՝ պաշտամունքը կը վերջանար ։ Աղջիկներն ու տղաքները կարգաւ իրենց դպրոցները կ'երթային, և վարժապետներնուն հրամանաւը կ'արձակուէին ։ Ճաշէն ետև աղջիկներն ու տղաքը նորէն դպրոցը կը ժողվուէին․ բայց որովհետև ան միջոցին շատ տաք կ'ըլլար, ամէն մէկ վարժապետ շատ անգամ խել մը աշակերտներ հետը առնելով՝ կը տանէր տերևախիտ ծառի մը հովանւոյն տակը կը նստեցընէր, և հոն անոնց ըսել կու տար առտուանց մտիկ ըրած քարոզնին, և անոնց կը խօսէր պզտիկ տղոցը վրայ Փրկչին ունեցած սիրոյն վրայով ։

Կէս օրէն ետքի պաշտամունքը ժամը 4ին ատենները կը սկսուէր․ և արեւը

մարը մտնելուն՝ բոլոր ժողովուրդը իրենց բնակարանները կ'երթային, որ իրիկունն ալ կարդալով, երգելով և աղօթքով անցընեն։ Երբեմն մէկ քանի ընտանիք մէկտեղ կը ժողվուէին. և երբեմն ամէն մէկ ընտանիքին հայրը իր զաւակներուն և իր ծառաներուն բան կը սորվեցընէր։

Ահա՛ Հարաւային Ովկիանոսի կղզեաց հաւատացեալ բնակիչները այսպէս կ'անցընէին իրենց Կիրակիները, և զանոնք կ'անուանէին, "Զուարճութիւն, պատուական, և զԱստուած կը պատուէին, իրենց ճամբաներուն չհետևելով, և իրենց ցանկութիւնը չկատարելով, ոչ ալ պարապ խօսք խօսելով, հապա Տէրոջմով կ'ուրախանային"։ (Եսայ. ծը. 13։)

## ԳԼՈՒԽ Ի

### Թահիթիի նոր սովորութիւնները։

Թէպէտ և Թահիթիի ժողովուրդին վրայով անանկ հաճոյական ստորագրութիւններ ըրի, սակայն պէտք չէ ենթա-

դրել թէ բոլոր ժողովուրդին սիրտը փոխուած էր։ Եւ թեպէտ շատերուն վարմունքը փոխուած էր, բայց երկիւղ կար որ գուցէ քիչ մարդիկ միայն ճշմարտապէս Սուրբ Հոգիէն վերստին ծնած էին։ Երբեմն մինչև անգամ անանկ մարդիկ՝ որոնց վրայ քարոզիչները յոյս ունէին թէ դարձի եկած էին, իրենց վարմունքներովը մեծապէս կը վշտացընէին զանոնք։

Օր մը իշխանին մէկը գողութեամբ մը ըսաւ Պատ. Պուրնին. «Ատ ի՞նչ կը սորվեցընէք մեզի. ինչո՞ւ համար մեզի Անգղիարէն չէք սորվեցըներ, և կրօնքէն զատ ուրիշ բաներ ալ»։ Բայց քիչ օրերէն ետև անոր քովը եկաւ, ու ըսաւ որ Քրիստոսի սա խօսքը կարդացեր էր, թէ՝ «Ան որ ձեզ կ'անարգէ, զիս կ'անարգէ», (Ղուկ. Ժ. 16,) և իր չար վարմունքին պատճառաւը այնչափ խռովեր էր, որ ո՛չ կրցեր էր հաց ուտել, ո՛չ ալ քնանալ՝ իր մեղքը չխոստովանած։

Նաև ըսի որ ժողովուրդը իրենց ունեցածը յօժար կամօք կու տային Քարոզիչ խրկելու ընկերութեանը. բայց ամէն անգամ անանկ չէր պատահեր։

Օր մը մարդուն մէկը Բօմարէին եկաւ

Հետը 5 պամփուշի եղէգ լեցուն եղ բերելով, և բարկութեամբ մը ըսաւ. «Ա՛ռ ասոնք քու ընկերութեանդ համար»:

«Ո՛չ», ըսաւ Նոմարէ, «քու բարկացած պամպուններդ քարոզչաց եղէն հետ պիտի չխառնեմ. վերցո՛ւր ատո՛նք»:

Մարդը պամպուշի եղէգները առնելով մեծապէս տրտմած դարձաւ իր այսպէս մերժուելուն համար, բայց չեմ գիտեր թէ՝ իր ըրած մեղքին վրայով զգացողութիւն մը ունէր, թէ չէ:

Աստուծոյ խօսքին քարոզութիւնը շատ անգամ ժողովուրդին խղճմտանքին մեծ օրհնութիւն մը կ՚ըլլար: Անգամ մը Պատ. Սօթ սա խօսքին վրայով քարոզ մը տուաւ, թէ՝ «Ան որ գողութիւն կ՚ընէր, ալ թող չգողնայ»: (Եփես. դ. 28:) Քարոզին մէջը ըսաւ թէ՝ մարդուս պարտաւորութիւնն է առաջուց գողցուած բաները ետ դարձընելը:

Հետևեալ առաւօտուն երբոր իր տանը դուռը բացաւ, տեսաւ որ տեղացիներէն խել մը մարդիկ իր տանը բոլորտիքը գետնին վրայ նստեր էին: Անոնց այսչափ կանուխ ժամանակ հոն գալուն վրայ զարմացաւ, և հարցուց անոնց գալուն պատ-

ճանը ։ Ըսոնք ալ այսպէս պատասխան տուին ․ «Մենք բոլոր գիշերը չկրցանք քնանալ , քանզի երէկ եկեղեցին էինք , և լսեցինք Աստուծոյ խօսքէն ըսածը , թէ Յհովան մեզի պատուիրեր է գողութիւն չընել ․ սակայն Հիրօ կուռքին երկրպագութիւն մատուցած ատեննիս , կը խորհէինք թէ անիկայ գողերուն պաշտպանութիւն կ'ընէ ․ մենք գողութիւն ըրած 'ենք ․ և ահա ամէն ինչ որ հետերնիս բերած ենք՝ մեր գողցած բաներն են»։

Ըսատենը աս մարդոցմէ մէկը ձեռքը ողոց մը բռնելով՝ ըսաւ ․ «Աս այս ինչ նաւուն առաջնորդէն գողցայ» ։ Ուրիշներն ալ դանակներ և ուրիշ գործիքներ ցուցուցին ։

Պատ․ Նօթ՝ որ սորվեցուցած էր թէ գողցուած բաներ ընդունիլը մեղք է , ըսաւ ․ «Ինչու համար ատոնք ինծի բերիք ․ առէք տուներնիդ տարէք ․ ուերբոր դան ան 'նաւերը , որոնցմէ գողցած էք , անատենը նա դարձուցէք ատոնք , և մէյմէկ ընծայ ալ վրան աւելցընելով իրենց տիրոջը տուէք» ։ Սակայն աս մարդիկը աղաչեցին Պատ․ Նօթին որ ան բաները իր քովը մնան , մինչև որ անոնց տէրերը գտնեն ։

Ոմանք ալ պտտնօք քարոզիչի մը բաները գողցած ըլլալով, և աս միջոցիս ան քարոզիչը ուրիշ կղզի մը գտնուելով, 70 մղոնի չափ Հեռու տեղ Ճամբայ կ'երթային՝ գողցած բաներնին ետ դարձընելու Համար:

Երբոր կղզեցիք գետնէն բան մը գըտնէին, թէ դանակ և թէ գործիքներ, իրենց չէին սեպՀականներ: Ի վերայ այսր ամենայնի քանի մը գողեր ձեռք անցնելով՝ դատաւորներէն պատժուեցան:

Աս տարուոյս աշնան մէջ 2 Հոգի 'ի մաՀ դատապարտուեցան՝ թագաւորին դէմ ձեռք վերցընելնուն Համար: Ասոնք գագաօյի ծառէ մը կախուեցան, ու ետքը վար առնուելով թաղուեցան:

Քարոզչաց տիկինները խիստ շատ կ'աշխատէին կնիկները կրթելու Համար: Շաբաթը անգամ մը անոնք մէկտեղ ժողվելով՝ անոնց կրօնական բաներ կը սորվեցընէին: Մարդուն սիրտը չէր դիմանար, երբոր լսէր աս ժողովներուն մէջ մայրերուն ըրած կսկծալի ողբը իրենց սպաննած տղոցը Համար: Ոմանք կ'ըսէին թէ իրենց մեռցուցած երախաները միտքերնին գալով՝ անդադար մտատանջու-

թեան մէջ էին ։ Անոնցմէ մէկն ալ այսպէս հարցուց . «Արդեօք ներում գըտնելու համար պէ՞տք է որ Յիսուս Քրիստոսին երթամ ։ Արդեօք իրենց որդիները սպաննողներուն յանցանքը կարելի՞ է որ ներուին»։

Անոնց կ՚ըսէին թէ՝ Քրիստոսի արիւնը բոլոր մեղքերը կը մաքրէ ։ Կը կարդանք Աստուածաշունչին մէջ որ Յուդայի թագաւորը Մանասէն իր որդին կրակէ անցուց , ու անոր յանցանքը ներուեցաւ ։ Գուցէ աս օրինակն ալ մխիթարութիւն մը տուած ըլլար մէկ քանի մայրերու ։

Հիմա քանի մը կղզիներու մէջ տեղացւոց տուներուն և հանդերձներուն ալ մեծամեծ փոփոխութիւններ եղաւ ։ Պոմարէ՝ նոր սովորութիւններուն չհաւնելուն համար , իր ժողովուրդն ալ Ռաիաթէայի և Հուահինէի բնակչացը պէս ասանկ բաներու մէջ չյառաջացաւ ։

Այս 2 կղզիներուն մէջ ժողովուրդը գործունէութեամբ զբաղած էր ճերմակ ծեփերով տնակներ շինելու ։ Այս ճերմակ ծեփը անսովոր կերպով մը կը պատրաստէին ։ Ծովեզերքէն քիչ մը հեռուն երթալով՝ ծովուն տակը անհուն պա-

թխպններու նման ձերմակ բուստեր կար · ժողովուրդը աս բուստերէն մեծ կտորուանքներ լաստերով ցամաքը կը հանէին , ու ետքը փոսերու մէջ դիզուած փայտերուն վրայ դնելով կ'այրէին զանոնք : Բուստը փոշիի կը դառնար , և փոսին յատակը կ'իջնէր · տեղացիք աս ձերմակ փոշիով իրենց նոր տուները կը ծեփէին : Զանոնք փայտերով կը շինէին , և անոնց յարկը արմաւենւոյ տերևներով կը ծածկէին · բայց ապակի չունենալնուն համար՝ կը ստիպուէին փայտեղէն վանդակներ և փեղկեր շինելու : Տուներնուն մեծ մասը միայարկ ըլլալով՝ միայն գետնի վրայ սենեակներ ունէին · բայց իշխաններուն տուները վերի սենեակներ ալ ունէին : Տուները ընդհանրապէս պարտէզներով կամ ծառերով շրջապատած էին · իսկ մէկ քանիները վրան ծածկուած պոլչօն ունէին , որոնց մէջը նստելով բնակիչները , ծովային քաղցրաշունչ հովը , և լայնարձակ տեսարան մը կը վայելէին : Տուները դուրսի կողմէն որչափ որ գեղեցիկ կ'երևնային , այնչափ ալ անոնց ներսը վայելչապէս կարգադրուած էր , փայտաշէն սեղաններով և բազմոցներով կահաւո-

բուած ըլլալով․ պատուհաններէն ծառէ կեղևէ գործուած ճերմակ վարագոյրներ կախուած էին, որոնց եզերքներուն վրայ տերևներ նկարուած էին։

Տեղացւոց ամէն մէկը իրեն հաճելի երևցած տեղը կը շինէր իր բնակարանը։ Մէկը ծովուն եզերքը յարմար տեղ ան-պելով` իր տունը ծովուն մէջը գոյացած միապաղաղ բուսուտի մը վրայ կը շինէր․ մէկ ուրիշը հովանաւոր ծառերուն մէջը, և մէկ ուրիշ մը լեռնակողմը, ուր որ օդը մաքուր էր, և ուսկից որ բնութեան գեղեցիկ տեսարանը կրնար դիտել․ բայց ամէնքն ալ իրենց բնակութիւնը Ընդ-ղիացի քարոզիչի մը քարոզ տուած մատուռին մօտ կը հաստատէին․ բաց 'ի մէկ քանիներէն` որոնք իրենց հովիտներու մէջ եղող արտերնին կը բնակէին։ Ամէն գեղի մէջ նեղ ճամբայ մը կար, որ մինչև ծովեզերքը կը հասնէր, և շատերուն մէջն ալ դէպ 'ի ծովուն մէջը երկընցած ճամբայ մը կար բուստերով շինուած, որպէս զի կարենան դիւրութեամբ բան մը ցամաքը հանել, և ցամաքէն նաւը տանիլ։

Հիմա աս աղուոր գեղերը զարդարանք

մըն էին ան կղզիներուն , ուր որ առաջ վայրենիները աստանդական կը պտըտէին , գիշերները չորս կողմը բաց հիւղերու մէջ անցընելով դաշտի անասուններուն պէս :

Տեղացիք սկսան իրենց լայն հանդերձները Անգղիացւոց հագուստներու փոխել : Քարոզչաց տիկինները կը ջանային անոնց սորվեցընել աս հանդերձները շինելը , և զանոնք ամէնն ալ համոզել որ նոյն հանդերձները հագնին :

Պատ . Քրուքին և Նօթին տիկինները տան մէջ հագնելու լայն պատմուճաններ շինեցին Պօմարէին համար , անկէ ետև քանի մը կնիկներ ալ անոնց նմանը շինեցին իրենց էրիկներնուն համար , ու ետքը իրենց համար ալ : Պատ . Էլլիսին տիկինը իր պզտիկ աղջկանը համար ծառի տերևներով գլխարկ մը շինեց , և տերևներէ հիւսուած գլխանոց մըն ալ իր էրկանը համար : Կնիկները շատ մը սորվեցան հիւսելը , և էրիկ մարդու գլխանոց ու կնիկներու գլխարկներ կը շինէին , ոչ միայն տերևներէ , այլ և երիզաձև կտրած ճերմակ կեղևներէ , և դեղին պըրտուկներէ . և ժապաւէններու տեղ կըրզեծուց գործած լաթերին շերտաձև կտոր-

ները , կամ ծառի կեղև կը գործածէին ։

Տեղացւոց շատերը եկող նաւերէն ոսկի ամաններ , գուլպաներ , եւրոպական վերարկուներ և շապիկներ առած էին , և զանոնք երևելի օրերը կը հագնէին ։ Քիչ մարդիկ կրնային լուր օրերն ալ Անգղիացւոց հագուստ հագնիլ , կամ հազիւ թէ ամէն կտոր հագուստէն մէյմէկ հատ կրնային ձեռք բերել ։ Մարդիկ երբեմն գլխանոց մը կ'ունենային գլուխնին , ու ոտքերնին մուճակ մը , առանց գուլպայի և շապիկի ։ Երբեմն հանդերձները խիստ անսովոր կերպով կը հագնէին ։ Երկայն սև վերարկուի մը վրայէն ճերմակ շապիկ մը կը հագնէին ․ քանզի անոնք չէին ուզեր շապիկը ներսէն հագնիլ , որ չըլլայ թէ վերարկուին տակը ծածկուած մնայ ։ Սակայն տեղացիք քիչ ժամանակի մէջ սորվեցան աս տեսակ սխալմունքներու վրայ ծիծաղիլ ։

Քարոզիչները ուրիշ բանի համար չէր որ ժողովուրդը Անգղիացւոց կերպարանք մտնելու կը յորդորէին , հապա որ աս հագուստին միջոցովը իրենց մեծ պակասութիւնը՝ այսինքն ծուլութիւնը մէկդի ձգեն ։ Կերակուրը այնչափ դիւրաւ կը

*պատրաստուէր , որ տեղացիք աշխատելու սովորած չէին , և դեռ իրենց ժամանակին մեծ մասը քնանալով և շատախօսութեամբ անցընելու վրայ էին ։*

*Առաջուց ըսի որ Բօմարշէն նոր սովորութիւններուն չէր հաւներ ։ Անիկայ բոլորովին Անգղիացւոց նման հագուիլ չէր ուզեր , հապա տեղացւոյ Լիքո–Լա մը կ'առնէր իր ամէն օրուան հագած շապիկին վրայէն ։ Ու թէպէտ Անգղիացւոյ հագուստը չէր հաւներ , սակայն Անգղիացւոց հնարագիտութիւնը կը սիրէր , և իր ժամանակին մեծ մասը գրելով կ'անցընէր ։*

*Մաթավայիի մէջ իր մեծ տանը մօտ պզտիկ խրճիթ մը ունէր , որուն մէջ օրերով գոցուած կը մնար Պատ . Նօ-թին հետ , որուն նոր թարգմանած Յովհաննու աւետարանը և Առաքելոց գործքերը սրբագրելու օգնութիւն կ'ընէր , և զանոնք մաքուր թուղթի վրայ կ'օրինակէր , կուրծքին վրայ գետինը պառկած ։ Բօմարշէն շատ ալ կ'աշխատէր բառարան մը շինելու , և աս նպատակիս համար հազարաւոր բառեր ժողվեց ։*

*Բօմարշէն թէ և այսչափ օգուտներ կ'ընծայէր քարոզիչներուն , բայց իր վար-*

մուՆքին մէջ ցուցուցած իր մեծ պակա֊ սութիւններովը զանոնք անդադար կը վշտացընէր ։ Ընիկայ շատ անգամ ոգե֊ լից Հեղանիւթներ ծախու կ՚առնէր ու կոցքինները եկող Նաւաստիներէն , և չա֊ փազանց կը խմէր ։ Սակայն զարմանալին ան է որ՝ իր Թագաւորութեանը մէջ ըր֊ քաՀան գործին մոցընել չէր ուզեր , որ չըլլայ թէ իր Հպատակները ոգելից Հե֊ ղուկ խմելու տան ինքզինքնին ։ Նյւ ինքը առտու ու իրիկուն շարունակ իր տանը մէջ Ընտուծոյ երկրպագութեան պաշ֊ տօնը կը կատարէր , և շատ անգամ 20 ունկնդիրներ ունենալով իր բոլորտիքը՝ անոնց Հետ Սուրբ Գիրք կը կարդար տուն առ տուն . և անկէ ետև կամ՝ ինքը ա֊ ղօթք մը կը զրուցէր , և կամ ան ունկն֊ դիրներէն մէկուն կ՚ըսէր որ ան պաշտօնը կատարէ ։

## ԳԼՈՒԽ ԽԸ

### Հեռաւոր կղզիէն եկող օտարականները:

Որովհետեւ ակամայ կամօք ստիպուեցանք Բոմարէին պակասութիւններուն վրայով խօսելու, հիմա ալ ուրախ սրտիւ անոր ըրած բարի գործքերը պէտք է ստորագրենք: Անիկայ պզտիկ կղզի մը գընաց, որուն անունը Բարձր կղզի, կամ Ռաիվավայի էր, և Թահիթիէն 400 մղոն հեռու էր, ու տեսաւ որ ան տեղի ժողովուրդը իրարու դէմ կը պատերազմէին: Սաստիկ աղաչեց իշխաններուն որ հաշտութիւն ընեն, և զանոնք համոզեց որ պատերազմելէն դադարին, և իրենց կուռքերէն հրաժարին. և անոնց բան սորվեցընելու համար՝ 2 ազնիւ Թահիթեցիներ թողուց անոնց քովը, որոնք իր հետը բերած էր: Եւ որովհետեւ աս կղզւոյն բնակիչները Բոմարէն կը յարգէին՝ իբրև իրենց թագաւորը, անիկայ ալ իր մեկնելէն առաջ աս պատուէրը տուաւ անոնց. „Զգուշացէք և տեսէք, ով որ նորէն պատերազմ գրգռելու ըլլայ, թող մեռցուի":

Քանի մը ամիսէն ետև նաւ մը Հաւասաս կղզին, որուն նաւապետը զարմանքի մէջ մնաց, երբոր տեսաւ որ ան տեղի բնակիչները մեծ եկեղեցւոյ մը մէջ ժողովուեր էին, և եկեղեցւոյն ներսը բաւական տեղ չըլլալուն համար, հարիւրէն աւելի մարդիկ ալ դուրսի կողմը կայներ էին։ Նաև լսեց որ ամէնքնին ալ իրենց կուռքերը մէկդի թողուցեր էին, և կուռքերուն մէկ քանիները իրենց եկեղեցւոյն մէջ նստարաններու տեղ կը գործածէին։

Խիստ շատ փոքրիկ կղզիներու մէջ ալ՝ տեղացի ուսուցիչներուն դաստիարակութեամբը կռոց երկրպագութիւնը խափանուած էր, և պատերազմը մէկդի թողուած։

Թահիթիի մէջ եղող 6 քարոզիչները ամէնքն ալ մէկտեղ չէին բնակեր՝ այլ քարոզիչներուն պէս, հապա զանազան գեղերու մէջ կը կենային։

Պատ. Որուք իր բնակութիւնը Ռաբէէթէի մէջ հաստատած էր՝ որ Մաթավայիէն 8 մղոնի չափ հեռու տեղ մըն էր։ Թագուհին ու անոր քոյրը, և փոքրիկ աղջիկը Էիմաթա իշխանուհին ալ հոն կը բնակէին, և աս պատճառաւ

շատ անգամ Պատ. Բրուքին ու անոր ընտանեացը հետ մէկտեղ էին, և անոնց վրայ շատ սէր ունէին ։ Աիմաթա ամէն օր դպրոց կ՚երթար, և շուտով յառաջադիմութիւն կ՚ընէր իր ուսմանցը մէջ ։ Թագուհին ու անոր քոյրը դպրոցն ալ կ՚երթային և Պատ. Բրուքին տիկնոջը դասատունն ալ, ուր որ կանայք կը վարժուէին ։ Ասանկ բարձր աստիճանի տէր եղող անձանց բարի վարմունքը մարդուս ախորժելի բան մըն էր, և կը յայտնէր անոնց մտքին խոնարհութիւնը, ուսկից կը յուսացուէր թէ բարեպաշտութիւննին ալ օր ըստ օրէ պիտի աճի ։

Յունիս ամսուն մէջ մէկ ուրախառիթ դիպուած մը պատահեցաւ Թագաւորին ընտանեացը մէջ ։ Թագուհին տղայ մը բերաւ ։ Թագաւորը՝ որ իր սովորութեանը պէս Պաբաօյի մէջ Արքունի քարոզչաց եկեղեցւոյն մօտ տեղ մը կը բնակէր, աս լուրը առնելուն՝ անմիջապէս եկաւ որ իր տիկինն ու իր տղան տեսնէ ։ Շատ ուրախ կ՚երևէր աս նորածին երախային վրայ, և պատուիրեց որ Պատ. Բրուքին տիկինէն 'ի զատ ուրիշ մէկը տղուն չդպչի. ան ալ տղան առաւ, ու

անոր Անգղիացւոյ երախայի հանդերձներ հագցուց ։ Նաեւ որովհետեւ Պատ. Վրուքին տիկինը չէր կրնար միշտ անոր խնամք տանիլ , աս պատճառաւ թագուհւոյն քոյրը անոր դայեակ եղաւ . այսու ամենայնիւ տղան ընդհանրապէս Պատ. Վրուքին կնոջը տունը կը գտնուէր եւ անիկայ իր մայրը կը կոչուէր . քանզի թագաւորը գլխաւորապէս անոր հոգաբարձութեանը յանձներ էր իր որդին ։ Պատ. Վրուքին պզտիկ աղջիկը Մարիամն ալ անոր մայրը կը կոչուէր , քանզի թագուհին հին սովորութեանը համեմատ՝ զանիկայ իրեն մանկաւոր բարեկամ ընտրած էր . ան ալ ժրութեամբ զբաղած էր ծաղկահասակ պայազատին հանդերձներ շինելու ։

Արդէն լսած էք որ Աւետարանը Հաբաւային Ովկիանոսին շատ կղզիները կը տարածուէր . սակայն ան կղզիներէն մէկուն մէջ Աւետարանը մտնելուն կերպը ստորագրելու արժանաւոր բան է ։

Տուբուոթու անունով փոքրիկ կղզի մը կար , որ այնչափ հարիւրաւոր մղոններով հեռու էր եղբայրներուն քարոզութիւն ըրած տեղերէն , որ անոր մէջ բնաւ Աւետարանին վրայով խօսք մը լսուած չէր ։

Եւ թէպէտ աս կղզիս միայն 7 մղոն երկայնութիւն ունէր, բայց խիստ բարեբեր ըլլալով՝ վեց հազար բնակիչ կը սնուցանէր։ Վերջապէս սոսկալի ժանտախտ մը պատահելով աս կղզւոյս մէջ, խոտի պէս հնձեց ժողովուրդը, անանկ որ իրեք չորս հարիւր հոգի միայն ողջ մնաց։

Ռուրութույի իշխաններէն Աուուրա անունով երիտասարդ մը շատ կ'ուզէր որ աս կղզիէս ելլէ. քանզի կը վախնար որ եթէ հոն մնալու ըլլայ, շուտով պիտի մեռնի. աս ալ միտքը ինկաւ որ, ուրիշ երկիր մը երթալով կարելի է որ աղէկ բան մը սորվի, թէ և չէր գիտեր ի՛նչ ըլլալը։ Աուուրա իր բարեկամներէն մէկ քանիները համոզեց իրեն ընկեր ըլլալու, իր կինն ալ ընկերացաւ, և մեծկակ ծառակուր մը մտան։ Նաւակին մէջ ընդամէնը 25 հոգի կար. և առատօրէն կերակուր և ջուր առած էին։ Վերջապէս հեթանոսաբնակ կղզի մը հասան, որ Թուպուայի կը կոչուէր, և իրենց կղզիէն քանի մը հարիւր մղոն հեռու էր, ուր որ մարդասիրութեամբ ընդունուեցան, և իրենք առողջացան։ Ատեն մը հոն կենալէն ետքը՝ սանկ ծառակյու-

րը մտնելով ճամբայ ելան որ նորէն իրենց բնիկ կղզին դառնան , յուսալով որ կամ ժանտախտը դադրած պիտի գտնեն , և եթէ ոչ՝ ան տեղի բնակիչները համոզեն որ աւելի աղէկ տեղ մը ելլեն երթան . քանզի կը վախնային որ աստուածոց անէծքը իրենց երկրին վրայ էր : Իրենց աս ճամբորդութեանը մէջ ալէկոծութիւն մը եղաւ , և իրենց ճամբայէն մոլորեցան . ամէն օր շարունակ թի կը քաշէին , բայց ցամաք մը չէին կրնար տեսնել . վերջապէս ուտելիքնին և ջուրերնին հատնելով , միայն ծովու ջրով կը զովանային , և այնչափ ուժէ կտրեր էին՝ որ շատ անգամ կը ստիպուէին իրենց ծառակուրը առանց թի քաշելու թողտալ՝ որ ջուրերուն վրայ ծփայ . Նոյն ատենը աս վախն ալ սրտերնուն մէջ կ'աւելնար , որ չըլլայ թէ ջուրերուն չար ոգին զիրենք կլլէ : Բայց Ենիկայ որ հովերը իր ձեռքերուն մէջ կը բռնէ , անոնց փոքրիկ ծառակուրը դէպ 'ի մէկ ուղիղ նաւահանգիստ մը կ'առաջնորդէր :

Երեք շաբաթ ծովուն վրայ մնալնէն ետև , ցամաք մը տեսան : Ենիկայ քրիստոնէաբնակ կղզի մըն էր , և կը կոչուէր

Մատուբիթի : Աս օտարականները մեծ զարմանքի մէջ մնացին , երբոր տեսան որ ան կղզւոյն ժողովուրդը ճերմակ ծեփած տուներու մէջ կը բնակէին , և իրենց գլուխներէն մինչև ոտքերնին հանդերձ հագած էին , և էրիկ մարդիկ ու կնիկ մարդիկ մէկտեղ հաց կ'ուտէին : Նյւ հիմա աս առջի անգամն էր որ անտեսանելի Աստուծոյն վրայով խօսքեր լսեցին . ու անանկ կ'երևնային թէ աս իրենց լսած բանը խորունկ տպաւորութիւն ըրած էր իրենց ներսիդին , և խիստ շատ փափաք կը ցուցընէին կարդալ սորվելու : Անոնք աս կղզին չկեցան , այլ առաջ գացին դէպ 'ի Ռաիաթէա . և հոն մարդասիրութեամբ ընդունուեցան Պատ . Ուիլլիամսէն և Թրէլքէլտէն : Աս եղբայրները անմիջապէս տեղացւոց մէկ քանիներուն աղաչեցին որ աս օտարականներուն կարդալ սորվեցընեն : Աուուրա և անոր կինը խիստ շատ ուշադրութիւն կ'ընէին ամէն իրենց տրուած դասերուն , բայց միւսներէն մէկ քանիները ծոյլ կ'երևնային : Աուուրա խիստ շատ հանճարալից հարցմունքներ կ'ընէր , և կ'ըսէր թէ մեծապէս կը փափաքի իր երկիրը դառնա-

լու , որպէս զի իր խեղճ ու մեռնելու վրայ եղող քաղաքակիցներուն՝ Փրկչի մը Հրաշալի աւետիսը տայ . քանզի ամէկայ ան «Օտարականներէն» մէկն էր , որոնց համար կ՚ըսէ Աստուած ՃԸ . Սաղմոսին մէջ . «Իմ վրայովս լուր առածնուն պէս՝ ինծի պիտի հնազանդին» : Կ՚երեւի թէ Աստուած Հոգւոյն Սրբոյ միջոցովը անոր սիրտը պատրաստեր էր Աւետարանը ուրախութեամբ ընդունելու :

Քանի մը ամսուան մէջ Աուսուրա կարդալ ու գրել սորվեցաւ , և պատրաստ էր իր հայրենիքը դառնալու , բայց իր եկած ծառակրովը նորէն այսչափ երկար ճամբորդութիւն մը ընելու չէր համարձակեր :

Այս միջոցիս Հօփ անուն նաւ մը հասաւ աս կղզին , որուն հրամանատարը Կրայմս նաւապետն էր , որ մարդասիրաբար խոստացաւ որ Աուսուրան ընկերներովը մէկտեղ առնէ Բուրութու կղզին տանի :

Աուսուրա աս առաջարկութիւնը լսելով մեծապէս ուրախացաւ . միայն մէկ բան մը կը վշտացընէր զինքը , այսինքն Բուրութույի ժողովուրդին աստուածգի-

տութիւն սորվեցընելու համար իր ան-
կարող ըլլալը . և դարձեալ չէր յուսար
որ մէկ ուսուցիչ մը իրեն ընկերանայ
մինչև իր հեռաւոր երկիրը երթալու ։
Բայց որովհետև քարոզիչները չէին կրնար
անձամբ անոր հետ երթալ , որոշեցին որ
փնտռեն նային թէ արդեօք աս ստարա-
կանաց հետ ընկերանալ ուզող ուրիշ
մարդիկ կը գտնուի՞ն ։ Նոյն իրիկունը
կանչել տուին ան բոլոր ժողովուրդը՝ ո-
րոնք յայտնի կը դաւանէին իրենց Քրիս-
տոսի վրայ ունեցած սէրը , և Տէրոջը
ընթրեացը հաղորդական անդամներ էին ,
և անոնց հարցուցին թէ արդեօք Բու-
րութու կղզին երթալ բնակիլ ուզող մը
կը գտնուի՞ մէջերնին ։ Տեղացիներէն 2
հոգի ոտք ելան , և ըսին . "Ահաւասիկ
մենք , մեզ խրկեցէք հոն" ։ Ասոնց ա-
նունները Մահէմէնէ և Բունա էին ։ Քա-
րոզիչները հաճեցան խրկել զանոնք իրենց
կնիկներովն ու տղաքներովը , քանզի ա-
նոնց մէկը 2 տղայ ունէր ։

Աս 2 բարի մարդիկը իրենց ընիկ երկ-
րէն հեռանալու՝ և հետևեալ օրը ճամ-
բայ ելլելու պատրաստութիւնները տես-
նելով անցուցին ան բոլոր գիշերը ։

Քարոզիչները ուրիշ բան մըն ալ խոր-հեցան : Ուզեցին որ Բուրութու երթա-լու ճամբան սորվին . ուստի նաւապետին աղաչեցին որ իրենց նաւակներէն մէկը նաւուն կապէ , և տեղացիներէն մէկ քա-նի հոգի նաւով երթան , ու նաւակով ետ դառնան : Ասոր միջոցով կը յուսային որ տեղացիք Բուրութու երթալու ճամ-բան սորվին . և այնուհետև ուղած ա-տեննին կարող ըլլան հոն մարդիկ խրկելու : Անշուշտ բազմազբաղ գիշեր մըն էր աս : Մատուռին մէջ եղող ամէն մարդիկը տունիրնին գացին , որ մեկնելու վրայ ե-ղող տեղացի քարոզիչներուն տալու ըն-ծաներ գտնեն : Մէկը ածելի մը բերաւ , ուրիշը դանակ մը , մէկ ուրիշը գլանաձև փաթթած կտաւ մը , և մէկ ուրիշն ալ քանի մը բևեռ : Քարոզիչները հեգե-րէններ տուին , նաև ան՝ որ ամէնէն պա-տուականն էր , մէկ քանի օրինակ Մատ-թէոսի աւետարան , որն որ Պատ. Տէվիս թարգմանած էր : Նոյն որովհետև Բու-րութույի և քրիստոնէաբնակ կղզեաց լե-զուներուն մէջտեղը քիչ մը տարբերու-թիւն կար , Ասուրբան չէր կրնար ան գրքերը հասկընալ . բայց քիչ մը գը-

ժուարութիւնով կրնար խմատը հասկը-
նալ ։ Միայն ունէին քարոզիչները շու-
տով ուրիշ գրքեր ալ շարադրելու ։

Ռուսօտուն կանուխ քարոզիչները և
ժողովուրդէն ալ խել մը մարդիկ աս
ճամբորդներուն հետ աղօթք ըրին մա-
տուռին մէջ , ու ետքը մինչև նաւը գա-
ցին զանոնք ճամբայ դնելու ։

Իրենց ետքէն ձգած ժողովուրդը ան-
համբերութեամբ կը ցանկային գիտնալ՝
թէ արդեօք Ռուսուրա իր հայրենակից-
ները ողջ պիտի գտնէ՞ր , և թէ պիտի
կարողանա՞ր զանոնք համոզելու , որ կուռ-
քերէն հրաժարին , և կենդանի ու ճըշ-
մարիտ Աստուծոյ դառնան ։

Յուլիսի 5ին՝ օտարականներէն զատուե-
ցան ։ Օգոստոսի 9ին՝ տեսան որ նա-
ւապետին նաւուն կապուած նաւակը
դարձեր կու գար ։ Արդեօք ի՞նչ կը
կարծէք որ անիկայ բերած ըլլար ։ Խել
մը խուլ՝ համր՝ կոյր՝ հաշմանդամ կա-
լանաւորներ , որոնք թէ և աչք ունէին ,
բայց չէին տեսներ , և ականջ ունէին ,
բայց չէին լսեր — ասոնք Ռուրութույի
ոսկալի կուռքերն էին ։

Ասոնցմէ 'ի զատ՝ աս նաւակս Մա-

հեմէնէն նամակներ բերած էր Բօմաբէյին , նաև Նուուրայէն ալ : Քարոզիչները կուռքերը տեսնելով՝ գիտցան որ ան նամակներուն մէջ բարի լուրեր պարունակուած պիտի ըլլան : Ինչ և իցէ սաստիկ փափաք ունէին մանրամասնօրէն տեղեկութիւններ առնալու : Վերջաչեալ նաւակով ետ դարձող մարդիկը ամէն պատահած բաները պատմեցին : Հիմա համառօտիւ անոնց ստորագրութիւնը ընեմ :

Նախ Նուուրա ու անոր ընկերները Ռուրութու կղզին համնելնուն պէս , ժողովուրդը մեծ զարմացման մէջ մնացեր էր՝ զանոնք նորէն տեսնելնուն համար . քանզի իրենք կարծեր էին թէ Ջրային չար ոգին զանոնք կերած է : Նուուրան ալ իր կողմէն կ'ուրախանար որ իր հայրենակիցները բոլորովին մեռած չէին ժանտախտէն : Ան կղզւոյն թագաւորը երիտասարդ մըն էր 17 տարեկանի չափ : Անիկայ մարդասիրութեամբ ընդունեց Նուուրան , և թոյլտուութիւն շնորհեց անոր՝ որ ան տեղի բնակիչները մէկտեղ կանչելով մեծ ժողով մը ընէ , նաւուն հօն համնելէն անմիջապէս ետքը :

Յայտնի բան է թէ ինչու համար Ա-ւուրան տասնի մէկ ժողով մը ընել խնդրեց ։ Կ'ուզէր որ ժողովուրդին առաջարկէ իրենց կուռքերէն հրաժարիլ ։ Երդէն մէկ դիպուած մը պատահեր էր , որով ժողովուրդը իրենց կուռքերուն կարողութիւն ունենալուն վրայ կասկածի գացեր էր ։

Ուսուցիչները ցամաքը ելլելնուն պէս՝ Աստուծոյ շնորհակալութիւն մատուցանելու համար՝ դիպուածով ծովեզերքին ան մասին վրայ ծունկ չոքեր աղօթք ըրեր էին , որ Օրօյին նուիրուած էր ․ այսու ամենայնիւ անո՛նք չմեռան , ինչոր որ ժողովուրդը ակնկալութիւն ունէր ։ Ասոնք և քանի մը ուրիշ մարդիկ ալ՝ ետքէն սուրբ տեղի մը վրայ հաց կերեր էին , կնիկներն ալ իրենց էրիկներուն հետ մէկտեղ սեղան նստելով , խոզու և տառակի միս կերեր էին ։ Բուրութացիք ակնկառոյց կը նային եղեր անոնց վրայ , ինչպէս որ ատենօք բարբարոսները ըրեր էին Պօղոսին ․ անոնք կ'ակնկալէին թէ ոմանք պիտի ուռենան , կամ իյնան ու յանկարծ մեռնին ․ բայց երբոր տեսան որ չվնասուեցան , կարծեցին թէ աստուած-

ները գիշերով պիտի երթան , ու զանոնք սպաննեն , և յիրաւի մարդուն մէկը նոյն գիշերը գնաց որ հարցընէ թէ արդեօք Աուուրային կինը դեռ ողջ էր ։ Բայց երբոր առաւօտուն աս նոր եկողներուն ամէնն ալ ողջ առողջ տեսան , սկսան կասկածիլ թէ իրենք խաբուած էին չար ոգիէն ։

Մտքերնին սաստիկ տարակուսական վի-ճակի մէջ էր , երբոր Աուուրային խընդ-րանացը համեմատ մեկտեղ ժողվուեցան ։

Նախ Աուուրան խօսեցաւ ու ըսաւ ․ «Բարեկամներ՝ աս է իմ բաղձանքս , և աս բանիս համար նորէն աս կղզիս դար-ձայ , որ ձեզի Աստուծոյ Որդւոյն ա-նունը գիտցընեմ , և Սուրբ Հոգւոյն գործը՝ որ մեր սրտերը կը լուսաւորէ , նաև Աստուծոյ մեզի պարգևած շնորհքը ։ Իմ փափաքս աս է ․ Թո՛ղ չար ոգին աս կէտիս կրակը ձգուի ․ դուք աս բանիս հաճութիւն կու տա՞ք՝ ո՛վ թագաւորներ և իշխաններ ։ Ալ հիմա չար ոգին կրակը ձգե՞նք ․ անոր թագաւորութիւնը կոր-ծանե՞նք ։ Այսուհետև անոր երկրպա-գութիւն չմատուցանենք , ալ անիկայ մեր սրտերուն վրայ չթագաւորէ ։ Թո՛ղ

աս փոքրիկ երկիրներուս կառավարիչը Եհովան ըլլայ" : Ասկէ ետեւ Քուսուրա առաջարկեց որ ամէնքնին ալ էրիկ մարդիկ ու կնիկ մարդիկ ժողվուին , ու մէկ տեղի մը վրայ 'ի միասին հաց ուտեն , ու տեսնեն թէ իրաւցընէ պիտի մեռնի՞ն , ինտոր որ չար ոգին ըսեր էր :

Թագաւորն ու իշխանները հաճեցան աս առաջարկութեանը , ու պատասխան տուին՝ ըսելով. "Ուրախ ենք աս ըսածներուդ համար , 'Աս չար դեւերը կրակը նետեցէք'": Երբոր ասոնց ըսուեցաւ՝ թէ իրենք իրենց մէջը հոգի ունին , շատ մեծ զարմանք կը ցուցընէին : Ետքը Քուսուրա խնդրեց ասոնցմէ որ խոստանան սիրով վարուիլ իր հետը բերած 2 ուսուցիչներուն հետ : Թագաւորը ու իշխաններն ալ խօսք տուին որ այնպէս պիտի ընեն :

Սակայն աս ժողովքիս մէջ 2 հոգի կային , որոնք կուռքերուն այրուելուն հաւանութիւն չտուին : Ասոնցմէ մէկը խաբէական ձեւով մը խօսեցաւ ու ըսաւ . "Քո բարի պատգամները կ'ընդունինք" . բայց միտք չունէր այնպէս ընելու :

Միւսը կը պարծենար թէ ինքը կարող է թռչելով երկինքը ելլել . բայց Քուսուրա

խողը ու տատրակի միս կերան , այսու-
ամենայնիւ վնաս մը չպատահեցաւ : Ան-
շուշտ ժողովուրդը պիտի վախնար այս
փորձը ընելու , թէ որ Աստուած անոնց
սիրտը սա բանը ընելու դրդած չըլլար ,
ցուցընելով անոնց ուրիշներուն անմխպա
ճնալը :

Ան նոյն իրիկունը ժողովուրդը կրակի
տուաւ իր կուռքերն ու կռոց մեհեան-
ները : Միայն մէկ քանի կուռքեր ա-
պահեցին , որ յաղթանակաւ քրիստոնէից
կղզիները խրկեն : Աուուրան և ուսու-
ցիչները շուտ մը սկսան Աստուծոյ ու
անոր Որդւոյն Յիսուսին վրայով հար-
կաւոր բաներ սորվեցընել , նաև կարդալ
ալ սորվեցընել : Աուուրա այնչափ ժրա-
ջան մարդ մըն էր , որ մինչև անգամ
առտու և իրիկուն տունէ տուն կ'երթար ,
աղօթք կ'ընէր շատ ընտանիքներու մէջ ,
քանզի անոնք չէին գիտեր թէ ի՛նչպէս
աղօթք ընելու են :

Ահա սանկ զարմանալի ստորագրու-
թիւններ կը պարունակէին Ռուրութույէն
եկած նամակները : Ռաիաթէայի քարո-
զիչները շատ կը փափաքէին հրապարակաւ
Աստուծոյ շնորհակալութիւն մատուցա-

նելու , և միանգամայն աս ուրախալի լուրը բոլոր տեղացւոց ականջը հասցը-նելու : Մէկ իրիկուն մը մատուռը ժող-վուեցան , և տեղացիներէն 3 հոգի , ո-րոնք երէցին օգնութիւն ընելուն պատ-ճառաւը սարկաւագ կը կոչուէին , ամ-պիոնը ելլելով՝ Ռուրութոյի կուռքերը ձեռքերնին բռնեցին 'ի ցոյց ժողովրդեան : Աս կուռքերէն մէկուն մէջը խողովակաձև փորուած ըլլալով՝ խել մը մանր մունր կուռքերով և սլաքներով լեցուն էր : Աս նոյն իրիկունը մեծ ուրախութիւն մը ե-ղաւ Ուլիաթէայի մէջ · բայց անշուշտ երկինքի հրեշտակներուն ուրախութիւնը աւելի մեծ եղած պիտի ըլլար :

## ԳԼՈՒԽ ԻԲ

### Բօմարէ Բ.էն մահը :

1821երորդ տարւոյն վերջերը՝ Բօմարէ ջրգողութեան ախտով հիւանդացաւ , որ անոր մօտալուտ մահը կը սպառնար : Ուստի առողջութիւնը տեղը գալու հա-

մար՝ որոշեց որ Էիմէօ կղզւոյն շրջակա-ները ծովով ճամբորդութիւն մը ընէ . բայց աս իր ճամբորդութենէն օգուտ մը չտեսնելով , Թահիթիի մէջ Բաբէէթէ կոչուած տեղը գնաց , ուր որ Պատ. Քրուք՝ որ բժշկական արուեստին տե-ղեակ էր , իր բնակութիւնը հաստատած էր ։ Թագաւորը ծովեզերքին քովը չբնա-կեցաւ , հապա Նաւահանգստին դիմացը մէկ խիստ փոքրիկ բոլորշի կղզւոյ մը մէջ , ուր որ ինքն ու իր իշխաններէն մէկ քա-նիները տուներ ունէին պագաօյի բարձ-րաբերձ ծառերու հովանւոյ տակը ։ Եղ-բայրներուն խորհրդովը Թագաւորին ա-ռողջութեանը համար՝ ծոմապահութեան և աղօթքի օր մը որոշուեցաւ ։

Էն օրը արեգակը ծագելուն պէս՝ Պատ. Քրուք և խել մը իշխաններ Թագաւո-րին այցելութեան գացին , և անոր ան-կողնին բոլորտիքը ժողվուած՝ իրեն հետ աղօթք ըրին ։ Ետքը մատուռին մէջ ժողվուեցան աղօթք ընելու ։ Սակայն Թագաւորին հիւանդութիւնը հետզհետէ կը ծանրանար ։ Դեկտեմբերի 7ին՝ Պատ. Քրուք լուր առաւ որ Բոմարէին վրայ մարելիք մը եկեր էր . ուստի շուտ մը

ելաւ անոր քովը գնաց , և տեսաւ որ դեռ խելքը գլուխն էր , և կարող էր Աստուծոյ ու իր Հոգւոյն վրայով քիչ մը խօսքեր Հասկընալու : Եւ որովՀետև Թագաւորը շատ չանցած քիչ մը աղէկի դարձաւ , Պատ․ Պրուք ելաւ իր տունը գնաց : Իրիկունը Ռօմարէ կրկին մարե-ցաւ , և Պատ․ Պրուք 'նորէն կանչուե-ցաւ : Անատենը Պատ․ Պրուք ըսաւ անոր . «Կ'ուզէի յօժար կամօք ձեռքէս եկածը քեզի ընել , բայց կը վախնամ որ իմ ամենէն աղէկ ընելիքս ալ անօգուտ ըլլայ . յիրաւի դուն մեծ մեղաւոր մը եղած ես , բայց Քրիստոս մեծ Փրկիչ է , և Հիմա մէկը քեզի չկրնար օգնել , բայց միայն Յիսուս» : Պատասխանեց Ռօմարէ . «Այո՛ Յիսուսէն 'ի զատ մէկէ մը օգնութիւն չըլլար» : Ասոնք էին իր վերջին խօսքերը : Ասկէ ետև վրան Թըմ-բութիւն մը եկաւ : ԹագուՀին ու անոր քոյրը վրան ինկան , ու բարձր ձայնով կու լային : Իր ազգականներէն մէկն ալ դառնապէս կու լար , բայց իր պզտիկ աղջիկը Ասիմաթան շատ տրտում չէր ե-րևնար : Պատ․ Պրուք ծաղկաՀասակ արքայորդւոյն գիրկը առած՝ անկողնէն

ոտքի կողմը նստեր թագաւորին երեսէն վար թախծանգին կը նայէր ։ Այոյն իրիկուան ժամը 8ին Բօմարէ հոգին աւանդեց ։

Ընատենը Պատ. Պրուք ծնկան վրայ գալով վշտացեալ ընտանիքին հետ՝ համառօտ աղօթք մը ըրաւ ։ Ընմիջապէս ետքը առհասարակ ամէն մարդ սկսան լալ , և աղաղակել . «Աւա՜ղ , աւա՜ղ , մեր թագաւորը» , ըսելով ։ Թագուհին ու անոր քոյրը երգի եղանակով մը այսպէս կը գոչէին . «Ինքն էր մեզ հոս բերողը , և հիմա աւա՜ղ , աւա՜ղ իր որդւոցը» ։ Բոլոր ներկայ գտնուողները երգի եղանակաւ ցաւալի խօսքեր կը գոչէին , մանաւանդ ամէն մէկը իր կորուստը ստորագրելով , նոյն ատենը անոնց երեսներէն արտասուքներ վար կը վազէին ։

Բօմարէին համար սնտուկ մը պատրաստեցին , և Ըրքունի քարոզչաց եկեղեցւոյն մօտ փոքրիկ տուն մըն ալ շինեցին գերեզմանի համար ։ Թագաւորին մեռնելէն 4 օր ետքը անոր մարմինը դըրին աս ճերմակ ծեփով ծեփուած փոքրիկ շէնքին մէջ , որ լայնատարած ծառերու հովանւոյն տակը շինուած էր ։ Բոլոր քարոզիչներն ու բազմաթիւ ժողո-

վարդ ներկայ էին յուղարկաւորութեան հանդէսին : Պատ. Նօթ դամբանական ճառ մը խօսեցաւ ժողովուրդին, և Պատ. Հէնրի աղօթք ըրաւ գերեզմանին քովը, խնդրելով Աստուծմէ՝ որ բարեհաճի ողջ մնացողներուն վախճանը օրհնելու :

Այսպէս մեռաւ Ռօմարէ. Բ.ը՝ 47 տարեկան ըլլալով :

Ամէն ով որ սա պատմութիւնը կարդայ, պիտի իմանայ անոր ինչ բնաւորութեան տէր ըլլալը : Բան սորվելու համար աղէկ ընդունակութիւն ունէր, մեծ յարատեւութիւն և սաստիկ սէր ուսման վրայ. անիկայ կամակոր և լռիկ բնաւորութիւն մը ունէր, և հպարտութեան, ագահութեան, խաբէութեան, և անբարեխառնութեան անձնատուր եղած էր. բայց իր բնական հանգամանքներուն մէջ ամենէն ատելի բանը իր նէն-գու–թի–ւնն էր : Սակայն անիկայ քարոզիչներուն բարեկամ մըն էր, և իր ժողովուրդին օրհնութիւն մը : Կ'երևէր թէ ինքը Աստուծոյ խօսքին վրայ հաւատք ունէր, և շատերն ալ առանց բռնադատելու՝ կը համոզէր կուռքերէն հրաժարիլ : Վերջին օրը պիտի յայտ-

նուի թէ արդեօք անիկայ Աստուծոյ զաւակ մը՞ն էր . վասն զի մինչև վերջը անոր վրայ երևցած անթիւ պակասութիւնները կասկածելի կը թողուն անոր որու՛ վերաբերիլը իմանալը :

Բարեպաշտ իշխան մը՝ որ Հաւութիա կը կոչուէր , Բոմարէին մեռնելէն ետև այսպէս կ'ըսէ . «Բոլոր գիշերը Բոմարէին վրայ խորհելով՝ քու՛նս աչքէս փախաւ : Ես մրրկածուփ ալիքներու վրայ անդադար երերացող նաւակի մը պէս էի : Անոր մարմնոյն վրայով մտածեցի , և ինքնիրենս ըսի թէ , ‹Անիկայ մեռած է , ու գերեզմանի մէջ պիտի ըլլայ . բայց անոր հոգին ո՞ւր է արդեօք›»:

Ո՛րչափ թագաւորներ և հասարակ ժողովուրդ՝ (ինչպէս որ անգամ մը Բոմարէ ըսաւ ,) գերեզմանը իջեր էին՝ առանց Քրիստոսի վրայով լուր մը առնելու : Սակայն Աստուած մեծ ողորմութիւն ցուցուց Բոմարէին՝ Փրկչի մը աւետիսը անոր խրկելով :

Ի՞նչ ցաւալի բան էր որ մէկը ասանկ հազուագիւտ շնորհքներ ընդունելէն ետև , շարունակ մեղաց գերութեան մէջ մնար : Մարդուս հնուց 'ի վեր չարութիւն գոր-

ծելու հակամիտեալ ունակութիւնը ան-
շուշտ մեր երեւակայածէն աւելի աննուա-
ճելի պիտի ըլլայ . բայց Աստուծոյ Հո-
գին կարող էր նուաճել զանիկայ , թէ
որ Ռոմարէ փութով օգնութիւն խնդրած
ըլլար :

Սակայն անոր բնաւորութեանը մէջ
հաճոյական բաներ ալ կային : Իր ու-
շադրութեամբ Աստուծոյ խօսքը մտիկ ը-
նելը , Աստուծոյ պաշտօնեաները պա-
տուելը , և Աւետարանին տարածուելուն
համար ունեցած նախանձաւորութիւնը՝
յոյս կու տան մեզի՝ թէ "Բանին արմատը
իր վրայ գտնուած էր" . և թէ մարդոց
բազմութեանը երկրի ծայրերէն ժողվուած
ատենը՝ Ռոմարէն ալ Հարաւային Ով-
կիանոսի կղզիներէն պիտի գայ Աբրահա-
մին , Իսահակին ու Յակոբին հետ բազ-
մելու երկնից թագաւորութեանը մէջ :

Շատ մարդիկ ահ ու դողի մէջ էին ,
վախնալով որ Ռոմարէին մեռնելուն պատ-
ճառաւը մեծ վրդովմունք մը պիտի ելլէր
թագաւորութեանը մէջ . բայց բարե-
բաղդաբար անանկ բան մը չպատահեցաւ :
Ժողովուրդը Ռոմարէին պզտիկ տղան ըն-
դունեցին իբրև իրենց թագաւոր , որ

տարի ու կէսուան մանուկ էր ։ Բայց ասանկ պզտիկ տղայ մը ժողովուրդը կառավարելու կարող չըլլալուն համար , Ռօմէր իր մեռնելէն առաջ՝ խել մը իշխաններ որոշեր էր իր տեղը կառավարութիւն ընելու ։ Ասոնցմէ մէկը միւսներէն աւելի նախապատիւ էր ։ Ասիկայ ծերունի մըն էր , և Սանասնաօ կը կոչուէր . և անիրաւ կերպով մը վարուեցաւ ժողովուրդին հետ՝ շատ պարգևներ պահանջելով անոնցմէ ։

Դեռահասակ թագաւորը Ռօմէր Գ. անուանեցաւ , ու նոյն անունով Թահիթիի վրայ թագաւորողներուն երրորդը ըլլալուն համար ։

Ասիկայ բոլորովին իր մօրը քրոջը՝ Ռօմէր վահինէին խնամակալութեանը յանձնուած էր , որ խիստ յարմար մէկը կ'երևէր աս հոգաբարձութեան պաշտօնին ։ Աս տիկինը անատենները Տէրոջը ընթրիացը հաղորդական անդամ ընդունուեցաւ , և արքայորդւոյն մօրմէն աւելի աղէկ վարմունք , և քաղցր կենցաղավարութիւն ունէր ։

Պատ. Նօթ ամէն Կիրակի Մաթավայիէն կու գար Արքունի քարոզչաց ե-

կեղեցւոյն մէջ քարոզութիւն ընելու, որ իր բնակած տեղէն միայն 4 մղոն հեռու էր. և կըխոստանար որ իրեն համար տուն մը շինուելուն պէս՝ գայ ու հոն մօտ բնակի, և ծաղկահասակ թագաւորին դաստիարակութիւն ընէ։

Յօմարէ վահինէ շատ անգամ տղան կ'առնէր, և իր միւս տունը կըտանէր, որ Պատ. Վիրուքին մօտ էր Յարէէթէի մէջ։ Ծաղկահասակ թագաւորը շատ կըսիրէր Պատ. Վիրուքին ընտանիքը՝ ուր որ 9 տղաք կային մանչ ու աղջիկ, և իր ծնանելէն 'ի վեր շատ անգամ անոնց հետ մէկտեղ էր. աս պատճառաւ շուտ մը սկսաւ Անգղիարէն խօսիլ։ Կ'երևէր թէ տախկայ բնիկներէն աւելի Անգղիացիները կըսիրէր, նաև անոնց կերակուրը և անոնց բոլոր սովորութիւնները իրեն ախորժելի էին։ Քարոզիչները անոր աս հակամիտութիւնը տեսնելով կ'ուրախանային, յուսալով որ չափահաս եղած ատենը իրեն սորվեցուցած բաներինին հաճութեամբ պիտի ընդունի, և բոլոր հեթանոսական սովորութիւնները պիտի տանէ։ Իր հայրը անոնցմէ մէկ քանին բնաւ մէկդի չձըգեց։ Օրինակի աղագաւ, քանի որ ինքը

տան մը մէջ կը գտնուէր , չէր թողուր որ կնիկ մարդ մը հոն հաց ուտէ ։ Գիւղացիները՝ գեռահասակ թագաւորին ծառաներուն մէկ քանի հեթանոսական գաղափարները նշմարելով՝ կը վշտանային . զոր օրինակ երբոր անգամ մը տեսան թէ արքայազուն մանուկին ոտքը՝ գետնի վրայ գտնուած քիչ մը պտուղի դպչեր է , ըսին . "Ատիկայ պէտք չէ որ ուտուի , նետեցէք զանիկայ" . վասն զի կը խորհէին որ թագաւորը անոր դպչելովը՝ անիկայ սուրբ եղած էր ։ Դիւրին բան չէ որ ազգ մը շուտով իր աւելորդապաշտութիւնները մէկդի թողու , ու միայն Աստուծոյ խօսքը կանոն բռնէ , հապա ասիկայ ժամանակի կարօտ է ։

Քրիստոնէութեան դարձող կղզիներուն բնիկներէն շատերը արդէն հեթանոսաց կղզիներուն այցելութիւն ըրած էին . բայց դեռ այնչափ հեռու տեղուանք գացող մը չկար , ինչպէս Մարքիզեան կոչուած կղզիները՝ որ հազարաւոր մղոններով հեռու էր , և անոնց տեղւոյն բնակիչները խիստ վայրենաբարոյ մարդիկ էին ։ Պատ . Քրուք իր երիտասարդութեան ատենը անոնց մէջը կեցեր էր , և հոն

տարի ու կէս մնալէն ետեւ՝ ստիպուեր էր անկէ մեկնելու ։ Քարոզիչները շատ կ'ուզէին որ աս կղզիները տեղացի 2 ուսուցիչ խրկեն ։ Աս միջոցին ուսուցիչները ան տեղուանքը փոխադրելու յարմար պատեհութիւն մը գտնուեցաւ․ քանզի Մերմէյտ անուն նաւ մը Հուահինէ հասաւ, որուն նաւապետը առաջարկեց՝ որ Մարքիզեան կղզիները թէ որ երթալու ճամբորդներ ըլլայ՝ տանի ։

Աս բանիս վրայով խորհուրդ մը ընելու համար ժողով մը գումարուեցաւ Հուահինէի եկեղեցւոյն մէջ ։ Հաւութիա * անունով ազնիւ մարդ մը աս կղզւոյս փոխարքան էր․ քանզի կղզւոյն թագուհին՝ Պոմարէ վահինէն Թահիթիի մէջ կը բնակէր ։ Հաւութիա աս ժողովքին մէջ նախագահ էր ։ Քարոզիչները նախ ոտքի վրայ ելլելով՝ Մարքիզեան կղզիները խրկուելու համար՝ տեղացիներէն 2 հոգի ընտրելու վրայով խօսեցան ։

Ետքը ոտքի վրայ ելաւ Աունա որ պա-

* Հաւութիա ան մարդն է՝ որ զինքը ալիքներու վրայ ծփացող ծառատկրի մը նմանցուցեր էր, Պոմարէին հոգւոյն վրայօք մտատանջութեան մէջ ըլլալուն համար ։

տուական մարդ մըն էր , թէ և տուաչ Հիրօյին՝ այսինքն գողերու չաստուածոյն քուրմն էր ։ Անիկայ ազնիւ տեսք մը ունէր ; և իր կերպարանքին վրայ բարե-սիրութիւն և զուարթութիւն կը փայլէր ։

Պետ Աունա իր ընկերը չզրուցած տարակուսած մնաց , թէ և ինքը Համար-ձակախօս մէկ մըն էր ։ Յայտնի էր թէ՝ անիկայ բան մը պիտի ըսէր , ու ըսելի-քին վրայ սիրտը այնչափ ամփոփեալ էր որ չէր կրնար արտաբերել ։ Անոր խօս-քին գլխաւոր մասը աս էր . «Աղէկ բան է Աստուծոյ խօսքը խրկել անանկ մար-դիկներու , որոնք մեր առջի եղած վի-ճակին մէջ կը գտնուին ։ Ձեզի Համա-ռօտ բան մը պիտի ըսեմ — թէ որ ես ու իմ կինս ձեր առջևը շնորհք գտած ենք , մեզ Հեթանոսաց կղզիները խրկե-ցէք . բայց գուցէ աս խնդիրքս մեր ար-ժանաւորութենէն վեր բան մը ըլլայ» ։ Աս ըսելէն ետև Աունա խորին խոնար-Հութեամբ մը իր տեղը նստաւ ։

Յետքը Հաութիա փոխարքան ոտքի վրայ ելաւ , ու ըսաւ . «Աունան է աս գործիս Համար խրկուելու մարդը» ։ Ու-րիշներն ալ աղաղակեցին . «Աունան է

յարմար մարդը" ։ Բոլոր ժողովքը միաբան հաճութեամբ խոստովանեցան թէ Յունան ու անոր կինը աս գործս տեսնելու յարմար մարդիկ են . քանզի անոնք ոչ միայն բարի վկայուած էին , և աստուածգիտութիւն սորվեցընելու կարող . այլ և Յունային կինը կրնար սորվեցընել հեթանոսաց կնիկներուն դլխարկ հիւսել , և կտաւ գործել , և աս կերպով աշխատասիրութեան վարժել զանոնք ։ Յասնկ կնիկ մը ունեցող մարդը՝ ինչպէս էր Յունան , 2 ձեռք ունեցող մարդ կը կոչուէր ։

Մաթթաթօրէ անունով մարդ մը և անոր կինն ալ բոլոր ժողովքէն ընտրուեցաւ՝ որ Յունային ընկերանայ ։ Բանը միայն ՝ւութիւնն կախում ունէր , որ սոր վրայով իր սրտին մէջի եղածը խօսքով յայտնէ ։ Ժողովուրդը դարձեր դէպ 'ի անոր կընայէն , և տեսնելով որ դեռ լռութեամբ երեսը կախեր կեցեր է , զարմանքի մէջ մնացեր էին ։ Վերջապէս ոտքի վրայ ելաւ , և անանկ հեզութեամբ ու խոնարհութեամբ մը , որ շատ սիրուն կ'երենար ասանկ ազնիւ և վեհմաչուք իշխանի մը վրայ , ըսաւ . «Պիչ մը ը-

սիրտը ունիմ , քանզի իմ ու կնկանս Ճուանիթա վաՀինէին սրտին մէջ՝ խորհուրդ մը ծագեցաւ . բայց գուցէ օգտակար խորհուրդ մը չըլլայ . այսու ամենայնիւ ես պիտի զրուցեմ . և աս է մեր խորհուրդը . թէ որ քարոզիչները և Ճուաքինէի եկեղեցին կը կարծեն որ՝ ես ու իմ կինս կրնանք Աունային յարմար ընկերներ ըլլալ , և երթալ Աստուծոյ բարի խօսքը սորվեցընել ան կռապաշտ ժողովուրդներուն , որոնք մեր առջի եղած վիճակին մէջ կը գտնուին , ուրախ պիտի պիտի երթանք . բայց գուցէ մենք արժանաւոր չըլլանք , և կարելի է որ ուրիշները մեզմէ աւելի յարմար ըլլան աս օրհնեալ պաշտօնիս . այսու ամենայնիւ շատ կը ցանկանք երթալ" :

Բոլոր ժողովք աս առաջարկութիւնը լսելով՝ զարմացած մնաց : Որդեօք հաւատալի՞ բան էր՝ որ ան մեծ իշխանը՝ որ գրեթէ թագաւորի մը հաւասարապատիւ մարդ էր՝ վայրենիներու ուսուցիչ ըլլալու փափաքէր : Որդեօք յաժարութեամբ պիտի ձգէ՞ր զինքը մեծարող ժողովուրդը , և անանկ մարդոց մէջ բնակէր , որոնք զինքը ծառայ պիտի ընէին . և թէ

իր հանգիստ բնակարանը օտար երկրի՞ մը պիտի փոխէր ։ Դատաւորաց գրքին Թ. գլուխը՝ Յովաթամին առակին մէջ ըսուած է թէ՝ ձիթենին չէր ուզեր իր պարարտութիւնը ձգել ․ ոչ ալ թզենին իր քաղցրութիւնը, որ երթան թագաւորեն ծառերուն վրայ ․ բայց աս մարդը յօժարութեամբ ամէն բան մէկդի ձգելու պատրաստ էր, որպէս զի կարենայ Քրիստոսի ծառայ ըլլալ ։

Պատ. Թայըրմէն և Պէննէթ՝ որ Լոնդոնի ընկերութենէն խրկուած էին կղզեներուն այցելութիւն ընելու, շատ ուրախացան՝ երբոր աս մարդոցը Փրկչին վրայ ունեցած սիրոյն փորձին ականատես եղան ։ Անոնցմէ մէկը ոտքի վրայ ելաւ, ու թարգմանի միջոցաւ խօսեցաւ վերոյգրեալ ան ազնիւ ընկերներուն ։ Անոնց ըսաւ թէ աղէկ բանի փափաք ունեցեր են ․ բայց Քրիստոսին տաճարը շինելու համար ունեցած փափաքնին պէս, պէտք է որ չընդունուի ․ քանզի Հաւահիէի մէջ այնչափ օգտակար մարդիկ են, որ անկարելի բան էր զերենք թող տալ որ երթան ։

Կ՚երեւէր թէ աս խօսքիս վրայ Հաւա-

Թէեւ իր յոյսը կտրեց . ուստի խորին զգացումով մը պատասխանեց . «Գիտեմ որ դուք այդպէս կ'ըսէք , գուցէ Տէրոջը կամքը աս է որ Մարքիզեան կզզիները չերթանք , այլ Հաւայեան կղզիներու մէջ մնանք . կարելի է որ հոս աւելի աղէկ ծառայութիւն կարենանք ընել Աստուծոյ . թող այսպէս ըլլայ . բայց տակաւին կ'ուզէի որ՝ երթալուն վիճակը ինծի ու իմ կնկանս ըլլէր» :

Ասկէ ետեւ Նունա եւ Մաթթաթօրէ առաջ գացին , եւ ամսիններին առջեւի հաղորդութեան սեղանին քովը ծնկան վրայ եկան : Ասանկը Պատ . Հիլիս աղօթք ըրաւ , խնդրելով որ Աստուած հաճի զանոնք աս գործիս յարմար պաշտօնեաներ ընելու . ու ետքը Պատ . Պարք հրապարակաւ յորդորական խրատներ տուաւ անոնց : Եկեղեցւոյ պաշտամունքը աղօթքով ու երգով վերջացաւ : Թէեւ ժողովուրդը շատ կը սիրէր Նունան ու անոր գործակից ընկերները , սակայն յօժար սրտիւ կը փափաքէին որ իրենցմէ զատուելով երթան սատանի մէկ սուրբ նպատակի մը համար՝ այսինքն հեթանոսաց մէջ Փրկչին գիտութիւնը քարոզելու :

## ԳԼՈՒԽ ԻԳ

### Թագաւորին աղջկանը ամուսնութիւնը :

Քանի որ Հարաւային Ովկիանոսի կղզեաց բնիկներէն ոմանք Ովկիանոսէն անցնելով Աւետարանը կը տարածէին , տուներնին մնացող բնիկներն ալ աս օրհնեալ գործիս վրայով անհոգութիւն չէին ըներ : Թահիթիի և մօտակայ կղզիներուն մէջ ամէն Մայիս ամսուն Քարոզիչ խրկելու ընկերութեան տարեկան ժողովները կամ տարեդարձները կը կատարուէր :

Աս տարուոյս տարեդարձին հանդէսը որ կատարուեցաւ Արքունի քարոզչաց եկեղեցւոյն մէջ , մանաւոր ուշադրութեան արժանի տեսարան մըն էր , ծաղկահասակ Պօմարէին ներկայ գտնուելուն համար , որ դեռ 2 տարեկան չկար : Ասիկայ ընկերութեան նախագահ ընտրուեցաւ իր հօրը տեղը . և աս պատճառաւ աթոռը նստեցուցին զանիկայ , Հիթօթէ անունով իշխանի մը գիրկը : Ներկրալի բան էր տեսնել արքայազարմ մանուկ մը աստանկ

տեղ մը ։ Արդեօք կրնա՞ր ըլլալ ասկէ աւելի յարմար աթոռ մը, (քան թէ ան՝ որուն վրայ որ ինքը նստած էր,) որ առաջ տանի Անոր թագաւորութիւնը, որ իրեն թագաւորութիւն մը տուած էր, և որ Անիկայ թագաւորաց Թագաւոր էր ։ Ո՞վ չփափաքիր որ արևուն տակը եղած ամէն երկիրներուն մէջի բոլոր թագաւորները՝ թէ երիտասարդ և թէ ծեր՝ ասանկ պաշտօնի մը մէջ գտնուէին ։ Սակայն պիտի ըլլայ ան օրը՝ որ բոլոր թագաւորները Աստուծոյ Որդւոյն առջևը պիտի իյնան, և զանիկայ պատուելը ամէնէն մեծ պատիւ պիտի սեպեն ։ (Սաղմ. Հբ. 11 ։)

Աս տարի ժողովուրդին մատուցած օգնութեան հաշիւը Սւբարարու բարձր ձայնով կարդաց ։ Իւ թէպէտ 10,000 պամպույի եղէգ * իւղի համար ստորագրութիւն կար, բաց 'ի 24 խողէ, 267 արարուլթի գնտակներէ, և 191 կողով բամպակէ, այսու ամենայնիւ իշխանները կը ցաւակցէին աւելի մեծ գումար մը ըլլալուն համար, և անոնցմէ մէկը հա-

* Մէկ պամպույի եղէգը գրեթէ 3 հօխայի չափ բան կը պարունակէր ։

մառօտ խօսքով մը ըսաւ . «Մեր ուժը ի՞նչ բանի կը գործածենք : Աստուծո՞յ համար , թէ Սատանային . ևս անցաւոր աշխարհի՞ս համար , թէ հանդերձեալին» :

Ծնողքները առջի ժամանակները իրենց տղաքը չէին պատժեր , բայց հիմա շատ կը յոգնէին իրենց անհնազանդ տղոցը համար : Մէկ հայր մը անհնազանդ որդի մը ունենալով , զանիկայ յանդիմանելէն ետև՝ կողովի մը մէջ դրաւ , ու տանը յարկէն կախեց : Քարոզիչ մը աս մարդուն տունը մտնելով՝ զարմանքի մէջ մնաց՝ երբոր առաստաղէն կախուած տղեկը տեսաւ . հոն գտնուողները անոր իմացուցին որ կողովին մէջ տղայ մը կայ , ու քիչ մը ատենէ ետև զանիկայ վար պիտի իջեցընեն :

Կղզիներուն մէջ շատ անառակ երիտասարդներ կային , որոնք յանցանքի մէջ բռնուելով՝ դատաւորաց առջևը կը տարուէին :

Պատ . Պէննէթ և Թայըրմէն ասանկ մէկ դիպուածի մը ներկայ գտնուելով՝ հետևեալ ստորագրութիւնը ըրին :

Իրենց տեսած դատաստանարանը մեծ ու լայնատարած ծառի մը տակ էր՝ Եյի-

մէջի մէջ Նաբէթօայի եկեղեցւոյն մօտ ։ Ծառին բոլորտիքը երկայն նստարաններ շարուած էին , որոնց վրայ 30 իշխան նստած էին դատաւորի աստիճանով ։ Մեծ դատաւորը իր յարդեղէն գլխանոցին վրայ ունեցած փունջ մը սեւ ու կարմիր փետուրներովը կը զանազանուէր միւսներէն ։ Իսկ հագուստի կողմէ՝ մէկալներուն պէս տեղացւոյ աղւոր հանդերձներ հագած էր ։ Յանցաւորները 2 երիտասարդներ էին , որոնց վրայով ամբաստանութիւն եղած էր թէ՝ հացածառի պտուղ գողցեր էին ։ Ասոնք հոն բերուեցան , եւ հրաման եղաւ որ ծառին տակը գետնի վրայ նստին ։ Դատաւորը ելաւ կայնեցաւ , եւ ան երիտասարդներուն ալ հրաման ընելով որ ոտքի վրայ ելլեն , ըսաւ անոնց թէ անշուշտ պատժապարտ են , գողութեան մէջ գըտնուելնուն համար . եւ անոնց յայտնապէս ցուցուց թէ՝ որչափ մեծ մեղք գործած էին ։

Երիտասարդներէն մէկը անմիջապէս իր յանցանքը խոստովանեցաւ , եւ աս ալ վրան առաւ թէ՝ իր ընկերը աս մեղքը գործելու համոզողը ինքն էր ։

Ներկրալի բան էր ատանկ համարձակ

խոստովանութիւն մը լսելը : Յանցաւորները սովորաբար այսպէս կը խոստովանէին իրենց յանցանքը . անանկ որ շատ քիչ անգամ կը պատահէր որ մէկայ փնտռել հարկաւորէր : Մեծ դատաւորը միւս իշխաններուն հետ խորհուրդ ըրաւ ու երիտասարդներուն տրուելու պատիժին վրայով . ու եօթը վճռեց որ Թագաւորական Նարօյի պարտէզի մը բոլորտիքը 24 ոտնաչափ պատ շինեն ամէն մէկերնին : Հարցուցին յանցաւորներուն թէ աս վճռոյն կը հաւնի՞ն : Անոնք ալ պատասխանեցին թէ՝ Այո՛ , կը հաւնին :

Գողութեան համար սովորական պատիժ մըն էր գողցուած բանին արժէքին չորեքպատիկը հատուցանելը . բայց դատաւորները արտօնութիւն ունէին ուրիշ պատիժ մը որոշելու , երբոր իրենք յարմար դատէին : Աս բանս օրէնքին պակասութիւն մըն էր , որով երբեմն ժողովուրդին պատճառ պիտի տար խորհելու՝ թէ անիրաւութեամբ կը դատուին : Յանցաւորներն ալ արտօնութիւն ունէին իրենց բարեկամներէն օգնութիւն ընդունելու՝ պատժոյ տեղ վրանին դրուած հարկը 'ի գործ դնելու ատենին : Հայր

մը իր Աղջուայն ընելու գործին օգնութիւն կ'ընէր , Նմանապէս երկաթատարդ-իշխանի մը՝ իր ընկերները :

Երբեմն օրհնապանցներուն խիստ սարսափելի պատիժներ կը տրուէր : Աւախաթէս կղզւոյն մէջ անգամ մը բլուրի մը մէկ կողմը 2 գուբ փորած էին , որոնց խորունկութիւնը 15 ոտնաչափի կը հասնէր , ու անոնց բերանը յատակէն շատ նեղ ըլլալով՝ անկարելի կը թուէր որ մէկը առոր քովերէն բռնելով վեր ելլէ : Կինկան մէկը՝ որ իր երկանը քովէն փախեր՝ և իր մարմնոյն վրայ գծագրութիւններ չինել տուեր էր , աս գուբերէն մէկուն մէջը ձգուեցաւ , և ան գծագրութիւնը ընող մարդն ալ միւսին մէջը : Ասոնց բռնին թէ՝ մինչև որ ներում չխնդրեն , և իրենց յանկացեալ պարտաւորութեանց չդառնան , անկէ պիտի չելլեն : Աս գուբերուն մէջ ձգուած ժամանակնին , քիչ մը հացածառի պտուղ ու քիչ մը ջուր էր իրենց ողնապահ կերակուրը :

Երկու օրը լմննալուն՝ գուբին քովերէն հողի խախտուած մաս մը կնկանը վրայ ինկաւ . ան ալ կարծելով թէ դև մը եկեր է զինքը տանջելու , բոլոր ծիգը

թափելով՝ իր արգելանէն փախչելուն հրանորը գտաւ. և տունը դառնալով՝ ներում խնդրեց իր երկրէն, որ ան ալ յօժարութեամբ ներեց անոր յանցանքը։ Քիչ ժամանակէ ետև միւս մարդն ալ զեղջի գալու նշաններ ցուցընելով՝ բանտէն ազատեցաւ։

Կարելի էր որ ոմանց խիստ երևնար թէ իր մարմնոյն և թէ ուրիշի մը մարմնոյն վրայ կտուածներ ընելուն արգելքէ հրամանը։ Սակայն իշխանները խիստ բանաւոր պատճառներու համար արգիլեր էին աս սովորութիւնները։ Անոնք նայեր էին որ՝ երբոր տեղացիք թոյլատուութիւն գտնէին կտուածներ ընելու, շուտ մը իրենց ուրիշ հեթանոսական հին սովորութիւններուն պիտի դառնային։ Անառակ երիտասարդները շատ հակամիտութիւն ունէին իրենց մարմնոյն վրայ կտուածներ գծագրելու, և հետզհետէ ամէն մէկ անդամնուն վրայ ալ կտուածներ կ՚ընէին, թէպէտ և ամէն մէկ յանցանքին համար եռքը պատիժ կը կրէին։

Աս կամակոր օրինազանցները շատ օգուտներ կ՚ընծայէին իրենց երկրին։ Թահիթիի մէջ անոնք՝ նմանապէս ուրիշ

յանցանքի մէջ գտնուողներն ալ տիրան լայն ճամբայ մը շինել կղզւոյն բոլորտիքը : Տեղ տեղ ալ ծովէն բուստերու մեծկակ կտորուանքներ կը բերէին նաւամատոյց շինելու համար : Նոյն մարդիկը շատ անգամ այսպէս տաժանելի գործքերու մէջ կը տեսնուէին : Զարմանալի բան կ'երեւնար անոնց շարունակ յանցանք գործելը՝ որ իրենց վրայ ասանկ ծանր աշխատութիւններ կը բերէր . բայց Աստանային ծառաները իրենց տիրոջը ապստամբութեանը մէջ աւելի կը նեղուէին , քան որչափ Աստուծոյ խիստ ժիր ծառաները իր սպասաւորութեանը մէջ :

Վերջապէս մարմնի վրայ կտուածներ ընելու ամօթութեանը առջին առնելուն մի միայն ճարը գտնուեցաւ , ան նշաններուն եղած տեղին կաշին քերթելով , և տեղը կռտած նշաններ ընելով ան տեղուանքը՝ ուր որ գեղեցիկ գծագրութիւններ դրոշմուած էին :

Անգամ՝ մը խիստ անսովոր պատիժ մը տրուեցաւ Կ Հոգւոյ , որոնց յանցանքը աս էր որ՝ տան մը մէջ շատ մը տեղ կոչուած արմատէն գիղեր էին , խմելիք շինելու համար : Խել մը մարդիկ խոր-

կուեցան որ աս օրինազանցներուն վրայէն տուներ վերցընեն : Տանը յարկը քակեցին , և զանիկայ շալկելով ան տէրոջն գլխաւոր իշխանին տունը տարին : Նոյն գիշերը սաստիկ փոթորիկ եղաւ , և յանցաւոր մարդիկը տունէ տուն երթալով՝ պատսպարան մը խնդրեցին . բայց ամէն գացած տեղերնին ալ չընդունուեցան , հապա ժողովուրդը կ'ըսէր անոնց՝ թէ իրենք չար մարդիկներու հետ բան չունին : Վերջապէս աս դուրս վռնտուած մարդիկը քարոզիչներուն գացին , և անոնց թշուառութեանը խղճի մը մէջ մտանելով՝ յորդահոս անձրևէն պատսպարուեցան :

Պատ . Պէնէթ և Թէայըրմէն անգամ մը մարդ մը տեսան՝ որ Թէահիթիի մէջ եղող մատուռի մը դուրսի կողմը կեցեր էր : Նոյնէն իմացան որ՝ անգամ մը անիկայ բարկութեան կիրքով պաշարուած սպաննացեր է իր բարկութիւնը գրգռողը սպաննելու , և զանիկայ իր չաստուածոյն կերակուր տալու : Աս հայհոյութիւնը խօսելուն համար՝ աս մարդը իշխաններուն հրամանաւը Աէրակի օր մը ժողովուրդին միաբանութենէն մերժուած մնացեր էր :

Հուահինէի մէջ աղքատին իրաւունքը պաշտպանելու վրայով հանճարական դիպուած մը պատահեցաւ : Պրեռահանակ Ռոմարէքին մայրը Թագուհին՝ անգամ մը աս կղզին պտըտելու ելաւ, և քիչ մը փայտ պէտք ըլլալով՝ հրաման ըրաւ իր ծառաներուն որ աղքատ մարդու մը պարտէզին մէջ բուսած հացածառը կտրեն : Թագաւորներուն ու Թագուհիներուն սովորութիւնն էր աղքատին զրկանք ընել, և միայն իրենց զուարճութիւնը փնտռել. աս պատճառաւ Թագուհին մեծապէս զարմացաւ, երբոր լսեց իրեն որ հետեւեալ օրը դատաւորին առջին պէտք է ելլել : Դատաստանական քննութիւնները հասարակօրէն օդին զով ատենը կը սկսուէր՝ արեւը ծագելուն պէս : Այս որոշ ժամանակը հանելով՝ Թագուհին իր բազմաթիւ սպասաւորներովը դատաւորին դիմացը ելաւ, որ անիկայ հովանաւոր ծառի մը շուքին տակը նստած էր : Թագուհին ալ անոր դիմացը նստաւ բարակ փսիաթի մը վրայ : Աղքատ մարդը սկսաւ իր իրաւունքը վրայով բողոքել : Անատենը դատաւորը Թագուհւոյն դառնալով՝ ըսաւ. „Միթէ չես գիտեր որ մենք օրէնքներ ունինք" :

Պատասխանեց Թագուհին . "Այո , բայց չէի գիտեր որ ինծի ալ կը վերաբերին" :

Դատաւորը հարցուց թէ՝ "Օրէնքոց մէջ ըսուա՞ծ է թէ՝ թագաւորներն ու թագուհիները օրէնքին հնազանդելու պարտաւոր չեն" :

Անիկայ ալ պատասխանեց . "Ո՛չ" . և իր ծառաները խրկելով քսակ մը ստակ բերել տուաւ , և զանիկայ ան աղքատ մարդուն առջին նետեց :

"Կեցիր" , ըսաւ դատաւորը , "դեռ չլմնցուցինք" : Ասոր վրայ Թագուհին սկսաւ լալ : "Ալ կարծես որ" , ըսաւ դատաւորը , "առանց տիրոջը հրամանին ծառ մը կտրելը իրաւացի բան սեպուի" :

Ետքենը դատաւորը հարցուց աղքատ մարդուն թէ ի՞նչ հատուցում կը պահանջէ իր ծառին փոխարէն :

Պատասխանեց աղքատ մարդը . "Թէ որ Թագուհին վերահասու եղած է թէ աղքատի մը ծառը առանց անոր հրամանին կտրելը անիրաւութիւն է , ալ ես ապահով պէտք ըլլամ որ անիկայ մէյմըն ալ ասանկ բան մը պիտի չընէ : Այսչափս ինծի հերիք է : Ասկէ ուրիշ հատուցում մը չեմ պահանջեր" :

Բոլորտիքը կեցող ժողովուրդը շատ հաւնեցաւ աս պատասխանիս ։ Կարծեմ թէ՝ ետքէն Թագուհին ան ծառին արժէքին հաւասար ընծայ մը խրկեց աղքատ մարդուն ։

Յայտնի է որ հիմա աս կղզիաբնակ ժողովուրդը օրէնքներուն հաստատուելէն 'ի վեր երջանիկ վիճակ մը կը վայելէր, քան թէ առջի ատենները երբոր օրէնք չունէր․ քանզի դատաւորները չարագործներուն սոսկում էին, և բարի մարդոց պաշտպան ։ Շատ առիթներու մէջ յայտնի կ'երևնար ժողովուրդին երջանկութիւնը ։ Հիմա պիտի ստորագրենք բերկրալի խընճոյքի մը պատմութիւնը, որուն մէջ Պատ․ Թայլըրմէն և Պէննէթ ներկայ գտնուեր էին ։

Աս խնճոյքին հանդէսը Մաթաթէայի մէջ եղաւ, ուր որ Պատ․ Ուիլլիամս և Թրէլքէլտ իրենց քարոզչութեան պաշտօնը կը վարէին, և որ ան տեղի ժողովուրդը ուրիշ կղզիներէն աւելի Անգղիացւոց սովորութիւնները ընդունած էին ։

Քարոզչաց բնակարանին մօտ ծովեզերքին վրայ՝ բուստերով նաւամատոյց մը շինուած էր ։ Աս նաւամատոյցին վրայ

եղաւ Հացկերոյթը ։ Հազարաւոր մարդիկ ներկայ էին . ասոնք կղզւոյն ամէն կողմերէն եկած էին , ոմանք ծառակուրներով , և ոմանք ոտքով , ու Հետերնին կաՀ կարասիք և ուտելիք բերեր էին ։ Պատրաստութիւնները առատունց կանուխ սկսուեցան ։ Խորտուբորտ բուսաէ յատակին վրայ թարմ խոտեր փռեցին կապերտի պէս , և վերէն ալ տեղացւոց կտաւէն շինուած վրան մը տարածեցին արևուն տաքութենէն պաՀով ըլլալու Համար ։ Հարիւրէն աւելի սեղաններ՝ որ կղզեցիք բերած էին , սին նաւամատոյցին վրայ տեղաւորեցին , և անոնց բոլորտիքը փայտեղէն նստարաններ , և մեծ ու պզտիկ աթոռներ շարեցին ։

Տեղացւոց գործած կտաւները , կամ փսիաթները սեղանի սփռոց ըրին , և ճաշի վերաբերեալ տեսակ տեսակ կերակուրներ դրուեցան սեղաններուն վրայ ։ Որչափ մարդիկ կը գտնուէր՝ որ Ընգղէյ պնակներ , դանակներ և պատառաքաղներ ունենար , իսկ շատերը միայն տերևներէ շինուած տեղացւոյ պնակներ ունէին . և անանկ գդալներ՝ որ իրենք կրնային շինել ։ Այս Հացկերոյթիս մէջ կերակուրներուն մեծ

մասը՝ պտուղ ու արմատներ էր , թէ և քիչ մըն ալ եփած խոզի միս և ձուկ կը ուտէին : Այս օրին ժողովուրդը Ճաշի նստաւ , և աս իրենց առատ կերակուրին վրայ Աստուծմէ օրհնութիւն խնդրելու զանց չըրաւ : Պատ. Պէննէթ և Թայըրմէն քարոզիչներուն և անոնց ընտանեացը հետ սեղան նստան իրենց համար պատրաստուած վրանի մը տակ , և ուրախութեամբ աս երջանիկ ժողովքին վրայ կը նայէին :

Ամէն մէկ սեղանին քովը նստող հայրերուն ու մայրերուն բոլորտիքը շարուած էին իրենց զուարթերես տղաքն ու աղջիկները , որոնց առաջուց թոյլտուութիւն չկար իրենց ծնողացը հետ մէկտեղ հաց ուտելու , և անոնց մեծ մասը շատոնցմէ հողը մտած պիտի ըլլային , թէ որ փրկութեան Աւետարանը ան տեղերը Ճանչցուած չըլլար : Ճաշը լմննալուն մէկ քանի իշխաններ իրարու ետևէ ոտքի վրայ ելան , և իրենց վայելած օրհնութիւնները տեղացւոց յիշեցուցին :

Անոնց մէկը ըսաւ . «Քանի մը տարի առաջ եղած ուրախութեան խնճոյքներու մէջ՝ թագաւորէն կամ իշխաններէն , և

կամ՝ զօրաւոր մարդիկներէն կ՚ըսուի՝ մինչ չէր կրնար ուտելիք մը գտնել. աղքատը, կաղը ու կոյրը՝ ոտնակոխ կ՚ըլլային, և հաւանական էր որ կը սպաննուէին ալ ան զեղխութեան և արբեցութեան խընճոյքներուն մէջ»:

Մէկ ուրիշ իշխան մըն ալ ըսաւ. «Ասիկայ Յիսուսի Թագաւորութիւնն է — անիկայ Սատանային Թագաւորութիւնն էր: Առաջները սովոր էինք լեռները փախչելու և պահուըտելու, որ չըլլայ թէ մեզ մեռցընեն իբրև Օրօյին նուիրուելու զոհ մը, ու մինչև որ զոհի մը մատուցուելուն լուրը չառնէինք, չէինք համարձակեր տեղերնիս դառնալու»:

Այս օրէն ետև տեղատարափ անձրև մը եկաւ. ուստի ժողովուրդը անկէ ելլելով՝ ծովեզերքին մօտ գտնուող ծառերուն տակը գացին պատսպարուելու. իսկ երբոր անձրևը դադարեցաւ, նորէն տեղերնին դարձան որ թէյ խմեն:

Հարցուելու արժանաւոր բան է թէ անոնք ուսկէ՞ կը գտնէին թէյը: Անոնք նաւերէն քիչ մը թէյ ու շաքար գնով առած էին, և խիստ պատուական ըմպելիք մը կը սեպուէր՝ իրենց երկրին մէջ

հազուագիւտ ըլլալուն համար : Սակայն տաք ջուրը անգամ տեղացւոց մէջ մեծ բան մը կը սեպուէր . քանզի առաջուց կրակի դիմանալու ամաններ չունենալնուն համար չէին կրնար ջուր տաքցընել :

Թէյ եփելու ժամանակը՝ շատ սաներ և տապակներ երևան ելան : Գդալ մը թէյը՝ սան մը ջուրի մէջ դրուելու բաւական սեպուած էր : Ոմանք ալ թէյի տեղ միայն շաքար կը գործածէին . քանզի քիչ մարդիկ կը գտնուէին որ թէյ ալ ու շաքար ալ ունենար :

Իրաւ է որ շատերը կաթսայ մը կ'առնէին՝ որուն մէջ եռացուցած ջուր լեցուն էր՝ մէջը քիչ մը շաքարով :

Խմելիքի գաւաթներն ալ հետաքրքրութեան արժանի բաներ էին , և թէյ խմելու համար սովորական եղած բաները չէին տեսնուեր . հապա խառնափնդոր բաներ էին . գաւաթներ , տոռմաններ , պնակներ , ապակեղէն բաժակներ , և սրուակներ ու տեղացի թասեր — որ է՝ գաւօյի ընկուզի կեղև :

Իրիկուան կերակուրէն ետև՝ ժողովուրդը սկսաւ երթալու պատրաստութիւն տեսնել , կամ կարաւանիկներէն ժող-

վերլով ու բեռ կապելով․ անկէ ետքը ոմանք իրենց սեղանները եւ նստարանները շալկելով, եւ ոմանք իրենց նաւակներուն մէջ դնելով, տուներնին դարձան․ անշուշտ անոնցմէ շատերը շնորհակալութիւն կը մատուցանէին Անոր՝ որ ամէն բան առատապէս տուաւ իրենց վայելելու ։

Աս անմեղ զուարճութեանս կատարուած օրուան իրիկունը ամէն մէկ տունէն աղօթքի եւ փառաբանութեան ձայներ կը լսուէին ։

Մախաթեայի մէջ գրեթէ աս խրախութեանս կատարուած ատենը՝ Թահիթիի Թագաւորական ընտանեաց մէջ երեւելի դիպուած մը պատահեցաւ, այսինքն՝ Աիմաթա օրիորդին ամուսնութիւնը ։ Անիկայ դեռ շատ պզտիկ էր․ անանկ մէկը Եւրոպայի մէջ փոքրիկ աղջիկ պիտի սեպուէր․ բայց Թահիթիի մէջ գրեթէ չափահաս կը սեպուէր ։ Քիչ մը ժամանակ առաջ՝ անոր էրիկ ըլլալու համար մէկը ընտրեր էին, որ ինքը Թագաւոր չէր, հապա ատենօք Թահաա կղզին իշխանութիւն վարող հին Թագաւորաց ցեղէն էր ։ Անիկայ իր ծնողացմէ որբ մնացեր էր, եւ ան միջոցին Թահաայի վրայ

տիրող բարեպաշտ Թագաւորին հոգաբարձութեանը յանձնուած էր ։ Նոր քրիստոնէական ուսմամբ վարժուած ըլլալէն , և բարեհամբոյր երևոյթէն կը յուսացուէր որ Նիմաթային յարմար երեկ մը պիտի ըլլայ ։

Նոնց առջի անգամ տեսութիւն ընելէն քանի մը օր ետքը եղաւ հարսանիքը , և պսակին հանդէսը կէս օրուան տանը մատուռին մէջ կատարուեցաւ ։ Հուաւհինէի քարոզիչները Պատ . Ճըլլիս և Պարք՝ հաղորդութեան սեղանին ետևովը ամպիոնին առջևը կայնեցան ։ Մանկահասակ ամուսինները անոնց դիմացը կեցեր էին , և իրենց ազգականները քովերնին կայնած էին ։ Նիմաթային հագուստը՝ աս էր . Անգղիացւոյ ճերմակ շրջազգեստ մը , անոր վրայէն կարմիր պարանոցի կապ մը վար կախուած , և ճերմակ կեղևէ շինուած գլխանոց մը ճերմակ ժապաւէնով զարդարուած ։ Նոր ապաստաւորող տիկիններն ալ Անգղիացւոց սովորութեանը համեմատ հագուած էին . բայց իշխանները իրենց կղզեցւոյ հանդերձներովն էին ։ Պսակին ժամանակը Նիմաթային աչքերը լեցուեցան . աս ար-

մայրերը ձուկի ակռաներով մարմիննին կը ճեղքռտէին, և իրենց արիւնները ի-րար խառնելով լաթ մը կը ներկէին, բայց տակը ամէնը անօգուտ էին։

Յիսուսի կրօնքը ան առակաց արարո-ղութիւնները անհետ ըրաւ ու գեղեցիկ կղզիներէն, և անոնց վրայ՝ թէ ալ աշ-խարհիս, և թէ յաւիտենականութեան վերաբերեալ անթիւ բարիքներ բերաւ։

## ԳԼՈՒԽ ԻԴ.

### Ողջախոհական Ռոժարոյին Ռոժարու-թեան հանդէսը։

Ողջախոհական Ռոժարէ Թագաւորը ամէն կերպով քարոզիչներուն ուզածին պէս չէր կրթուեր. քանզի թէ և իր մե-քաքրոջը յանձնուած էր տոր դաստիա-րակութիւնը, բայց երբեմն իր մայրին ալ պատուէրներ կու տար անոր վրայով։ Դեռ տղան 3 տարեկան չեղած՝ մէկ դօ-բաւոր մարդու մը շալակի կը հեծցընէին զանիկայ, և կղզւոյն շրջակայ տեղուանքը

կը պտըտցընէին . մայրն ալ անոր հետ մէկտեղ կ՚երթար , և տղուն կը սորվեցընէր իր հպատակներէն քան մուրալ , Թահիթիի Թագաւորներուն հին սովորութեանը համեմատ : Ասիկայ տեղացւոց տուներուն քովէն անցած ատենը , ժողովուրդը դուռը կ՚ելլէր զանիկայ տեսնելու : Թագուհին աս պատեհութիւնն անոնց տուներուն ներսիդին նայելու կը բանեցընէր , և իր ուզած բաներէն ինչ որ տեսնէր , տղուն կ՚ըսէր որ ան բանը ուզէ : Բաւական էր որ Բօմարէին բերնէն միայն սանկ խօսք մը ելլէր , «Խոզ , պանանա , փոխաթ , ափսէ», և անոր ուզած բանը ուրախ սրտիւ կու տային իր հնազանդ հպատակները :

Պարտիզչները կը վախնային որ չըլլայ թէ տղան ագահ բնաւորութեան մը սովորի , և իր հօրն ու մեծ հօրը պէս անպատուութիւն բերէ իր վրան :

Երբեմն Նորահասակ Թագաւորը անանկ պարագայի մը մէջ կը գտնուէր , որ Աստուծոյ ծառաներուն ուրախութեան պատճառ կ՚ըլլար : Արդէն լսած էք թէ ինչպէս անիկայ քարոզչաց ժողովին մէջ աթոռը նստեր էր : Մէկ ուրիշ պատ-

Ճառաւ մըն ալ ներկայ գտնուեցաւ անանկ հանդէսի մը՝ որ կրօնական բանի համար էր ։

Նոր մատուռ մը շինուիլ հարկաւորեցաւ Բաբէէթէի մէջ՝ ուր որ Պատ. Քրուք կը բնակէր , և աս տեղէս 4 մղոն հեռու էր թագաւորական ընտանիքին բնակարանը ։ Բոլոր ժողովքը համաձայնութիւն տուաւ որ հանդիսաւոր ժողովի մը ներկայութեամբը՝ դեռահասակ Բօմարէն դնէ առջի քարը ։ Պատ. Թայըրմէն և Պէննէթ ներկայ էին աս հանդէսին , որ կատարուեցաւ 1823ին , Յունիս ամսուն մէջ ։

Ծովեզերքին մօտը բուսած ծառերուն հովանւոյն տակը պաշտօն մատուցուեցաւ ։ Երգեր երգեցին , և աղօթք մը ըրին , և Պատ. Քրուք քարոզ մը տուաւ՝ սա խօսքը բնաբան առնելով . "Մէկը՝ ալ ուրիշ հիմ չկրնար դնել՝ դրուածէն ՚ի զատ , որ է Յիսուս Քրիստոս" ։ (Ա Կորնթ. Գ. 11 ։)

Պաշտամունքին ատենը՝ ժողվուած բազմութիւնը՝ որ 1000 հոգւոյ չափ է. կը բաղկանար , կանանչ խոտերուն վրայ նստաւ . արմաւենւոյ տերևներէ ծած-

կուած հովանիներուն տակ , և կերակուրի ալ պատրաստութիւն տեսնուած էր : Պաշտամունքը վերջանալէն ետև՝ ժողովուրդը ան տերևազարդ հովանիներուն տակը քիչ մը բան կերան : Թագաւորական ընտանիքը , Պատ . Փրուք ու իր ընտանիքը , և Անգլիայէն եկած այցելուները ճաշ ըրին մեծկակ հովանոյ մը տակ նստելով , ուսկից որ ան ժողովուրդը կը դիտէին : Աս տեսարանը անոնց միտքը բերած պիտի ըլլար հին ժամանակի Իսրայէլացի ժողովուրդը , որ տարին անգամ տաղաւարահորաց տօնը կատարեցին , գեղեցիկ և տերևախիտ ծառերու ճիւղերէ , արմաւենեաց ոստերէ շինուած վըրաններու տակ նստելով , և Տէրոջը առջևը ուրախանալով :

Նոյն օրը Իշխաններէն շատերը Աստուծոյ իրենց ազգին ըրած բարութեանը վրայով խօսքեր ըրին : Կրնային մտքերնին բերել ան սոսկալի գործքերը՝ որ սովորաբար կը գործուէր Մարաէի մը հիմին առջի քարը դրուելու ատենը , թէ ինչպէս թագաւորը բազմութեանը մէջէն մէկու մը վրայ աչքը կը տնկէր երբև մատուցուելու զոհ մը , և գաղտուկ սպա-

արկուԹիւն կ՚ընէր իր ծառաներուն՝ որ
զանիկայ ապահովեն , եւ Թէ ինչպէս մէկ
վայրկեանի մէջ խեղճ մարդուն գլխուն
զարնելով՝ զանիկայ փոսի մը մէջ կը հը-
րէին , նոյն ատենը ցից մը կամ բուստ
մեծկակ կոճղ մը կը հաստատէին անոր
ջերմ եւ արիւնաշաղախ կուրծքին վրայ ,
եւ բոլորտիքը հողը վրան լեցնելով՝ ի
զինքը կեցողները կը կոխկռտէին : Մա-
րտէք մը ամէն մէկ ցիցը , կամ քարը
սովորաբար այսպէս արիւնով կը հաստա-
տուէր : Կարելի՞ էր որ մէկը ան օրերը
միտքը բերէր , առանց զԱստուած օրհ-
նելու՝ աս քրիստոնեայ քարոզիչները խըր-
կելուն համար , եւ առանց այսպէս կան-
չելու , Թէ՝ «Ի՞նչ գեղեցիկ են լեռնե-
րուն վրայ անոր ոտքերը , որ աւետիս կը
բերէ , խաղաղուԹիւն կը քարոզէ»: (Եսա-
յայ . ծբ . 7 :)

Հիմա առ հասարակ կը փափաքէին
Իսմարէն Թագաւոր օծելու . բայց յար-
մար դատեցին որ դեռ անոր Թագաւորու-
Թեան հանդէսը չկատարուած՝ օրէնքները
եւ կառավարուԹեան կանոնները կատա-
րելագործեն :

Նախքան ԹահիԹի Թագաւորները

սրտերնուն ուզածը կ'ընէին․ բայց Բօմարէ Բ․ը օրէնքներ դրած էր, և խոստացաւ որ անոնց համեմատ ժողովուրդը կառավարէ։ Այս հիմա իշխանները որոշեցին որ կառավարութիւնը ալ աւելի լաւցընեն՝ Բարլամէնդի ժողով մը հաստատելով, որուն մէկ քանի կարգադրութիւնները Անգղեայ Բարլամէնդին նման էր։ Աս ժողովը պիտի բաղկանար Թիահիթիի և Էյմէօյի բոլոր իշխաններէն, նաև աս կղզիներուն ամէն մէկ բաժնին ստորին աստիճանի մարդոցմէն ալ երկերկու հոգի պիտի գտնուէր։ Աս երկերկու հոգիները 3 տարին անգամ՝ մը՝ ամէն մէկ բաժնի ժողովուրդը պիտի ընտրէր։

Իշխանները և ժողովուրդէն ընտրուած երեսփոխանները ամէն տարի մէկ տան մէջ պիտի ժողվուէին, ու օրէնքներ պիտի դնէին, և ինչ որ ընելու յարմար էր՝ ան պիտի որոշէին․ բայց բան մը պիտի չընէին՝ առանց Թագաւորին հաճութեանը, կամ անոր մանուկ ըլլալուն պատճառաւը՝ անոր տեղը բռնող փոխարքային կամացը դէմ։

Քարոզիչները չուզեցին միջամուխ ըլ-

լալ աս ժողովքին գործքերուն • քանզի անոնք աշխարհային գործքերու հետ բան չունէին • հապա անոնց գործը միայն Աստուծոյ բանին քարոզութիւնը , և մարդոց հոգիներուն փրկութեանը համար աշխատիլն էր • այսու ամենայնիւ խորհուրդ մը հարցընելու առնէնին՝ իրենց կարծիքը յօժարութեամբ պիտի յայտնէին :

Աս ժողովը առջի անգամ 1824ին , Փետրվար ամսուն գումարուեցաւ : Մասնաւորապէս Պատ. Սօլթին աղաչեցին որ աս ժողովքիս մէջ նախագահութիւն ընէ : Ան ալ հաճեցաւ որ աթոռը նստի , և երբոր իր խորհուրդը ուզեն՝ զրուցէ իր կարծիքը • բայց անկէ աւելի բանի չպիտի մէջ մտնէր : Մէկ քանի ուրիշ քարոզիչներ ալ ներկայ էին աս ժողովքիս մէջ , նոյնպէս ալ Պատ. Թայլրմէն և Պէննէթ :

Առջի օրէնքներուն մէջ աս մեծ պակասութիւնը կար , որ շատ տեսակ յանցանքներու պատիժը որոշելու իշխանութիւնը՝ դատաւորին խոհեմութեանը թողուած էր , որպէս զի ինչպէս որ յարմար դատէ , այնպէս վճիռ տայ : Աս պակասութիւնը շտկուեցաւ նոր օրէնք-

ներուն մէջ , և ամէն տեսակ յանցանքի համար , մէյմէկ մահուանը պատիժ դը-րուեցաւ :

Իշխաններէն ոմանք կ'ուզէին որ մարդասպանութեան և ապստամբութեան համար դրուած խիստ պատիժը փոխուի : Չէին հաճեր որ մարդիկ 'ի մահ դատապարտուին . քանզի այս պատիժով յանցաւորին ապաշխարելու միջոց մը չէր մնար : Ուստի առաջարկեցին որ մարդասպանները ու ապստամբները մէկ անմարդաբնակ կղզի մը աքսորուին , որ կը կոչուէր Պալմէրսդընի կղզի , կամ անոր նման ուրիշ տեղ մը :

Ովկիանոսին ընդարձակութեանը մէջ շատ կղզիներ կային իրարմէ հեռու . և անոնց մէջէն անկարելի էր որ յանցաւոր մը իր շինած նաւակը մտնելով փախչէր : Այս կղզիներուն մէջ արգիլուած մարդը գագաօյի ընկուզով և ջրով կրնար ապրիլ , և այս իր առանձնութեանը մէջ իր մեղքին վրայով խորհելու , և Աստուծմէ նոր սիրտ մը խնդրելու պատեհութիւն կրնար ունենալ : Իշխանները կարծեցին որ չար մարդիկը այս պատիժէս աւելի պիտի սոսկան , քան թէ բուն իսկ մա-

հուանէ , և նոյն առենը ճշմարտապէս մէկ գթութիւն մը եղած պիտի ըլլար իրենց :]

Սակայն չկարծուի թէ մինչև հիմա շատ մարդիկ 'ի մահ դատապարտուած էին : Օրէնքին սահմանուելէն 'ի վեր , որ գրեթէ 5 տարի կ'ըլլար , միայն չորս մարդիկ մահուամբ պատժուեցան : Ըսոնց ամենուն ալ յանցանքը Խօմարէին դէմ ապստամբելնին էր , և ոչ թէ մարդասպանութիւն : Երկուքը մէկ հեղ կախուեցան , ու երկուքն ալ մէկ ուրիշ անգամ մը :

Վերջիններուն դատապարտութեան վըճիռը 'ի գործ դրուած առենը՝ Պատ . Վրուք հոն ներկայ գտնուեր էր , և ապըստամբներուն մարմինները 2 ծառերու մէջտեղէն երկնցուցած փայտէ մը երբոր կախուած էին , բազմութեանը քիչ մը խօսք խօսեր էր : Սակայն սա պատիժները տեղացւոց վրայ բարի ազդեցութիւն մը չէր ըներ , այլ կ'երևէր թէ ասոնք տեսնելով աւելի կը խստանային :

Իշխաններուն մէջ յանցաւորները 'ի մահ դատապարտելու պատիժին վրայով երկար խորհուրդներ ըլլալէն ետև , որո-

շուեցաւ որ աս օրէնքը խափանուի ։

Պառլամէնդի նիստը ութը օր դու- մարուեցաւ խորհուրդ ընելու ։ Ամէն օր աղօթքով կը սկսէին ու կը վերջացընէին իրենց գործը , և ժողովքին ամէն անդամ- ները շատ աղէկ կերպով կը վարուէին ։ Չկար անանկ մէկը՝ որ ուրիշի մը խօսքը բերանը թողուր , կամ ընդդիմութիւն մը ընէր , կամ ծանր խօսք մը խօսէր , և կամ իր շարժմունքէն երևնար թէ զինքը միւսներէն աւելի գիտուն ձևացը- նել կ'ուզէր . Հապա ամէնքն ալ քաղց- րութեամբ կը վարուէին , և պարկեշտու- թեամբ ու խոհականութեամբ կը խօսէին ։

Աս ժողովը վերջանալէն անմիջապէս ետքը՝ փոքրահասակ Պօմարէին թագա- դրութեան հանդէսը կատարուեցաւ ։ Արդէն անիկայ 4 տարեկանի մօտեցեր էր ։ Աս հանդէսիս համար որոշուած էր 1824 Ապրիլի 21երորդ օրը ։ Թագադրութեան հանդէսը կատարուելու տեղը դաշտ մըն էր , ուր որ բարձրաբերձ ծառի մը տակ բարձրկեկ քարայատակ մը շինուած էր , և անոր մէկ կողմէն՝ անկէ քիչ մը ցած ուրիշ մըն ալ ։

Թագադրութեան հանդէսին օրը՝ ժո-

ժողովուրդը առտուանց կանուխ Թագու-հւոյն տունը ժողվուեցաւ, որ Թագա-դրութեան դաշտէն կէս մղոնի չափ հեռու էր։ Ծաղկահասակ Թագաւորը Պատ. Սօթին տունը գացած էր իր Թագադրու-թեան հանդերձները հագնելու, քանզի հանդերձները Պատ. Սօթին տիկինը չի-նէր էր։ Ետքը Թագուհւոյն տունը տա-րուեցաւ, ուր որ շատ մարդիկ կը սպասէին զանիկայ սիրով ընդունելու, և զինքը աթոռ մը նստեցուցին, որուն վրայ ամպ հովանի մը չինէր էին տնղացւոց գործած կտաւէն։

Ասկէ ետև Թափօրի հանդէսով ճամ-բայ ելլելուն կարգը այս կերպով եղաւ։

Կնիկ մը ու երկու աղջիկ ծաղիկներ կը սփռէին ճամբուն վրայ.

Բարոնաց կնիկներն ու տղաքները ։

| | | |
|---|---|---|
| Պատ. | Մահինէ՝ մեծ դատաւորը՝ | Պատ. |
| Պէննէթ ։ | Աստուածաշունչը | Սօթ ։ |
| Հէնրի ։ | ձեռքը բռնած ։ | Խոյրմէն ։ |

Սօթը քարոզիչ՝ իշխանցմէ մէկուն որդին ու մէկուն ալ եղբօրորդին, երկու կարգով ։

| | | |
|---|---|---|
| Մեծ | Սաւթամի՝ մեծ դատաւորը | Մեծ |
| դատաւոր մը ։ | օրէնքներուն օրինակը | դատաւոր մը ։ |
| | ձեռքը բռնած ։ | |

| | | |
|---|---|---|
| Մեծ | Խոսթի՝ ձեռքը | Մեծ |
| դատաւոր մը ։ | Թագ բռնած ։ | դատաւոր մը ։ |

Թագաւորին ԹԱԳԱՒՈՐԸ Թագաւորին
Մայրին ու քոյրը՝ աթոռ մը նստած՝ մօրաքոյրերը ։
չորս իշխան կը տանէին ։
Չորս պատանի ամպհովանին բռնած ,
Թահաա կղզւոյն իշխանը՝ Ռօմարէ ,
Թագաւորական ընտանեաց ազգականները՝ 3 սեղան ,
և խուղծ փոքրիկ չէշ մը կը տանէին ։
Չորս կառավարիչ մէկ կարգով ,
Չորս դատաւոր մէկ կարգով ։
Չորս ատորին դատաւորներ մէկ կարգով ։

Այս հանդէսս տեսնելու համար՝ 8000 հոգիէ բաղկացեալ բազմութիւն մը դէպ՚ի այն որոշուած դաշտը կ՚երթար ։ Հանդիսականաց մէջն էին Ռայաթէայի և Հուահինէի , և մերձակայ կղզիներուն թագաւորներն ու իշխանները ։ Ասիկայ Հարաւային Ովկիանոսի կղզիներուն մէջ առջի անգամ կատարուած քրիստոնէական թագադրութեան հանդէսն էր , և աս կերպով հաստատեցին որ եաքէն ըլլալիքներուն ալ օրինակ մը ըլլայ ։

Երբոր աս Թափօրի հանդէսը քարայատակին եղած տեղը հասաւ , Թագաւորը իր աթոռովը վերի քարայատակին վրայ հանեցին , ճիշդ բարձրաբերձ ծառի մը մը շուքին՝ և իր փոքրիկ ամպհովանւոյն տակը ։ Իրեք պզտիկ սեղանները անոր առջևը շարեցին ։ Արքայական Թագը

Միջին սեղանին վրայ դրուեցաւ, և Հօ֊տուածաշունչն ու օրէնքները և իւղի շիշը երկու քովի սեղաններուն վրայ ։ Պատ․ Տէվիս՝ Նորահասակ Թագաւորին քովը նստաւ, որ անոր տեղը պատասխան տայ, երբոր հարցմունք մը ըլլայ ։

Թագաւորական ընտանիքը անոր բո֊լորտիքը շարուեր էին ։ Իսկ քարոզիչնե֊րը, անոնց կնիկներն ու տղաքները, ու մեծ դատաւորները անոնցմէ քիչ մը հե֊ռու նստեր էին ։

Վարի քարայատակին վրայ կառավա֊րիչներն ու ստորին կարգի դատաւորները տեղաւորուեցան, և անոր բոլորտիքը ի֊րենց կնիկներն ու տղաքները, և հա֊սարակ պաշտօնատարները կարգով նըս֊տեր էին ։

Երբոր ամէն պատրաստութիւնը կա֊տարուեցաւ, Թագադրութեան արարո֊ղութիւնը սկսուեցաւ․ Նախ Պատ․ Տար֊լինկ աս աւթիս յարմար երգ մը ժողով֊քին առաջարկեց որ երգեն ։ Ենկէ ետև Պատ․ Բրուք աղօթք մը ըրուցեց, և Պատ․ Նօթ ժողովուրդին ծանուցում ըրաւ․ աս ծանուցմանս մէջ Պատ․ Նօթ յայտնի ցուցուց ժողովուրդին՝ թէ աս

Հիմակ Հրապարակաւ ճանչցուած իրենց Թագաւորին պարտաւոր են հնազանդութիւն ընելու , և օրէնքներն ալ կարդաց անոնց առջին , և խնդրեց որ ձեռքերնին վեր վերցընեն 'ի նշան իրենց հաւանութեանը :

Երբոր Պատ. Նոթ իր խօսքը վերջացուց , ու օրէնքները նորէն սեղանին վրայ դրաւ , Պատ. Պէնձէթ ձեռքը առաւ զանոնք՝ ու Թագաւորին մատուց , նոյն ատենը Պատ. Ուիլըըն հետևեալ խօսքերը անոր խօսեցաւ . «Կը խոստանա՞ս որ քու ժողովուրդդ արդարութեամբ և գթութեամբ պիտի դատես , և Աստուծոյ խօսքին ու աս օրէնքներուն , և կամ ժողովքին քու հաճութեամբդ սահմանած ուրիշ օրէնքներուն պիտի հնազանդիս» :

Անատենը Պատ. Տէվիս Թօմաբէին այսպէս պատասխանել տուաւ . «Այո , խօսք կու տամ այդպէս ընելու , Աստուծոյ օգնականութեամբը» :

Անկէ ետքը Պատ. Հէնրի եղին շիշը առաւ սեղանին վրայէն , ու քիչ մը Թագաւորին գլխուն վրայ թափելով՝ ըսաւ որ «Աս իւղը կընշանակէ Հոգւոյն Սրբոյ զօրութիւնը , որ միայն կարող է զօրա-

ցընել քեզ որ քրիստոնեայ իշխանի մը պէս վարուիս" ։ Անատենը Պատ. Տէվլիս բարեմաղթեց որ Աստուծոյ Հոգին թագաւորին վրայ հանգչի , և անոր օրհնութիւն տուաւ ։

Անկէ ետքը Պատ. Նօթ սեղանին վըրայէն թագը առաւ , ու թագաւորին գլուխը դրաւ , ըսելով . "Աստուած քեզի յաջողութիւն , առողջութիւն , երկար կեանք , և արդարութեամբ ու Տէրոջը երկիւղովը կառավարելու շնորհք պարգևէ" ։

Անատենը ժողովուրդը իրեք անգամ ցնծութեան ձայն վերցուց՝ ըսելով . "Կեցցէ արքայ . փրկեսցէ արքայ" ։

Ետքը Պատ. Թայըրմէն Աստուածաշունչը թագաւորին մատուց , նոյն ատենը Պատ. Տարլէնկ աս խօսքերը խօսեցաւ անոր . "Ո՛վ Բօմարէ թագաւոր՝ աս գիրքը քեզի կըմատուցանենք , որ աշխարհիս մէջ ամենապատուական բանն է ։ Ասոր մէջն է իմաստութիւնը . աս է արքայական օրէնքը . ասոնք են Աստուծոյ կենդանի պատգամները ։ Երանելի է ան՝ որ աս գիրքը կըկարդայ , և անոնք՝ որ աս գրքիս խօսքերը մտիկ կ'ընեն , և ասոր

մէջ պարունակուած պատուիրանքները կը պահեն ու ՚ի գործ կը դնեն. քանզի անոնք յաւիտենական կենաց վերաբերեալ խօսքեր են, և կարող են քեզ իմաստուն ու երջանիկ ընելու աս աշխարհիս մէջ, մանաւանդ՝ քեզ փրկութեան կ'առաջնորդեն, և յաւիտենական երջանկութեան կը տանին Քրիստոս Յիսուսի վրայ եղած հաւատքովը, որուն փառք յաւիտեանս. ամէն" :

Աս միջոցիս Պատ. Ճ'օնս ուրիշ երգ մը առաջարկեց որ երգեն, և Պատ. Ուիլըն աղօթք ընելով թագաւորին, ու ազգին, և Աստուծոյ եկեղեցւոյն համար, վերջացուց աս հանդէսիս արարողութիւնը :

Ասկէ ետև մարդուն մէկը ելաւ ներումն քարոզեց մը ամենուն համար, որոնք օրէնքով դատապարտուած էին, և հրաման եղաւ որ աքսորուածները ետ բերուին, ու բանտարկեալները ազատ թողուին :

Ու հիմա թագաւորութեան արարողութիւնը վերջացած ըլլալով՝ քարայատակներուն վրայէն վար իջան, և առջինեն ալէս Թաքօրի հանդէսով ճամբայ ելան,

ու մինչև Երքունի քարոզչաց եկեղեցին գացին : Նորահաստակ Թագաւորը իրեն յատկացեալ դասին մէջ իր իշխանութեան աթոռը նստաւ . և անոր գլխէն Թագը վար առին , ու անոր առջևի փոքրիկ սեղանին վրայ դրին : Միւս սեղաններն ալ՝ որոնց վրայ դրուած էին օրէնքներն ու Աստուածաշունչը , Թագաւորին դասին մէջն էին : Թագաւորական ընտանիքն ալ Թագաւորին հետ մէկտեղ նստան :

Հրապարակաւ երկրպագութեան պաշտօնը կատարուելէն ետև , Թափօրի ելլողները ՚ի պատիւ Թագադրութեան հանդէսին՝ պատրաստուած ճաշը ընելու գացին , որուն մէջ ամէն տեսակ ուտելիքը առատ էր , բայց զեղխութիւնը արգիլուած էր :

՚Ի պատիւ Թագաւորաց պատրաստուած հեթանոսական հանդէսներուն ներկայ գտնուողները միայն կրնային ճշդիւ ստորագրել աս Թագադրութեան հանդէսին որչափ տարբեր կերպով կատարուիլը : Աեռնող Բոմարէն չափահաս եղած ատենը՝ Թագաւոր հրատարակուեր էր հեթանոսական սովորութեանը համեմատ .

ոՙչ թէ թագադրութեամբ՝ այլ կարմիր փետուրներով զարդարուած գօտի մը կապուելով. և աս արարողութիւնը մարզասպանութեամբ կատարուեր էր ; և թագաւորին երկրպագութիւն մատուցուեր էր իբրև Աստուծոյ՝ Մարաէին մէջ Օրօյին փայտաշէն Նստարանին վրայ բազմած ատենը՝ Օրօյին ու անոր որդւոյն Հիրօյին մէջտեղը՝ որ գողերու պաշտպան էր :

Որչափ երջանիկ էր աս ծաղկահասակ իշխանը, որուն պսակուիլը փոխանակ արիւնով շաղախուելու, բանտի դռներուն բացուելովը՝ և աղօթքի անուշահոտ խունկովը, ու կենդանի Աստուծոյն մատուցուած փառաբանութիւնով կատարուեցաւ :

## ԳԼՈՒԽ ԻԶ

### Ասկէ քարոզիչներուն կենալը վերջի օրերը պատահած դիպուածները։

Երեսուն տարուան միջոցը, Աստուծոյ՝ Թահիթիի երկրին ըրած հրաշալի գործքերը ստորագրեցինք, և հիմա աս պատմութիւնը վերջացընելու ժամանակն է. սակայն Նորահասակ Պոմարէին Թագաւորութեան հանդէսէն ետև պատահած քանի մը երևելի դիպուածներուն ստորագրութիւնը համառօտիւ կ'ուզենք նշանակել, ու այնպէս վերջացընել։

Մանկահասակ Թագաւորը մեծ յառաջադիմութիւն կ'ընէր իր ուսմանցը մէջ, և այնպէս բարի վարմունք մը կը ցուցընէր, որ ալ քարոզիչները հաստատ յոյս ունէին որ անիկայ իր Թագաւորութեանը օրհնութիւն մը պիտի ըլլար. բայց Աստուած յարմար դատեց որ անոնց ակնկալութիւնը պարապ հանէ։ Թագաւորը վեց ու կէս տարեկան եղած ատենը մէկ հիւանդութենէ մը բռնուեցաւ, որ ան միջոցին կղզւոյն վրայ կը

տիրէր , և խիստ վտանգաւոր եղաւ իր հիւանդութիւնը . ուստի անմիջապէս Թահիթիի մէջ Բաբաօ կոչուած տեղը տարին զանիկայ , ուր որ իր մայրն ու մօրաքոյրը կը բնակէին , և հոն 3 շաբաթ մնաց : Ասոր մահուան տագնապները տեսնելը այնչափ ցաւալի էր , որ իր ազգականները լաթ մը փռեցին վրան՝ երբոր իր սիրելի վարժապետին Պ. Օրմսմընտին գիրկը պառկեր էր : Քիչ մը ատեն անցնելէն ետև լաթը վերցուցին տեսան որ տղան մեռեր էր :

Այսպէս Աստուած շատ սրտերու փափաքը և ազգին ակնկալութիւնը մէկ հարուածով մը վերցուց : Եւ հիմա ամենուն աչքը անոր մեծ քրոջը Աիմաթային վրայ էր , որ Թահիթի կղզւոյն թագուհին եղաւ 15 տարեկան հասակին մէջ : Ու Բոմարէ վահինէ՝ այսինքն Բոմարէուհի կոչուեցաւ . և ուրիշ անուն մը տրուեցաւ անոր մօրաքրոջը՝ որ առաջուց աս անունով կը կոչուէր : Նորահասակ թագուհին իր բնակութիւնը հաստատեց Բաբաօյի մէջ՝ իր հօրը գերեզմանին մօտ : Իր պալատը վայելուչ ու ծեփուած տուն մըն էր , գեղեցիկ հովանաւոր ծառերու

շուքին տակը շինուած , որուն վարի դատիկոնը սրահ մը ու 4 սենեակ կար , և քանի մը սենեակ ալ վերի դատիկոնը : Պատ. Սօթ ատեն մըն ալ շարունակեց պալատականաց քարոզչութիւն ընելը , բայց երկար ժամանակ չկրցաւ քարոզ– տալ Արքունի քարոզչաց եկեղեցւոյն մէջ , քանզի սկսեր էր փլփլիլ : Ուստի անոր չփլած կողմը դպրոց ըրին , և անոր մօտ խիստ գեղեցիկ ձուաձև եկեղեցի մը շի– նեցին :

Թագուհին ամէն ատեն տունը չէր կե– նար , հապա իր հօրը պէս շատ կը սիրէր կղզիէ կղզի ճամբորդութիւն ընելը , և անոր նման՝ կղզւոյն մէջ գտնուած խիստ անառակ մարդիկներէն խել մը հետը կը պտըտցընէր : Ասիկայ կարդալ ու գրելը աղէկ սորված էր , և շատ սրամիտ աղ– ջիկ մըն էր . սակայն իր առոյգ հասակին մէջ եղած ատենը՝ իր հպատակացը բարի օրինակ ըլլալու չափ ծանրաբարոյ չէր , հապա թեթևամիտ էր :

Թագուհիի ժողովուրդը աշխարհային բաներու մէջ շատ յառաջադիմութիւն կ'ընէր : Երդէն յիշուած ճամբան քանի մը տարւոյ մէջ լմնցաւ , և շատ մեծի

միայն անանկ մարդոց աշխատութեամբը, որոնց վրայ դատաւորները տարժանելի գործքեր տեսնելու հարկ կը գնէին՝ ըրած յանցանքնուն փոխարէն :

Առաջները գրեթէ անկարելի բան էր Թահիթիի բոլորտիքը ոտքով ճամբորդութիւն ընելը. երբեմն ճամբորդը կը ստիպուէր սոսկալի դահավէժ տեղերու ծայրէն՝ ծովուն եզերքը շարուած նեղ ժայռերուն վրայ ցատկել. երբեմն ալ իր ճամբան գոցուած կը գտնէր տեսակ մը պլոտուի թուփերով, որ ծովեզերքին մօտ կը բուսնէր, կամ լեռներէն բղխած առուներէն չէր կրնար անցնիլ, նոյն ատենը ամէն մէկ ոտնափոխին՝ անոր ոտքերը քարերէն կը վիրաւորուէր, կամ երկայն խոտերուն կը փաթթուէր : Բայց խիճերով շինուած նոր ճամբուն և ամէն մէկ առուի վրայ շինուած տախտակաշէն նեղ կամուրջներուն միջոցովը՝ մարդիկ կրնային զբօսնըլով պտըտիլ կղզւոյն բոլորտիքը, ու մէկ կողմէն դիւրաւ կրնային դիտել Ովկիանոսին գեղեցիկ տեսարանը, և մէկալ կողմէն կանանչագեղ լեռները : Արդարև այնչափ գեղեցիկ էին երկու քովի տեսարանները, մանաւանդ պտըտ-

բեր ձորերուն երեւոյթը, որ ճամբորդը կրնար երեւակայել թէ զբօսալի տեղերէ կ՚անցնէր, և ո՛չ թէ հասարակ ճամբայէ մը։

Հիմա՝ ալ մարդիկ ամէ՛ն անգամ ոտքով քալելու ստիպուած չէին, քանզի իշխաններէն շատերը ձիեր ունէին հեծնելու համար, նաև աղքատներն ալ շատ անգամ ձի մը ծախու կ՚առնէին։ Աս կղզիներուն մէջ կովն ալ ձիի պէս հասարակ բան մը եղած էր։ Իսկ ոչխարը՝ թէ՛ շուներուն պատառելէն և թէ օդուն ջերմութենէն չեղաւ որ աճէր։

Հիմա երկիրը առջինէն շատ աւելի մշակուած էր։ Ցորեն ալ աճեցընելու փորձ մը ըրին, բայց չյաջողեցաւ. քանզի թէ և ցորենը գլուխ կը կապէր, բայց հունձքի ժամանակ պարապ գտնուեցաւ՝ կլիմային տաքութեանը պատճառաւ։ Խահուէի տունկն ալ աճեցուցին, և խահուէն իշխանաց ախորժելի ըմպելիք մը եղաւ։

Շաքարի եղէգը միշտ կը բուսնէր աս կղզիներուն մէջ, բայց առաջ՝ տեղացիք չէին գիտեր անկէ շաքար հանելը։ Հիմա որ աս արուեստը սորված էին, խիստ

շատ կ'աճեցընէին այս բոյսը ։ Թաիթի իշխանը և քանի մը եւրոպացիք խիստ շատ շաքար կը շինէին , և նաւերուն կը ծախէին ։

Բամպակենին ալ կղզւոյն մէջ ՚ի բնէ միշտ կը բուսնէր , բայց մինչև ժողովուրդին բամպակ մանել ու կտաւ գործել սորվիլը՝ բանի մը չէր գործածուեր ։ Պ. Արմիթէճ իր կնկանը հետ Անգղիայէն եկաւ որ այս արուեստը անոնց սորվեցընէ ։ Աոջի բերան շատ ծոյլ գտնելով զանոնք , ստիպուեցաւ վարձքով շողքորթել՝ որ սորվին ։ Շատ դժուարութիւններ կրելէն ետև՝ կարողացաւ ժողովուրդին սորվեցընել հաստ տեսակ կտաւ մը գործել ։ որ նաւերէն ծախու առնուածէն աւելի դիմացկուն էր ։ Տեղացիք այս կտաւը կապուտակի կը ներկէին , և շատ կը սիրէին անկէ շինուած հանդերձ հագնիլը ։ Աւ հիմա Թահիթեցւոց շատ տուներուն մէջ բամպակ մանելու գործիք կը գըտնուէր ։ Պ. Արմիթէճ քանի մը տարի Հարաւային Ովկիանոսին զանազան կղզիները մնալէն ետև՝ Անգղիա վերադարձաւ ։

Տեղացիք քարոզիչներէն սորվեցան չուան շինելը նաւավարներուն ծախելու համար ,

նաև արարութ պատրաստելը , մանաւանդ որ հիմա Անգղիոյ մէջ արարութը շատ վար գնով ծախու կ'առնուի :

Իրաւ է որ ժողովուրդը առջինէն շատ աւելի աշխատասէր եղաւ . սակայն թէ և աշխատասիրութիւնը աղէկ բան է , բայց շատ անգամ ամենաչար ապահու-թեան հետ ընկերացած կ'ըլլայ : Աս մեղքը պատճառ եղաւ որ տեղացւոց շատերը գպրոց ու եկեղեցին երթալու զանցառու-թիւն կ'ընէին : Քարոզիչներէն հեռու գտնուողները չէին ուզեր Կիրակի օրերը իրենց կալուածքները թող տալ , որ եր-թան ներկայ գտնուէին Կիրակի օրուան պաշտամունքին : Աս տեսակ մարդիկները հազիւ թէ ամիսը անգամ մը կու գային . իսկ անոնք որ շատ անգամ քարոզ լսելու կու գային , առջինէն չափ ուշադրու-թեամբ մտիկ չէին ըներ , քանզի պաշ-տամունքին ատենը՝ խելքերնին միտքերնին իրենց ստացուածքներովը զբաղած էր , փոխանակ երկնային անքննելի հարստու-թեանը վրայով մտածելու :

Ուրիշ մեղք մըն ալ կար , որ Թա-հիթիի մէջ շատ հոգիներու կորստեանը պատճառ կ'ըլլար , որ արբեցութիւնն էր :

*Եւ թէպէտ տեղացւոց ցքահան գործիքները շատոնցմէ 'ի վեր բնաջինջ ըրած էին , բայց նաւերը առատօրէն ոգելից ըմպելիքներ կը բերէին ցամաքը. կը հանէին : Եւ որովհետեւ տեղացիք հիմա շատ ապրանքներ ունէին , չարամիտ նաւաստիները կը ջանային ամէն տեսակ միջոցներ բանեցընելով զանոնք համոզել , որ ունեցած ապրանքնին ըմպելիքներու հետ փոխող ընեն : Ուստի ոգելից ըմպելիքները կ՚առնէին կղզւոյն ամէն կողմերը կը տանէին ծախելու համար , և ծովեզերքին քովը խանութներ կը շինէին :*

*Հիմա քարոզիչները որոշեցին որ կղզւոյն մէջ Գինեհատութեան ընկերութիւն մը հաստատելու փորձը ընեն , և ժողովուրդը համոզեն որ ոգելից ըմպելիքներ խմելէն հրաժարելու խօսք տան :*

*Քարոզիչները սովորութիւն ունէին ամէն 3 ամիսն անգամ մը մէկտեղ ժողվուելու , և ժողովուրդին բարելաւութեանը համար խորհուրդ ընելու : Առ եռամսեայ ժողովներէն մէկուն մէջ՝ որ գումարուեցաւ 1833ին , Օգոստոս ամսուն , որոշեցին որ ամէն մէկ քարոզիչ ջանայ համոզել իր վիճակին մէջ եղող*

ժողովուրդը , որ խոստանայ ոգելից ըմպելիքներ խմելէն հրաժարիլ : Պատ․ Նօթ Թերթ մը Թուղթ առաւ , և իր անունը ստորագրեց , և շուտ մը 100 անուն ալ գտաւ իր ժողովրդապետութեան մէջ եղողներէն :

Աս ժամանակս Թագուհին իր երևելի իշխաններովը Լիմէօյի մէջ էր : Պատ․ Նօթ պատգամաւորի մը ձեռօք նամակ մը խրկեց , որով կը խնդրէր անկէ , որ իր հպատակներուն զգաստութեան օրինակ մը ըլլայ՝ իր պատրաստած Թուղթին վրայ ստորագրութիւնը դնելով : Ան ալ պատասխան խրկեց՝ խնդրելով որ Պատ․ Նօթ այսչափ չարտորայ , և ըսաւ որ՝ աս բանիս վրայով պիտի խորհի ․ սակայն իր կարծիքին նայելով՝ դեռ ինքը չստորագրած՝ իր մօրաքոյրը և ուրիշ իշխանները՝ որոնք Տէրունական ընթրեացը հաղորդական են , պէտք է որ իրմէ առաջ ստորագրուին :

Քիչ ժամանակի մէջ Թագուհւոյն մայրն ու մօրաքոյրը և իշխաններէն շատերն ալ ստորագրուեցան , բայց դեռ Թագուհին ուշացուց իր ստորագրութիւնը դնելը :

Այդէն ժողովուրդին վրայ մեծ փոփո-
խութիւն մը կ'երեւնար . քանզի ալ փո-
ղոցներուն մէջ դանդաչելով քալող գի-
նովներ յաճախ չէր տեսնուեր : Բարե-
գործները կը զգային որ Թագուհւոյն օրի-
նակէն շատ ուրիշ մարդիկներ ալ պիտի
համոզուին ոգելից ըմպելիքներ խմելէն
հրաժարելու : Նոր ստորագրութիւնը
ձեռք բերելու համար ունեցած փափաք-
նուն շուտով հասան : Մէկ իրիկուն մը՝
երբոր Պատ. Սօթ ու իր ժողովուրդէն
ոմանք աղօթքի համար ժողվուած էին ,
պատգամաբեր մը մատուռին դռնէն ներս
մտաւ — որուն երեսին վրայ ուրախու-
թիւն կը փայլէր : Անիկայ ժողովուրդը
զարմացման մէջ ձգեց՝ այսպէս աղաղա-
կելով . «Եղբայրներ ու քոյրեր՝ ուրախ
եղէք ինծի հետ» : Ամէն մարդ ակնկա-
ռոյց կը նայէր անոր վրայ : Անկէ ետեւ
ըսաւ . «Ինծի հետ ուրախ եղէք ըսելուս
պատճառը աս է որ , Թագուհին ինծի
հրաման տուաւ որ գամ Պատ. Սօթին
ըսեմ՝ որ անոր անունն ալ Գինեհատից
ընկերութեան ստորագրուողներուն կար-
գին մէջ դնէ» : Աս լուրիս վրայ ամէնքն
ալ ուրախացան : Եւ հիմա կը յուսա-

ցուէր որ անկէ ետև գինեմոլ մը պէտի չերևնար կղզիներուն մէջ ։

Աս ակնկալութիւնը պարապ չելաւ ։ Քիչ ժամանակէ ետև Պարլամէնդի ժողովքը գումարուեցաւ , որուն մէջ առաջարկուեցաւ որ օրէնք մը հաստատուի արբեցողութեան դէմ ։ Վերջապէս ամէնքն ալ հաւանութիւն տուին աս յետագայ օրէնքին հաստատութեանը ։

„Եթէ որ Թահիթիի մէջ մարդու մը քով գաւաթ մըն ալ ցքի գտնուի , և թէ որ ան մարդը տեղացի ըլլայ , պէտի պարտաւորի 10 խոզ տուգանք վճարելու , իսկ եթէ օտարական , 10 Թալէր , ու կղզիներէն պիտի աքսորուի" ։

Պարլամէնդի ժողովքին անդամներէն մէկ քանիները առաջարկեցին որ հիւանդութեան դիպուածներու մէջ գործածուելու համար՝ քիչ մը ցքի պահելու թոյլտուութիւն ըլլայ ժողովուրդին . բայց շատերը աս թոյլտուութեանը շնորհուելուն դէմ կեցան . քանզի գիտէին որ անոր թոյլտուութիւնը օրինազանցութեան պատճառ պիտի ըլլար ։

Դատաւորները անմիջապէս հոգ տարին աս օրէնքը ժողովուրդին պահել

տալու ։ Թաթի իշխանը որչափ ցքի որ ունէր , իր յօժար կամօքը գետինը թափեց ։ Բարեէթէի մէջ և ուրիշ տեղուանք գտնուած խանութներուն ցքիները գրաւեցին . տականներն ու փայտեղէն գաւաթները կտոր կտոր ըրին , ու անոնց մէջի ցքին գետինը թափեցին ։ Ընդդէմ աս անաչառ օրէնքին՝ երբեմն նաւաստիները իրենց նաւերէն դուրս ելլելով ցքի կը ծախէին , բայց ձեռք անցնելնուն պէս կը պատժուէին ։

Հիմա որ ցքի խմելը արգիլուած էր , ամէն տեղ ժողովուրդը սկսաւ նորէն դպրոցներն ու մատուռները երթալ ժողվուիլ ։ Թագուհին ալ հրապարակաւ յայտնեց իր փափաքը՝ որ ամէն մարդ եկեղեցի երթայ , և ամէն տղայ ու աղջիկ դպրոց երթան ։ Ժողովուրդէն շատերը ուրախութեամբ իրենց ինքնակալ թագուհւոյն հրամանը կը կատարէին ։

Քարոզիչները իրենց քարոզութիւնը մտիկ ընելու եկող բազմութիւնը տեսնելով կ'ուրախանային , և եռանդուն սըրտիւ կը խնդրէին Աստուծմէ՝ որ իր Հոգին վերէն խրկէ անզեղջները դարձի բերելու ։

Եւ հիմա քարոզիչներէն շատերը սաս֊տիկ եռանդով կ'աշխատէին հոգւոց փրր֊կութեանը համար ։ Իրենց ամպիոններուն վրայ ելած ատենը՝ բոլոր ճիգերնին կը թափէին որ ժողովուրդը համոզեն գալու բարկութենէն փախչելու ։ Ըսնոնց աշխա֊տութիւնը Տէրոջմով պարապ չելաւ ։

1835ին ամառուան վերջը՝ կղզւոյն զանազան կողմերէն շատ մարդիկ դարձի եկեր էին , մանաւորապէս Բաբաօյի մէջ Պատ․ Սօթին քարոզութեամբը ։ Մինչև անգամ լեռնարնակ վայրենի մարդիկներ և կնիկներ ալ՝ որոնք մինչև աս ժամա֊նակները անառակ կեանք մը վարեր էին , հիմա սկսան իրենց հոգւոյն փրկութեանը եռանդ ըլլալ ․ և շատերն ալ որ ժամա֊նակով զԱստուած ճանչցեր , և եաքը անկէ խոտորեր էին , հիմա անոր դառ֊նալու փափաք կը ցուցընէին ։ Առջի բե֊րան աս մարդիկը քիչւոր կու գային Պատ․ Սօթին իրեք չորս հոգի մէկտեղ ․ բայց շուտ մը անոնց թիւը աւելցաւ ․ և եր֊բեմն մինչև անգամ 30 հոգի մէկտեղ կու գային երկնային Միօնին ճամբան հարցը֊նելու ։ Յորեկուան ամէն ժամուն ալ կու գային , մինչև անգամ գիշերններն ալ ։ Ա֊

տոնք մատուռը կը ժողվուէին որ Պատ. Նօթին որոշած ժամանակը անոր քարոզութիւնը մտիկ ընեն ։

Աս Հաւատարիմ երէցին սիրտը անպատմելի ուրախութեամբ լցուած էր . անոր ուրախութեանը մասնակից եղող շատեր կային՝ թէ երկրիս վրայ , և թէ երկինքի մէջ . մանաւանդ իր ժողովուրդին մէջ գտնուող բարեպաշտ ծերերը՝ որ շատ անգամ լալագին աչօք աղօթք ըրած էին անսասանուած տեղացուց Համար ։ Աս ծերերը դողդոջուն քայլերով կու գային ծովեզերքը՝ ամէնքն ալ մէյմէկ ցուպի կռթընած , ոպէս զի մատուռին մէջ Պատ. Նօթին Նոր դարձի եկողներուն տուած քարոզը մտիկ ընեն ։ Պատ. Նօթ անոնց կը Հարցընէր թէ ինչու Համար իրենց շատ անգամ լսած բաները նորէն մտիկ ընելու կու գային . անոնք ալ այսպէս կը պատասխանէին . «Աս ժողովուրդին Համար ըրած աղօթքնիս Աստուծոյ լսելի եղաւ ։ Աս բնաբանիս վրայով տուած քարոզը մտքերնիս է . «Բռնադատէ Հոս մտցուր՝ որ տունս լեցուի՝ ։ (Ղուկ. ժդ. 23 ։) Մենք աղօթք ըրինք որ զանոնք Հոս մտցընէ , և

Հիմա անոնց հոս մտնելը տեսնելով կ'ուրախանանք : Ո՛հ , ըսէ անոնց որ զգուշութեամբ մտադրութիւն ընեն երկնաւոր բաներուն , և Տէրոջը վրայ հաստատ կենան : Անոնք մեզմէ աւելի շուտ պիտի հասկընան , քանզի շատոնցմէ կարդալ ու գրել սորված են , և քրիստոնէական վարդապետութեան վրայով տեղեկութիւն ունին . և թէպէտ ժամանակ մը Սատանայէն խաբուեցան , ու իրենց գրքերը մէկդի ձգեցին , սակայն հիմա շուտով պիտի սորվին": Այսպէս աս գորովասիրտ քրիստոնեաները կ'ուրախանային ան խնդիր ու ողբալի անառակներուն վրայ , որոնք կորսուած էին , և հիմա գտնուեցան :

Հիմա տգիտութեան քունէն արթընցողներուն մէջ երկրի ազնուականներէն ոմանք կային , մինչև անգամ թագուհին , անոր էրիկը , ու անոր մայրը : Ասոնք ամէնն ալ կը փափաքէին Տէրոջը ընթրեացը հաղորդութեան անդամ ընդունուելու : Թագուհւոյն ու անոր էրկանը ըսին որ Պատ . Նօթին մի ըստ միոջէ գրեն՝ թէ ինչ զգացումներէ շարժեալ կ'ուզէին հաղորդակից ըլլալ Տէրունական խորհրդոյն . իսկ թագուհւոյն

մօրը չըսխին որ գրէ , հապա որ քրիստոնէութեան ճամբան սորվելու միօք բան հարցընելու եկողներուն հետ մատուռը գայ ։ Շատ չանցած՝ աս իրեքին ալ թոյլտուութիւն շնորհուեցաւ Տէրունեան սեղանին մօտենալու ։

Հիմա Թագուհին իր ժողովուրդին բարեկրթութեանը և դարձի գալուն համար մեծ փափաք կը ցուցընէր ։ Ասիկայ ինքնին խոնարհեցաւ փոքրիկ աղքատ աղջիկներուն կարդալ սորվեցընելու . և այսպէս իր բոլոր հպատակներուն՝ և ամէն երկիրներու թագուհիներուն խոնարհութեան օրինակ մը եղաւ ։

1836 տարւոյն մէջ՝ Թագուհին մեծապէս ուրախացաւ , իր բնակած տեղը՝ այսինքն Բարէի բոլոր սահմանին մէջ միայն 2 յայտնի անաստուած գտնուելուն համար ։

Ինչպէս որ Պատ. Նօթ Բաբաօյի մէջ՝ անանկ ալ Պատ. Տէվիս Բաբարայի մէջ իր պաշտօնը բարեյաջող կերպով առաջ տարեր էր . և շատ ուրիշ քարոզիչներ ալ ամէն կղզիներու մէջ բաւական յաջողութիւն ունեցեր էին ։

Մէկ ուրիշ բան մըն ալ աւելցուց

մեծ ուրախութիւն պատճառեց ։ Հիմա բոլոր Աստուածաշունչը Թուահիթեցւոց լեզուին թարգմանուած լմնցած էր ։ Այս գործիս մեծ մասը Պատ. Նօթին աշխատութիւնն էր ։ Հիմա ինքը սաստիկ փափաք ունէր բոլոր Աստուածաշունչը տեղացւոց ձեռքը տալու ։ Ասոր յարմար գտնեց՝ որ ելլէ անձամբ Անգղիա երթայ, ուր որ գիտնական անձինք՝ դեռ աս թարգմանութիւնս չտպուած՝ կրնային անոր սրբագրութեանը օգնական ըլլալ, և հոն յաջողաձեռն մարդիկ կրնային վայելչապէս և շուտով տպագրել ։ Իր սիրելի ժողովուրդը չէին ուզեր որ անկէ զատուին . սակայն անիկայ հարցուց անոնց թէ՝ կենաց խօսքը իրենց աւանդելու հոգ տանելէն աւելի ի՞նչ ուրիշ բանի կրնայ գործածել իր մնացած սակաւաթիւ տարիները, ու իր տկարացած զօրութիւնը ։

1836ին Փետրվար ամսուն՝ Պատ. Նօթ իր կողակցին հետ նաւը մտաւ Անգղիա երթալու համար ։ Սակայն քանի մը տարի առաջ իր հայրենեացը այցելութիւն ըրած էր՝ Նոր Կտակարանի թարգմանութիւնը հետը առնելով, բայց հիմա կը

մտածէր որ աս անգամինը վերջին այցելութիւն պիտի ըլլար ։

Գուֆ կոչուած Նաւով Հարաւային Ովկիանոսի կղզիները խրկուած առջի քարոզիչներէն ողջ մնացող, և անխոնջ ջանքով աշխատող միայն ասիկայ էր մնացեր, ու Պատ. Հէնրի ։ Երդեօք ի՞նչ ուրախութիւն կը զգար ասիկայ՝ երբոր կը տեսնէր իր կենացը և աշխատութեանը պտուղները ։ Ո՞րչափ մեծ տարբերութիւն կար աս մարդոցը մէջ՝ որոնցմէ ժամանակաւոր կերպիւ զատուելու վրայ էր, և ան ոգէտ ու խեղճ վայրենիներուն մէջտեղը՝ որոնց մէջը բնակելու համար եկած էր 40 տարի առաջ ։

Ընգղիա հասնելուն՝ իր թարգմանութիւնը Լոնտրայի Քարոզչաց ընկերութեանը Հոգաբարձուներուն մատուց. անոնք ալ անմիջապէս 3000 օրինակ տըպել տուին, ու Թահիթի խրկեցին ։ Պատ. Նօթ երկու տարուոյ չափ Ընգղիա կեցաւ ։ 1838ին՝ ասիկայ Լոնտրայի Քարոզչաց ընկերութեանը ընդհանուր ժողովքին ներկայացաւ Էքզէթըր ըսուած սրահը, և անանկ սիրով և յարգանօք ընդունուեցաւ, ինչոր որ կը վայլէր աս

պատուական անձին՝ որ Լինդզէնը Տէր Յիսուս Քրիստոսի անուանը համար վտանգի մէջ դրեր էր ։ (Գործ. ժԵ. 26 ։) Ասիկայ Թահիթի վերադառնալէն առաջ ժողովականներուն Թահիթեցւոց լեզուաւ Աստուածաշունչ մը ցուցուց, և անոնց ըսաւ թէ Թահիթի դառնալու վրայ ըլլալուն իր վերջին հրաժարական ողջոյնը կը մատուցանէ, բայց չէ թէ յաւիտենականը ։

Պատ. Հէնրի թէ և ծերութեան հասակին և աշխատութեանը ծանրութենէն, և Հարաւային Ովկիանոսի խորշակաշունչ եղանակէն շատ կը նեղուէր, այսու ամենայնիւ չուզեր իր սիրելի հօտը թողուլ, ու երթալ զովագին գաւառի մը մէջ բնակիլ ։ Կը վախնայ որ չըլլայ թէ գայլը մէջերնին մտնէ, ու զանոնք պատառէ, աս պատճառաւ իր կնկանն ու որդւոցը հետ՝ անոնց հոգիներուն վրայ հսկելով կ'անցընէ իր վերջին տարիները ։

Արդ՝ հաւատարիմ քարոզիչներուն երկար աշխատութիւնը ստորագրելէն ետև՝ քիչ մը կանգ առնենք, և մտածենք անոնց երջանկութեանը վրայով՝ որ կը վայելեն իրենց կենացը երեկոյացեալ ժա-

մանակը ։ Անոնք իրենց բոլորտիքը նայելով՝ կը տեսնեն որ Սատանայի որդիքը Աստուծոյ որդիք եղած են իրենց քարոզութեամբը ։ Անոնք մասնակից են Քրրիստոսի ուրախութեանը , Ան որ երկինքի մէջ կ'ուրախանայ իր արեամբը գնոյ առած հոգիներուն վրայ ։ Յիրաւի աս քարոզիչները Աստուծոյ բարկութիւնն ու անէծքը չկրեցին , ինչպէս որ Քրիստոս կրեց մեղաւորաց սիրոյն համար , հապա ատոնք ամէն բան թողուցին , և անարգուեցան , ու աշխատեցան , և անձերնին վտանգի մէջ դրին , ու իրենց վարձքը չկորսնցուցին , ո՛չ ալ պիտի կորսնցընեն ։

Հիմա խօսք մը զրուցեմ անոնց՝ որ համբերութեամբ ինծի հետ ընկերացան՝ աս քարոզիչներուն երկարատև՝ բայց աղէկ վարձատրութիւն եղած աշխատութիւններուն վրայով տեղեկութիւն առնելու ։

Կը կարծէ՞ք որ անոնց յարատևութեանը վրայ միայն զարմանալը , և կամ անոնց յաջողութեանը վրայ ուրախանալը բաւական սեպուի ։ Աս դիպուածներս՝ ալ ուրիշ տպաւորութիւն մը պէտք չէ՞ որ ընեն մեր մտացը մէջ ։ Տակաւին երկրիս վրայ անհամար տեղուանք խաւարամած

մթութեան մէջ կը մնան , կամ աւելի ճիշդ կ'ըլլայ ըսել՝ թէ երկիրը դեռ խաւարի մէջ է , և միայն քանի մը լուսոյ նշոյլներ կ'երևին անոր վրայ ։ Արդարև Թահիթեցւոց անգթութեանը վրայ զարմացաք թէ ի՛նչպէս իրենց նորածին զաւակները կը սպաննէին , և իրենց ձեռքն անցած թշնամիները կը տանջէին , բայց արդեօք ի՞նչպէս պիտի զարնեն ձեր ականջներուն , երբոր լսէք ան բարբարոսական գործքերը՝ որ մինչև հիմա կը գործուին հեթանոսաց երկիրներուն մէջ ։

Գիտեմ որ երիտասարդութեան հասակին ու գորովալից սրտերուն աս սոսկալի գործքերը լսելը՝ պիտի շատ վշտացընէ . բայց աս բաները յիշելս զանոնք վշտացընելու համար չէ ։ Թէ որ աս մեծերուն սովորութիւնները խափանուելուն ճարը չըլլար , աւելի աղէկ էր որ բնաւ չյիշուէին ։ Բայց ասոր համար մէկ միջոց մը կայ ։ Այն որ Աւետարանը կը քարոզուի , և մարդիկ անոր կը հաւատան , հոն ամենաչար Սատանան իր իշխանութիւնը կը կորսնցընէ ։

Բայց ոմանք երիտասարդութեան հասակին մէջ գտնուելնուն ու ոմանք ալ

անփորձ ըլլալնուն , գուցէ ըսեն թէ՝ «Ձեռքերնիս իշխանութիւն մը չկայ , ու քիչ ապրուստի տէր ենք , կրնա՞նք մենք Ուսատարանը հեթանոսներուն խրկել» :

Այո՛ , ես ալ կ'ըսեմ թէ մինչև անգամ՝ դուք ալ կրնաք աս օրհնեալ գործոյս մէկ մասը վրանիդ առնել : Որդէն աշխարհիս վրայ կը գտնուին անանկ մարդիկ , որ աս պատմութեանս մէջ յիշուած քարոզիչներուն պէս՝ խեղճ հեթանոսներուն թշուառ վիճակին վրայ մըտածելով՝ սրտերնին հոգևոր եռանդով լցուած է , և պատրաստ են Ովկիանոսէն անցնելու , և իրենց օրերը վայրենի մարդոց մէջ անցընելու : Ձեր ընչին ընծաներն ալ ան քարոզիչներուն կերակուրի ու հանդերձի պիտոյքը լեցընելու միջոց մը կրնայ ըլլալ :

Երանի թէ մանաւանդ ամէն երիտասարդական հասակի մէջ եղողները առանց ժամանակ անցընելու սկսէին Աստուծոյ ծառաներ ըլլալ : Քանզի անոնք որ իրենց բոլոր կեանքը Աստուծոյ նուիրեցին , աշխարհիս մէջ ամենամեծ բարին ծառայելու գործիքներ եղան : Մարտինոս Օպէրլէն՝ որուն աշխատութեամբը 5 Գաղ֊

ղիտական գիւղեր Աւետարանին շնորհացը բաժանորդ եղան , 60 տարի անոնց մէջը բնակեցաւ : Պատ․ Կօթ և Հէնրի իրենց պատանեկութեան հասակին մէջ անձնատուր եղան ան պաշտօնին , որով հարիւրաւոր կղզիներ խաղաղութեամբ և ուրախութեամբ լցուեցան :

Բայց թէ և մենք անհոգութիւն ընելով Աստուծոյ չծառայենք , կամ զանիկայ չպատուենք , կամ անոր աղօթք չըմատուցանենք , սակայն անոր թագաւորութիւնը անշուշտ պիտի գայ · քանզի ինքը ըսած է թէ՝ "Բոլոր ազգերը ու լեզուները պիտի ժողվեմ , և անոնք իմ փառքս տեսնելու պիտի գան" : (Եսայ․ կզ․ 18 :)

Ի՜նչ ցաւալի բան է որ Քրիստոս իր արիւնովը հեթանոսաց համար երկնաւոր ժառանգութիւնը ծախու առնելէն ետքը՝ անոնք իրենց կեանքը անցընեն ու մեռնին՝ առանց աս բանիս վրայով գիտութիւն մը ունենալու :

Հիմա մտիկ ըրէք աս համառօտ առակը : Մարդուն մէկը իր բոլոր կենացը մէջ յետին աղքատութեամբ կ'ապրէր , ու վերջը անօթութենէ մեռաւ : Անոր

մտնելէն ետև իմացուեցաւ որ իրեն գը-
րամի մեծ գումար մը կտակով թողուած
էր , բայց իրեն ամենևին լուր մը տրուած
չէր աս իր հարստութեանը վրայով ։ Աս
ստակը կտակով անոր ձգողը հարուստ
մարդ մըն էր , և իր յետին շունչէն՝
խնամով պատուիրեր էր իր անկողինին
բոլորտիքը կեցող ազգականներուն , որ
աս աղքատ մարդը փնտռեն գտնեն , և
իրենց ձեռքովը անոր յանձնեն աս մեծա-
գանձ պարգևը ։ Նաև իր ազգականնե-
րուն այսպէս ըսեր էր . «Իմ կտակիս
մէջ ձեզ մոռցած չեմ , ձեզի՝ ձեր պի-
տոյքէն աւելի տուի — ձեր ժառանգու-
թիւնը ամենևին չպիտի պակսի մեր աղ-
քատ դրացւոյն ձգած գումարիս համար»։
Սակայն թէ և իրաւցընէ իր ամէն մէկ
ազգականին ալ առատօրէն բաժին հա-
նած էր , այսու ամենայնիւ անոնք այն-
չափ անձնատուր եղած էին իրենց հան-
գըստութեանն ու զբօսանացը , որ ան
աղքատ մարդուն այցելութիւն ընելու
չգացին , ո՛չ ալ անոր պատգամաւոր մը
խրկեցին ան կտակին վրայով լուր տալու ։
Թէ որ աս անձնասէր ազգականները ան
բովամահ եղող աղքատին ցաւալի մա-

Հուան լուրը առած ըլլայէն, խղճմտանքնին սաստիկ պիտի տանջուէր, քանի որ աս իրենց վարմունքին վրայով մտածէին. երբեմն անոր հոգեվարութեան տագնապները և անոր մարմնոյն նիհարութիւնը մտքերնին գալով՝ քուններնին պիտի փախչէր, և իրենք պիտի երևակայէին թէ իրենց մեռած ազգականը կը տեսնէին՝ որ խոժոռադէմ կը նայի իրենց վրայ, և կը յանդիմանէ զիրենք՝ ըրած զանցառութիւններնուն համար:

## ՎԵՐՋ.